Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



# Բովանդակություն

# Содержание



---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Պատմական զարգացման արդի էտապում, երբ աշխարհում տեղի են ունենում սոցիալական խոր վերափոխություններ, մարքս-լենինյան տեսությունը դարձել է ճանաչողության և հասարակության ռևոլյուցիոն վերակառուցման հզոր զենք: Գիտական կոմունիզմի տեսությունը պատասխանում է աշխատավորների հուզող հարցերին, օգնում է նրանց հասկանալու համաշխարհային զարգացման ընթացքն ու հեռանկարները, ճիշտ ընկալելու երկրի ներքին և արտաքին կյանքում տեղի ունեցող իրադարձությունները, ակտիվ ու գիտակից մասնակցություն ունենալու նոր կյանքի կառուցման գործին: Գաղափարապես որքան կոփված լինի կոմունիստը, որքան խոր ուսումնասիրի մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, այնքան հաստատուն կլինեն նրա համոզմունքները, վճռական պայքար կմղի գաղափարական թշնամիների դեմ, այնքան բարձր կլինի նրա հեղինակությունը մասսաների մեջ:

Պարտիայի կանոնադրությունը յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է մշտապես հարստացնել իր գիտելիքները, ակտիվորեն մասնակցել երկրի քաղաքական կյանքին, աշխատավորական լայն մասսաներին պարզաբանել պարտիայի քաղաքականությունը, օգնել նրանց ճիշտ հասկանալու այն, ինչ տեղի է ունենում կյանքում: Այս առումով էլ կոմունիստների, աշխատավորական լայն մասսաների գաղափարական կոփվածությունը առաջնահերթ նշանակություն է ստանում: Ահա թե ինչու մեր պարտիան գնալով ավելի ու ավելի մեծ հոգատարություն է ցուցաբերում կոմունիստների և անպարտիականների գաղափարական դաստիարակության, նրանց գիտական կոմունիզմի տեսությամբ զինելու գործին:

Պարտիական կոմիտեների և սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև խնդիր է դրվում նոր ուսումնական տարում ամեն կերպ բարելավել պարտիական ուսուցման կազմակերպումը, հասնել այն բանին, որպեսզի այն լիովին բավարարի կոմունիստների և անպարտիականների պահանջներն ու հետաքրքրությունները, նպաստի մեր մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորմանը:

Քաղաքական ուսուցման անցյալ տարիներին շատ պարտիական կազմակերպություններում նկատելիորեն թուլացել էր ուշադրությունը աշխարհայացքային առարկաների՝ ՍՄԿՊ պատմության, փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի հիմունքների ուսումնասիրության նկատմամբ: Հաճախակի փոփոխվում էին ուսումնական պլաններն ու թեմատիկան: Քաղաքական ուսուցման սահմանված ձևերը լուրջ դժվարություններ էին ստեղծում պրոպագանդվող գիտելիքների սիստեմատիկ և ամբողջական ուսումնասիրության

գործում: Շատ կոմունիստներ ըստ էության զրկված էին սիստեմատիկ քաղաքական գիտելիքներ ստանալու հնարավորությունից և տարիներ շարունակ կրկնում էին անցած թեմաները, դոփում միևնույն տեղում:

Այս ուսումնական տարում պարտիական ուսուցման սիստեմում էական բարեփոխություններ են մտցվում, կատարելագործվում են նրա ձևերն ու մեթոդները, ավելի հետաքրքիր ու բովանդակալից է դառնում ուսուցումը: Պարտիական ուսուցման վերակառուցումը հնարավորություն կընձեռի կոմունիստներին և անպարտիական ակտիվիստներին որոշակի ժամանակամիջոցում խոր և բազմակողմանիորեն տիրապետել մարքս-լենինյան տեսության բաղկացուցիչ մասերին՝ փիլիսոփայությանը, քաղաքատնտեսությանը, գիտական կոմունիզմի հիմունքներին, լավ ուսումնասիրել ՍՄԿՊ պատմությունը, սովորել կյանքում կիրառել ռևոլյուցիոն տեսությունը: Քաղաքական ուսուցման նոր սիստեմը հնարավորություն է տալիս տարիների ընթացքում հաջորդաբար, աստիճան առ աստիճան ստանալու տարրական, այնուհետև միջնակարգ և, վերջապես, բարձրագույն քաղաքական կրթություն: Պարտիական ուսուցման մեջ այդ աստիճանականությունը, հաջորդականությունը ի վերջո կոմունիստներին և անպարտիական ակտիվիստներին հնարավորություն կընձեռի հետագայում ռևոլյուցիոն տեսությունը ինքնուրույնաբար ուսումնասիրելու համար:

Պարտիական ուսուցման ճիշտ, խելացի կազմակերպումը նշանակում է, նախ և առաջ, դիֆերենցված մոտեցում ունենալ կոմունիստների նկատմամբ, հաշվի առնել նրանց տեսական մակարդակը, հանրակրթական պատրաստականությունը: Պարտիական լուսավորության այս տարում մարքսիզմ-լենինիզմի տեսության կոլեկտիվ և անհատական ձևերով ուսումնասիրությունը տարվելու է հետևյալ երեք օղակներում՝ տարրական քաղաքական դպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում (միջնակարգ-քաղաքական կրթություն) և բարձրագույն օղակում՝ մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարաններում, քաղաքային, շրջանային պարտիական դպրոցներում, սեմինարներում և կադրերի մարքսիստական-լենինյան բարձրագույն կրթության այլ ձևերում:

Տարրական-քաղաքական դպրոցների ունկնդիրները, որոնք ունեն համեմատաբար քաղաքական և հանրակրթական ցածր պատրաստականություն, ձեռք կբերեն մինիմում գիտելիքներ մարքսիզմ-լենինիզմի վերաբերյալ, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրակտիկայի, կոմունիստական պարտիայի և սովետական պետության պատմության հիմնական էտապների, ՍՄԿՊ-ի ներքին և արտաքին քաղաքականության հարցերի մասին, կծանոթանան կոնկրետ էկոնոմիկայի հիմունքներին: Այս օղակում ուսուցման տևողությունը երկու տարի է:

Հետևյալ օղակը մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցն է՝ ուսուցման չորս տարվա ժամկետով: Այն կոչված է տալու միջնակարգ քաղաքական կրթություն նրանց, ովքեր արդեն ունեն տարրական քաղդպրոցի ծրագրով սահմանված գիտելիքներ: Այստեղ ունկնդիրները կուսումնասիրեն փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի, ՍՄԿՊ պատմության հիմունքները, կծանոթանան պարտիական շինարարության հարցերին: Ուսման պրոցեսում ունկնդիրները պետք է տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, քաղաքական գրականության վրա ինքնուրույն կերպով աշխատելու մեթոդներին:

Պարտիական ուսուցման բարձրագույն օղակում ընդգրկվում են մարքսիզմ-լենինիզմի հիմունքների կայուն գիտելիքներ, գրքի վրա ինքնուրույնաբար աշխատելու կարողություն ունեցող կոմունիստներ: Այս կոնտինգենտի համար տեսական ուսուցման գլխավոր մեթոդը ինքնակրթությունն է, տեսական պրոբլեմների ինքնուրույն ուսումնասիրությունը: Այս դեպքում իրենց արդարացնում են նաև ուսուցման կոլեկտիվ ձևերը՝ տեսական, պրոբլեմային, մեթոդոլոգիական սեմինարներն ու կոնֆերանսները:

Ուսուցման բարձրագույն ձևում կոմունիստները խոր և բազմակողմանիորեն կուսումնասիրեն մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, ժողովածուները, պարտիայի պատմության, փիլիսոփայության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի պրոբլեմները, կոնկրետ էկոնոմիկայի, ընթացիկ քաղաքականության հարցերը և այլն:

Ի դեպ, պետք է նկատի ունենալ, որ անցյալ տարիներին ռեսպուբլիկայի որոշ պարտիական կազմակերպություններում բացակայել է անհրաժեշտ հսկողությունն ու օգնությունը քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողների նկատմամբ, որի հետևանքով զգալի թվով կոմունիստներ տարիներ շարունակ գտնվելով ինքնուրույն ուսումնասիրողների ցուցակներում, ոչինչ չեն արել իրենց քաղաքական գիտելիքների մակարդակը բարձրացնելու ուղղությամբ:

Նոր ուսումնական տարում պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն հսկողությունն ու օգնությունը քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողների նկատմամբ: Այս կապակցությամբ ավելի է բարձրանում կոնսուլտանտների դերը: Պետք է առանձնացնել համապատասխան թվով տեսական բարձր պատրաստականություն ունեցող կոնսուլտանտներ, որոնք կարողանան անհրաժեշտ օգնություն ցույց տալ ոչ միայն անհատական պլաններով ինքնուրույն ուսումնասիրողներին, այլև քաղաքական ուսուցման մյուս օղակների ունկընդիրներին:

Պարտիական և սովետական ղեկավար կադրերին մարքսիստական-լենինյան տեսությամբ զինելու գործում անհրաժեշտ է օգտագործել քաղաքական ուսուցման բոլոր ձևերը՝ մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները, քաղաքային ու շրջանային պարտիական դպրոցները և սեմինարները, բարձրագույն պարտիական դպրոցները, հեռակա ուսուցումը և այլն: Պարտիական կոմիտեները պարտավոր են հետևողականորեն զբաղվել ղեկավար ակտիվի տեսական ուսուցման հարցերով, սիստեմատիկաբար օգնել նրանց բարձրագույն քաղաքական կրթություն ստանալու համար:

Ռեսպուբլիկայի պարտիական կոմիտեներն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնեն երիտասարդության քաղաքական և հանրակրթական ուսուցման կազմակերպմանը, ամեն կերպ պաշտպանեն և զարգացնեն երիտասարդության՝ ռևոլյուցիոն տեսությանը տիրապետելու ձգտումը: Անցյալ ուսումնական տարվա արդյունքները ցույց տվեցին, որ մի շարք տեղերում կոմերիտական քաղուսուցման կազմակերպման գործում տեղ են գտել բազմաթիվ թերություններ: Մեծ թվով կոմերիտականներ դուրս մնացին քաղուսուցումից, ստեղծված շատ խմբակներ ու սեմինարներ տարվա ընթացքում դադարեցին գործելուց, ցածր էր ուսուցման մակարդակը և այլն: Այսպես, օրինակ, Աբովյանի շրջանի կոմերիտական քաղխմբակների զգալի մասը մի քանի պարապմունքներից հետո դադարեց գործելուց, մի շարք կազմակերպություններում կոմերիտականների համար քաղուսուցման ոչ մի օղակ չստեղծվեց, զգալի թվով կոմերիտականներ դուրս մնացին քաղաքա-

կան ուսուցումից: Այսպիսի թերություններ կան նաև Աշտարակի, Կամոյի, Մարտունու, Ալավերդու և ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջաններում:

Այս ուսումնական տարում պարտիական կազմակերպությունները պետք է վճռականորեն վերացնեն երիտասարդության քաղաքական ուսուցման գործում տեղ գտած թերությունները: Պետք է հասնել այն բանին, որ երիտասարդության քաղաքական գիտելիքների վարգացման հետ միասին աճի նաև նրանց ակտիվությունը՝ կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծման գործում: Պետք է ամեն կերպ հոգ տանել, որ նրանք սովորեն հեռակա և երեկոյան հանրակրթական դպրոցներում, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում:

Պարտիական կոմիտեների տեսադաշտից չպետք է դուրս մնան պրոպագանդայի մասսայական ձևերը՝ ժողովրդական համալսարանները, հանրամատչելի լեկտորիումները, կոմունիստական աշխատանքի դպրոցները, հարց ու պատասխանի երեկոները և այլն, որոնք վգալի դեր են խաղում աշխատավորական լայն մասսաների կոմունիստական գիտակցականության ձևավորման գործում: Գոհունակությամբ պետք է նշել, որ մասսայական պրոպագանդայի գործում դրական աշխատանքի փորձ ունեն Երևանի, Լենինականի, Կիրովականի, Իջևանի, Կրասնոսելսկի պարտիական կազմակերպությունները: Ստեղծված ժողովրդական համալսարաններում ընդգրկված մեծ թվով աշխատավորների համար կազմակերպվում են գիտնականների, բարձրորակ մասնագետների դասախոսություններ, վեկուցումներ, որոնք հետաքրքրասիրություն են առաջացնում, հարստացնում ունկնդիրների գիտելիքները: Մասսայական պրոպագանդայի ձևերի կազմակերպման և նրա աշխատանքների բարելավման գործում պետք է բարձրացնել պարտիական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների, տընտեսական օրգանների, «Գիտելիք» ընկերության պատասխանատվությունը:

Վերջին ժամանակաշրջանում քաղաքական ուսուցման մեջ մեծ տեղ հատկացվեց տնտեսական գիտելիքների պրոպագանդմանը: Եվ դա ճիշտ էր: Սակայն շատ տեղերում այն փոխարինվում էր սոսկ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցմամբ: Ուսումնական նոր ծրագրերով կոնկրետ էկոնոմիկայի հարցերը ուսումնասիրելիս չպետք է կրկնել այդ սխալը: Կադրերին սոցիալիստական էկոնոմիկայի հիմունքների գիտելիքներով վինելը մեծ և կարևոր գործ է: Խնդիրը նրանում է, որպեսվի ուշադրություն դարձվի նրա տեսական կողմի վրա: Իսկ ինչ վերաբերում է պրոֆեսիոնալ-տեխնիկական գիտելիքների պրոպագանդմանը, ապա այդ գործում կարևոր դեր է պատկանում տնտեսական օրգաններին, արհմիութենական կազմակերպություններին:

Պարտիական լուսավորության նոր ուսումնական տարում քաղդպրոցի, սեմինարի յուրաքանչյուր պարապմունքի, դասախոսության, կրույցի ընթացքում պետք է վգալի տեղ հատկացնել մեր առօրյա կյանքին, այն գործնական խնդիրներին, որոնք առաջանում են կոմունիստական շինարարության ընթացքում և իրենց լուծումն ստանում մեր պարտիայի կողմից: Քաղաքական ուսուցման ընթացքում կոմունիստները և անպարտիական ակտիվիստները պետք է տիրապետեն առաջին հերթին մարքսիզմ-լենինիզմի գիտական մեթոդոլոգիային, իրական կյանքն ըմբռնելու և վերլուծելու սկզբունքներին: Միայն այդ ճանապարհով կարելի է մարդկանց սովորեցնել ինքնուրույն կերպով իմաստավորել հասարակական կյանքի երևույթները, պրակտիկայում կիրառել ձեռք բերած գիտելիքները: Քաղաքական ուսուցումը պետք է սերտորեն կապել կյանքի հետ, տեսությունը՝



պրակտիկայի հետ: Իսկ դա նշանակում է այս կամ այն երևույթը, հասարակական կյանքի իրադարձությունները վերլուծել մարքսիստական-լենինյան դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից:

Կոմունիստներին և անպարտիականներին տեսական խոր գիտելիքներ տալու գործում մեծ է պրոպագանդիստի դերը: Այս ուսումնական տարում ռեսպուբլիկայի պարտկազմակերպություններում պրոպագանդիստական պատվավոր և պատասխանատու աշխատանքի են ներգրավվել մոտ 10.000 մարդ: Նրանց բարեխիղճ աշխատանքով է պայմանավորված քաղաքական ուսուցման հաջողությունը: Քաղխմբակների, սեմինար պարապմունքների հաջող, հետաքրքիր, գաղափարական բարձր մակարդակով անցկացումը, նրա արդյունավետությունը առաջին հերթին կախված է պրոպագանդիստներից, նրանց տեսական պատրաստականությունից և պարապմունքը վարելու հմտությունից ու վարպետությունից: Պրոպագանդիստը, կոնսուլտանտը, դասախոսը պետք է շարունակ հարստացնի իր գիտելիքները, իրազեկ լինի մեր կյանքի բազմահարուստ իրադարձություններին և դրանք կարողանա հմտորեն օգտագործել պարապմունքների ժամանակ: Պարտիական կոմիտեների խնդիրն է՝ սիստեմատիկ օգնություն կազմակերպել պրոպագանդիստական կադրերին՝ նրանց տեսական, մեթոդական գիտելիքները հարստացնելու, վարպետությունը բարձրացնելու գործում: Պրոպագանդիստների հետ պետք է շերտավորված աշխատանք տանել, ավելի մեծ ուշադրություն դարձնել դեռևս քիչ փորձ ունեցող պրոպագանդիստներին տեսական և մեթոդական օգնության կազմակերպմանը: Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքում գլխավորը նրանց ցույց տրվող տեսական և մեթոդական օգնությունն է, որը հիմնականում կատարվում է նրանց համար կազմակերպվող սեմինարի միջոցով: Պրոպագանդիստների սեմինարներում ոչ միայն պետք է կարդացվեն տեսական դասախոսություններ, այլև կոլեկտիվ կերպով քննարկվեն տեսական և մեթոդական պրոբլեմներ, կազմակերպվեն կարծիքների լայն փոխանակություն, դիսկուսիաներ, որոնք կնպաստեն թեմաների խոր, ստեղծագործական յուրացմանը, պրոպագանդիստների մոտ կմշակեն մարդկանց համոզելու, ունկնդիրների մոտ գիտական աշխարհայացքը ձևավորելու հմտություն: Հետևապես պրոպագանդիստների սեմինարների ձևերն ու մեթոդները պետք է բխեն այդ խնդիրներից: Սեմինարներում, օրինակ, կարելի է կազմակերպել պրոպագանդիստների կողմից մշակված ռեֆերատների, վեկուցումների քննարկումներ, փորձի փոխանակում, գիտատեսական և մեթոդական կոնֆերանսներ և այլն: Պրոպագանդիստը պետք է ամեն կերպ սովորի մարքսիզմ-լենինիզմը պրապագանդել հետաքրքիր և բովանդակալից: Նա պետք է սովորի և կատարելագործի պրոպագանդման մեթոդիկան, ձեռք բերի պարապմունքները ակտիվ ձևով անցկացնելու կարողություն:

Ինչպես անցյալ տարիներին, այնպես էլ այս ուսումնական տարում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում պրոպագանդիստական աշխատանքի են ներգրավված բազմաթիվ պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներ: Այս հանգամանքը ավելի է նպաստում քաղաքական ուսուցման հաջող կազմակերպմանը: Օբյեկտիվ պատճառներով ոչ բոլոր ղեկավար աշխատողներն են ընդգրկված պրոպագանդիստական աշխատանքում: Սակայն խնդիրն այն է, որ բոլոր ղեկավար աշխատողները անպատճառ աշխատավորների առջև հանդես գան քաղաքական վեկուցումներով, դասախոսություններով, կրույցներով:

Պարտիական լուսավորության նոր ուսումնական տարվա պահանջներին

համապատասխան պետք է իրենց աշխատանքները վերակառուցեն քաղաքական լուսավորության կաբինետները, որոնց դերն ավելի է մեծանում պրոպագանդիստական կադրերին տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու գործում: Նրանք պետք է դառնան պրոպագանդիստական կադրերի հետ տարվող տեսական և մեթոդական աշխատանքի կենտրոններ: Այդ նպատակով նրանք պետք է իրենց աշխատանքում լայնորեն ներգրավեն փորձված պրոպագանդիստների, դասախոսների, գիտնականների, տարբեր բնագավառի բարձրորակ մասնագետների:

Պարտիական ուսուցմանը տեսական ու մեթոդական նպատակասլաց և որակյալ օգնություն պետք է ցույց տան ռեսպուբլիկայի մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը: Նրանք պետք է սիստեմատիկաբար մատչելի նյութեր տան կոմունիստական շինարարության տեսական պրոբլեմների, պարտիայի և կառավարության միջոցառումների, ներքին և միջազգային կյանքի իրադարձությունների վերաբերյալ:

Պարտիական լուսավորության ուսումնական տարվա ընթացքում ռեսպուբլիկական ու շրջանային թերթերը, ռադիոն ու հեռուստատեսությունը միաժամանակ պետք է բազմակողմանիորեն մասսայականացնեն մեր լավագույն պրոպագանդիստների ու կոնսուլտանտների աշխատանքի արժեքավոր փորձը: Ինչպես մյուս, այնպես էլ պրոպագանդիստական աշխատանքի բնագավառում դրական փորձի խոր ու սիստեմատիկ տարածումը կտա իր գոհացուցիչ արդյունքը:

Քաղաքական լուսավորության առջև պարտիայի կողմից դրված նոր խնդիրների հաջող իրականացումը էլ ավելի կնպաստի կոմունիստների, անպարտիական ակտիվի գաղափարական աճին, նշանակալից դեր կխաղա սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորման գործում, կբարձրացնի նրանց ստեղծագործական նախաձեռնությունն ու աշխատանքային ակտիվությունը կոմունիզմի համար մղվող պայքարում:



ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՏԱԴՐԱՈՒԺԵՐԻ ԱՌԱՋԱՏԱՐ ԽԹԱՆՆ Է

Բ. ՍԱՐԿԻՍՈՎ

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեի նախագահ

*Հասարակության արտադրողական ուժերը զարգանում են գլխավորապես գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ: Վերջինիս տեմպերը, ինչպես հայտնի է, կախված են այն բանից, թե գիտության նվաճումները, գիտահետազոտական աշխատանքների արդյունքներն ինչ արագությամբ են մարմնավորվում ու իրականանում կյանքում:*

*Մարդու արտադրական գործունեությունը հարուցում է գիտատեխնիկական նոր պրոբլեմներ, իսկ նրա հետազոտական գործունեությունը լուծում է այդ պրոբլեմները: Գիտական գիտելիքների նյութականացումը ստեղծում է մարդու արտադրական գործունեության և գոյության անհրաժեշտ միջոցներ: Գիտության և արտադրողական ուժերի դիալեկտիկան ուրույն բնույթ ունի. գիտությունը, նյութապես մարմնավորվելով արտադրողական ուժերի մեջ, մի կողմից, իր մակարդակով բաժանում է հասարակության արտադրողական ուժերի բախտը, մյուս կողմից՝ գիտատեխնիկական առաջադիմության հորիզոններն ու հնարավորությունները տվյալ մոմենտին և մոտ ապագայում սահմանափակված են արտադրողական ուժերի մակարդակով: Հենց դրանց փոխադարձաբար պայմանավորող ու ներգործող կապի մեջ են իրենց զարգացումը գտնում հասարակության արտադրողական ուժերը: Բայց գիտությունը, անխզելի կապի մեջ գտնվելով արտադրողական ուժերի հետ, երբեք էլ չի զիջում իր առաջատար դիրքերը: Արտադրողական ուժերի նշանակությունը միշտ էլ բարձր է այնտեղ, որտեղ բարձր է նաև գիտական միտքը:*

*Դժվար է տեխնիկական առաջադիմությունը պատկերացնել առանց գիտության (ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, մեխանիկայի, կենսաբանության և այլնի) նորագույն նվաճումների մշտական կիրառման: Բոլորովին էլ չնսեմացնելով պրակտիկ փորձի նշանակությունը արտադրության կատարելագործման ասպարեզում, այնուամենայնիվ, պետք է նշել, որ գիտության հաջողու-*

թյունները հնարավորություն են տալիս, անգամ առանց երկարատև արտադրական փորձի, գտնել ավելի արմատական ու արագ լուծումներ։ Գիտության առաջընթաց զարգացումը տեխնիկայի և ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման պարտադիր ու անհրաժեշտ պայմանն է, հենց նա է ստեղծում արտադրական առաջադիմության ամուր հիմքեր, խոշոր տեղաշարժեր առաջացնում տեխնիկայի և արտադրության բնագավառներում։

Արդի գիտությունը համեմատաբար ավելի խոր է թափանցել բնության գաղտնիքների մեջ։ Նա հետախուզում է նյութական աշխարհի ներքին բնույթը, որպեսզի տիրապետի նրանում նիրհած ուժերը, կատարելագործի արտադրության գոյություն ունեցող ճյուղերը, բացահայտի տեխնիկական բուռն առաջադիմության նոր, հոյակապ հնարավորություններ։

Բացահայտելով ատոմի միջուկի գաղտնիքները, գիտությունը մարդուն տվել է այնպիսի հզոր զենք, որով նա կարող է նյութին հարկադրել դրսևորելու իր նորանոր հատկությունները և ստանալ էներգիայի մի նոր աղբյուր, այն է՝ ջերմամիջուկային էներգիա։ Պոլիմերային քիմիայի զարգացման հիման վրա հանդես եկան նոր սինթետիկ նյութեր, իսկ դրանց կիրառումը տառացիորեն հեղաշրջեց արտադրության բոլոր բնագավառները։ Ներկայումս պոլիմերային սինթետիկ նյութերի բազմազան տեսակներն այնքան մեծ չափով են մուտք գործել կյանքի մեջ, որ արդի արդյունաբերությունն ու կենցաղը դժվար է պատկերացնել առանց կաուչուկից, պլաստմասսայից, արհեստական մանրաթելից և սինթետիկ ու պոլիմերային այլ նյութերից պատրաստված ամենաբազմազան իրերի կիրառման։ Արդի քիմիան սկսում է ակտիվորեն ներգործել ու փոփոխություններ հարուցել նույնիսկ այնպիսի, թվում է, կայուն արտադրությունների մեջ, ինչպիսիք են մետալուրգիան կամ ցեմենտի ու բետոնի արտադրությունը։ Ֆիզիկայի աննախընթաց զարգացման շնորհիվ ստեղծվել են արտադրության ավտոմատացման արտակարգ մեծ հնարավորություններ։ Դրանք իրենց հերթին արմատական փոփոխություններ են առաջացրել ռադիոտեխնիկայի, էլեկտրոնիկայի, էլեկտրատեխնիկայի մեջ։

Այսպիսով, եթե մի ժամանակ գիտությունը արտադրության աղախին կոչումն էր կրում, ապա մեր այսօրվա պայմաններում գիտությունն արդեն դարձել է արտադրության մայրը։ Այժմ առկա է գիտության ու արտադրողական ուժերի համատեղ զարգացման միասնական պրոցեսը։ Արդի գիտության այդ ֆունկցիան իր հստակ ու պարզորոշ ձևակերպումն է գտել ՍՄԿՊ ծրագրի մեջ, որտեղ ասվում է, որ «գիտությունը գնալով ավելի ու ավելի է դառնում անմիջական արտադրողական ուժ, իսկ արտադրությունը՝ արդի գիտության տեխնոլոգիական կիրառում»։

Արտադրողական ուժերի զարգացման վրա գիտության թողած արագացնող ներգործությունը գլխավորապես արտահայտվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման, նյութերի ու արտադրանքների նոր տեսակների ստեղծման, արտադրանքի կատարելագործման ու ինքնարժեքի իջեցման բնագավառներում, որոնք, ամբողջությամբ վերցրած, ապահովում են արտադրանքի մեկ միավորի կապիտալատարության ու նյութատարության կրճատում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի նոր տեսակների արտադրությունը գիտության այն շարժիչ ուժի գլխավոր ցուցա-



նիշներն են, որը կապիտալի աճունակությունը բարձրացնում է անկախ նրա ծավալից։

ՍՍՌՄ-ում արտադրանքի նոր տեսակների թողարկումը տարեկան միջին հաշվով ավելի քան 5000 անուն է կազմում։ «Դոկումենտասիոն ֆրանսե»-ում (1962 թ. № 256) հրապարակված ընդհանրացումների համաձայն, արտադրության ընդհանուր աճման մեջ 10 տարվա ընթացքում աշխատանքի արտադրողականության բաժինը Ֆրանսիայում կազմել է 90 տոկոս, Անգլիայում՝ 80, Իտալիայում՝ 70, ԳՖՌ-ում՝ 69, ԱՄՆ-ում՝ 66 տոկոս։ ԱՄՆ-ի կառավարությանն առընթեր տնտեսական փորձագետների խորհուրդը պնդում է, որ ԱՄՆ-ում վերջին հիսուն տարվա ընթացքում արտադրության աճման մոտավորապես կեսը աշխատանքի արտադրողականության աճման հետևանք է («Էկոնոմիկ Ռիպորտ օֆ դե Պրեզիդենտ», 1962 թ.)։ Վերջին չորս տասնամյակի ընթացքում ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության մեջ արտադրանքն անհամեմատ ավելի արագ է աճել, քան հիմնական կապիտալը։ Այսպես, 1919 թվականից մինչև 1929 թվականը հիմնական կապիտալի տարեկան միջին աճը կազմել է 3 տոկոս, իսկ արտադրանքի թողարկումը՝ 4,7 տոկոս, 1929 թվականից մինչև 1948 թվականը հիմնական կապիտալի աճը հավասար էր 0,9 տոկոսի, իսկ արտադրանքինը՝ 3,1 տոկոսի («Պրավդա», 25 փետրվարի, 1964 թ.)։

Գիտական հետազոտությունները մասսայական արտադրանքի ինքնարժեքի էական իջեցման միջոցն են։ Ընդհանուր առմամբ նոր արտադրանքի սերիական յուրացումը, կամ նրա կոնստրուկտիվ բարելավումները հանգեցնում են ինքնարժեքի իջեցմանը, իսկ գիտական հետազոտությունների արդյունքների կիրառումը ամենավճռական գործոններից մեկն է այդ բնագավառում։

1953 թվականից մինչև 1960 թվականը, որպես ծախսումների իջեցման արդյունք, քլորվինիլի գինը Անգլիայում իջավ 28 տոկոսով, ԳՖՌ-ում՝ 30, ԱՄՆ-ում՝ 48 տոկոսով, պոլիէթիլենի գինը Անգլիայում՝ 44, ԱՄՆ-ում՝ 45, ԳՖՌ-ում՝ 56 տոկոսով։ Այդ նույն տարիներին ԱՄՆ-ում պլաստմասսայի գները իջնում էին տարեկան 6—7 տոկոսով («Էկոնոմիկ Ռեվյու», 1963, № 26)։

Գիտությունը միշտ էլ խոր ու վճռական ազդեցություն է թողել հասարակական առաջադիմության վրա։ Գիտության ու տեխնիկայի զարգացման ամբողջ ընթացքը ցույց է տալիս, որ այս կամ այն գիտական խոշոր հայտնագործությունը վաղ թե ուշ ներգործում է արտադրության մակարդակի վրա ու հեղափոխություն առաջացնում նրա մեջ։

Մեր ժամանակներում՝ գիտական մտքի աննախընթաց խոյանքների, գիտատեխնիկական հեղափոխության ժամանակներում, գիտության դերն այնքան է աճել, որ առանց նրա առհասարակ չի կարելի պատկերացնել հասարակության առաջադիմությունը։ Մեր օրերում գիտությունը, գիտական նվաճումները գնալով ավելի արագորեն ու խորապես են թափանցում պրակտիկայի մեջ, արմատապես բարեփոխելով ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերը, առաջ բերելով նոր արտադրություններ, տրանսպորտի ու կապի նոր միջոցներ, նոր նյութեր։ Գիտությունն ակտիվորեն ազդում է արտադրողական ուժերի արագ զարգացման վրա, գնալով դառնում է նրա բաղադրիչ ու առաջատար տարրը։

Ահա թե ինչու գիտության զարգացումը և ժողովրդական տնտեսության մեջ նրա նվաճումների արմատավորումը կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության մշտական հոգատարության առարկան են։ Այդ հո-

գատարության շնորհիվ մեր հայրենական գիտությունը, նրա գործիչները, կոնստրուկտորները, ինժեներներն ու բանվորները հասել են ամբողջ աշխարհին հայտնի գիտատեխնիկական փայլուն նվաճումների: Սովետական գիտության հաջողությունները հնարավորություն են տալիս հասնելու մեր հասարակության արտադրողական ուժերի զարգացման այն մակարդակին, առանց որի անհնարին կլիներ կամ սոսկ ուտոպիա կմնար կոմունիստական հասարակարգի կառուցման հոյակապ ծրագիրը: Գիտությունը չափազանց կարևոր դեր է խաղում մեր երկրի տնտեսական ու տեխնիկական քաղաքականության ձևավորման ասպարեզում, մեծ ներգործություն ունի մեր երկրի ու այլ պետությունների միջև առևտրական և տնտեսական կապերի ընդարձակման վրա:

Հայրենական ինքնատիպ կոնստրուկցիաներ, արտադրության մեթոդներ, նոր նյութեր, տեխնիկա և տեխնոլոգիա ստեղծելու գործը պահանջում է որոնման ու հետազոտական աշխատանքներով զբաղված գիտական հիմնարկների գործունեությունը օրգանապես զուգորդել արտադրության կազմակերպման հարցերով զբաղվող սովետական ու տնտեսական օրգանների ու ձեռնարկությունների գործունեության հետ:

Հայրենական տեխնիկայի ինքնատիպ նմուշներ ստեղծելու համար անհրաժեշտ է իմանալ հայրենական ու արտասահմանյան գիտության վերջին նվաճումները, նախապես ծանոթ լինել այն ամենին, ինչ արդեն արված է այս կամ այն բնագավառում: Դա հնարավորություն կտա լիովին խուսափել ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում արդեն լուծված հարցերը մշակելուց, ինչպես նաև այն հետազոտությունները կրկնելուց, որոնց արդյունքների համար արտասահմանում արդեն պատենտներ են տրված:

Ինքնատիպ ուղղության հետազոտական ու կիրառական աշխատանքներ, ահա այն ամենը, որը մեզ հնարավորություն կտա մերձակա տարիներին մեծ մասշտաբներով ստանալ մեքենաների, գործիքների, ապարատների, տեխնոլոգիական պրոցեսների հիրավի նոր (համաշխարհային նվաճումների տեսակետից) հայրենական կոնստրուկցիաներ: Այլ կերպ ասած, գիտահետազոտական աշխատանքները պետք է այնպես վարել, որ ո՛չ թե պարզապես լուծվի որևէ տեխնիկական խնդիր, այլ արտադրության այս կամ այն ճյուղը հասցվի համաշխարհային լավագույն ստանդարտի մակարդակին:

Հայկական ՍՍՌ-ում վերջին տարիներին գիտական մի շարք հիմնարկներ բավական ծավալուն գիտական հետազոտություններ են կատարել, որի շնորհիվ ստացվել են նյութերի, սարքավորման, պրեպարատների, տեխնոլոգիայի այլ նոր տեսակներ: Այսպես, ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիայի նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը կարողացել է ստանալ դեղագործական նոր պրեպարատներ՝ գանգլերոն, որը բուժում է ստենոկարդիան ու խոցը (հեղինակային վկայաթուղթը ստացվել է 1958 թվականին), սուբեխոլին՝ շնչառության սինթետիկ ստիմուլյատոր, որի համար հեղինակային վկայաթուղթ ստացվել է 1962 թվականին, քվատերոն՝ բուժում է ստենոկարդիան, հիպերտոնիան և ինֆարկտը, դրա հեղինակային վկայաթուղթը ստացվել է 1964 թվականին:

Պոլիմերային նյութերի Երևանի համամիութենական ինստիտուտը Ս. Մ. Կիրովի անվան գործարանի մասնագետների հետ միասին մշակել է կաուչուկի և սոսնձի մի շարք սինթետիկ փոխարինիչներ, նաիրիտների և լատեքսների մի քանի տեսակներ, որոնք հաջողությամբ արմատավորվել են ար-



տադրության մեջ և լայնորեն կիրառվում են ժողովրդական տնտեսության այլ և այլ ճյուղերում: Դրանց բոլորի համար տրվել են 7 հեղինակային վկայաթղթեր: Ինստիտուտում այժմ կա ընդամենը 21 հեղինակային վկայաթուղթ:

Խաղողագործության և գինեգործության ինստիտուտն ունի 68 հեղինակային վկայաթուղթ: Օրգանական քիմիայի ինստիտուտը պաշտպանել է 31 հեղինակային վկայաթուղթ: Գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի ինստիտուտը 1959 թվականից մինչև 1964 թվականն ավարտել է 14 գիտական աշխատանք, որոնցից 5-ի համար տրված է հեղինակային վկայաթուղթ:

Կոմպլեկտային էլեկտրասարքավորման Երևանի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտն արդեն պատենտավորել և արտադրության մեջ արմատավորել է արեգակի ճառագայթների ներգործության տակ էլեկտրական մեկուսացուցիչ նյութերի փորձարկման, ինչպես նաև փոքր հզորություն ունեցող գեներատորների կիսաավտոմատիկ ճշգրիտ սինխրոնացման սարքավորումները: Ինստիտուտն ունի 15 հեղինակային վկայաթուղթ:

Քիմիայի Երևանի համամիութենական ինստիտուտի գիտական գործունեության վերջին տասը տարիները նշանավորվեցին այն բանով, որ պաշտպանվեցին տասը հեղինակային վկայաթղթեր՝ նիֆելինային սիենիտների վերամշակման կոմպլեքսում կիսաարտադրանքների վերամշակման ավարտուն գիտական աշխատանքների համար:

Վերջերս ՍՍՌՄ հայտնագործությունների և գյուտերի գործերի պետական կոմիտեն որոշեց հեղինակային վկայաթուղթ տալ ավտոմատիկ ծրագրումով աշխատող «Նաիրի» փոքրածավալ ունիվերսալ հաշվողական մեքենային, որը ստեղծվել է մեր ռեսպուբլիկայում:

Գիտությունը չի կարող գոյություն ունենալ սոսկ միայն գիտության համար: Մարդիկ այն ստեղծել են որպես արտադրողական ուժերի զարգացման բաղադրիչ ու առաջատար տարր: Այդ իսկ պատճառով, արդեն ավարտված գիտական հետազոտությունների արդյունքների արմատավորման քիչ թե շատ ձգձգումը լուրջ վնաս է հասցնում արտադրության, գիտա-տեխնիկական առաջադիմության գործին: Դժբախտաբար, մեր ռեսպուբլիկայում քիչ չեն այդպիսի դեպքերը: Ահա թե ինչ ցույց տվեց 15 ինստիտուտներում կատարված ստուգումը: 1959 թվականից մինչև 1964 թվականը ծախսվել է մոտ 50 միլիոն ռուբլի այդ ինստիտուտները պահելու համար: Ստացվել է հեղինակային վկայաթուղթ 92 աշխատանքի համար, որից արտադրության մեջ արմատավորվել են միայն 42-ը: Կոմպլեկտային էլեկտրասարքավորման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը պատենտավորել է 15 աշխատանք, իսկ արտադրության մեջ արմատավորվել են միայն 7-ը: Գյուղատնտեսության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման ինստիտուտը ունի 5 ավարտված գիտական մշակումների պատենտ, որոնցից արմատավորվել են միայն երկուսը:

Եթե դիմենք կոնկրետ օրինակներին, ապա կտեսնենք հետևյալը:

Ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտը 1956 թվականից մշակում է խիտ միջավայրում սորուն նյութերի պնևմատիկ փոխադրումների հարցը: Այդ աշխատանքների համար ստացվել են մի շարք հեղինակային վկայաթղթեր 1957, 1962 և 1965 թվականներին: Սակայն մեր արդյունաբերությունը դրա փորձնական սարքավորումը կարողացավ յուրացնել և արմատավորել միայն 1964 թվականին՝ Քանաքեռի և Վոլգոգրադի ալյումինի գործարաններում, մինչդեռ այդ եղանակի մասսայական արմա-

տավորումը տասնյակ միլիոն ռուբլու օգուտ կտար մեր ժողովրդական տնտեսությանը, զգալիորեն կբարելավեր աշխատանքի պայմանները։ Այդ նույն ինստիտուտում 1946 թվականից աշխատանքներ սկսվեցին նոր մոնոմեր-տետրաքլորահեքսատրիեն ստանալու համար։ Հետագայում այդ աշխատանքների դիմաց ստացվեց 6 հեղինակային վկայաթուղթ՝ 1946, 1951, 1953, 1956, 1961 և 1962 թվականներին։ Սակայն Գիպրոկաուչուկը միայն վերջերս ձեռնամուխ եղավ նախագծելու մի փորձնական սարքավորում արդյունաբերական լայն փորձարկումներ կատարելու՝ տրիեն, պոլիտրիեն և քլորպոլիտրիեն ստանալու ասպարեզում։ Լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտում 1955 թվականից մշակվում է հանքատեսակների հորատելիությունը որոշելու թեման։ 1962 թվականին հեղինակային վկայաթուղթ ստացվեց հորատելիությունը որոշող հաստոցի համար։ Չնայած այն բանին, որ մեծ պահանջարկ կա այդ հաստոցի նկատմամբ, մինչև այժմ էլ չի կարգավորվել դրա սերիական թողարկումը, թեպետ Ուֆայի «Գեոֆիզպրիբորոստրոենիե» գործարանը պետք է որ այս տարի սկսեր դրա մասսայական արտադրությունը։

Ռեսպուբլիկայի մինիստրությունները և գերատեսչությունները, ժողտնտխորհը պետք է ամենալուրջ ուշադրություն նվիրեն գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման հարցին։ Դա, մի կողմից, կնպաստի մեր երկրում գիտատեխնիկական առաջադիմության ավելի արագ զարգացմանը, իսկ, մյուս կողմից, բուն իսկ գիտության զարգացմանը։ Այս առնչությամբ գիտակազմակերպչական մեծ աշխատանք ունեն կատարելու Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեն և ռեսպուբլիկայի պետպլանը, որպեսզի ապահովեն գիտական հետազոտությունների անընդհատությունը, սկսած գիտական որոնումներից մինչև նոր արտադրանքի կամ նոր նյութերի սերիական արտադրությունը։ Ըստ որում պետք է խստորեն հաշվի առնել այն հանգամանքը, որ գիտության ու արտադրության փոխադարձ կապի մեջ գործում է մի ներքին օրինաչափություն. տեխնիկայի զարգացման տեմպերը պետք է գերազանցեն, առաջ անցնեն նոր ճյուղերի աճման տեմպերից, իսկ տեխնիկայի զարգացման հիմք հանդիսացող ֆունդամենտալ գիտությունը պետք է ավելի արագ զարգանա, քան կիրառական գիտությունը՝ տեխնիկան։ Գիտության ու արտադրության փոխադարձ կապի ասպարեզում «գերազանցող արագությունների» մեխանիզմը գործում է գիտության զարգացման բոլոր օղակներում, սկսած համապատասխան գաղափարի ծնվելուց մինչև նոր արտադրանքի մասսայական թողարկման յուրացումը։

Այդ ամենից առաջ պարզորոշ արտահայտվում է այն ժամկետների կրճատումով, որի ընթացքում, հետազոտական մասշտաբների շարունակական ընդլայնման հետ, նոր հայտնագործությունները մարմնավորվում են որպես նոր արտադրանք։ Այսպես, հայտնագործության և առաջին արտադրանքի ստացման միջև եղած տարիների քանակը կրճատվել է հետևյալ կերպ. լուսանկարչության համար պահանջվել է 102 տարի (1727-ից մինչև 1829 թվականը), հեռախոսի համար՝ 56 տարի (1820-ից մինչև 1876 թվականը), ռադիոյի՝ 35 տարի (1867-ից մինչև 1902 թվականը), հեռուստացույցի՝ 14 տարի (1922-ից մինչև 1936 թվականը), ուրանային ռումբի՝ 6 տարի (1939-ից մինչև 1945 թվականը), տրանզիստորի՝ 5 տարի (1948-ից մինչև 1953 թվականը) և լազերի՝ 5 տարի (1956-ից մինչև 1961 թվականը)։



Այնուհետև, գերազանցման այդ օրինաչափությունը գործում է նաև այն իմաստով, որ կրճատվում է ժամանակը նյութի սերիական արտադրությունը որևէ երկրում սկսելու և սերիական արտադրությունը տվյալ երկրում յուրացնելու միջև։ Եթե վերցնենք կապիտալիստական վեց զարգացած երկրներ՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, ԳՖՌ-ն, Ճապոնիան և Իտալիան, ապա կստացվի՝ քլորվինիլի արտադրությունը յուրացնելու համար այդ երկրները ծախսեցին 20 տարի, նեյլոնի համար՝ 12 տարի (1941-ից մինչև 1953 թվականը), պոլիպրոպիլենի՝ 4 տարի (1957-ից մինչև 1961 թվականը) և պոլիկարբոնատի համար՝ 2 տարի (1957-ից մինչև 1959 թվականը)։ Այսպիսով, նոր տեխնիկան այժմ 10 անգամ ավելի արագ է արմատավորվում, քան երեսնական թվականներին։

Բերված տվյալները կրկին անգամ հաստատում են այն ճշմարտությունը, որ մեր օրերում, երբ բուռն թափով զարգանում են գիտությունն ու տեխնիկան, արտադրողական ուժերի զարգացման առաջ լայն ասպարեզ բացելու համար անհրաժեշտ է չձգձգել գիտական հետազոտությունները և, հատկապես, չդանդաղել դրանց արդյունքները ժողովրդական տնտեսության մեջ արմատավորելու հարցում։ Այդպիսի դանդաղումը կասեցնում է արտադրողական ուժերի առաջընթացը, բացասական ազդեցություն է ունենում արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության ընդլայնման, արտադրանքի որակի բարելավման և, վերջին հաշվով, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման տեմպերի վրա։

Այնուհետև այդ տվյալներն ասում են նաև այն մասին, որ, ելնելով արտադրողական ուժերի արագ զարգացման շահերից, անհրաժեշտ է խելացի, պետական մոտեցում ցուցաբերել գիտական հետազոտությունների կազմակերպմանը, նոր տեխնիկայի ստեղծմանն ու արմատավորմանը։ Ամրապնդելով մեր սեփական գիտա-տեխնիկական բազան, խորապես ուսումնասիրելով արտասահմանյան գիտա-տեխնիկական փորձը և կատարելագործելով գիտատեխնիկական ինֆորմացիայի ու պատենտային ծառայության սիստեմը, մենք պետք է գործնական, հաշվենկատ մոտեցում ցուցաբերենք այս կամ այն գիտա-տեխնիկական պրոբլեմի լուծմանը։ Այսպես, եթե տվյալ պրոբլեմի ինքնուրույն լուծումը կարող է շատ ձգձգվել կամ էլ տնտեսապես ձեռնտու չլինել, ապա ավելի նպատակահարմար կլինի լիցենզիաներ կամ տեխնիկական դոկումենտացիա ստանալ սոցիալիստական երկրներից։ Օտարերկրյա տեխնիկական փորձի յուրացման այդ մեթոդը գործնական մեծ նշանակություն ունի ինչպես ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական մակարդակի բարձրացման, այնպես էլ արտադրողական ուժերի ծավալման համար։

Համաշխարհային պրակտիկան, մասնավորապես Ճապոնիայի, ԳՖՌ-ի և մի քանի այլ երկրների պրակտիկան ցույց է տալիս, որ խելացի ու հաշվենկատ կերպով լիցենզիաներ ձեռք բերելը, առաջավոր նոր տեխնիկա արմատավորելու հետ մեկտեղ, կարող է բազա դառնալ հայրենական այնպիսի ինքնատիպ կոնստրուկցիաներ ստեղծելու համար, որոնք իրենց տեխնիկատնտեսական ցուցանիշներով կգերազանցեն արտասահմանյանին։

Ճապոնական «Թոյե Ռեյոն» քիմիական ընկերությունը վերջին տասը տարվա ընթացքում ամերիկյան «Դյուպոն դը Նեմուր» մոնոպոլիային մոտ 12 միլիոն դոլար է վճարել նեյլոնի արտադրության տեխնոլոգիայի լիցենզիայի դիմաց, իսկ նեյլոնի արտահանումից ստացել է 217 միլիոն դոլար։ Ճապոնիայի

ամբողջ նավթա-քիմիական արդյունաբերությունը, օգտագործելով օտարերկրյա տեխնոլոգիան, լիցենզիաների դիմաց վճարել է 11,7 միլիոն դոլար, իսկ այդ լիցենզիաներով արտադրված ապրանքների վաճառքից ստացել է 130 միլիոն դոլար։

Համաշխարհային շուկայում ճապոնական ապրանքների տեսակարար կշռի բարձրացման պրոցեսը ընթանում է երկու ճանապարհով, մի կողմից ներմուծվում և արմատավորվում են արտասահմանյան տեխնիկան ու տեխնոլոգիան, իսկ մյուս կողմից՝ ճապոնական արդյունաբերության տեխնիկական մակարդակը ավելի է մոտեցվում կապիտալիստական առաջավոր երկրների մակարդակին։ Ճապոնիայում գնալով ավելի մեծ նշանակություն են տալիս սեփական գիտատեխնիկական բազայի ստեղծմանը։ Հետաքրքրական է նշել, որ այստեղ նոր տեխնիկայի ստեղծման պրոցեսն աչքի է ընկնում մշակման խիստ կարճատև ժամկետներով։ Այսպես, Ճապոնիայում գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական և արտադրության մեջ արմատավորելու հետ կապված աշխատանքների միջին տևողությունը չի անցնում 2 տարի 4 ամսից, երբ համանման աշխատանքների տևողությունը ԱՄՆ-ում 2 անգամ ավելի է։ Հասկանալի է, որ մենք չենք կարող անմիջական զուգահեռ անցկացնել մեր և ճապոնական պրակտիկայի միջև։ Սակայն այդ օրինակները ցույց են տալիս, որ գիտական հետազոտությունների կազմակերպման և նոր տեխնիկայի արմատավորման բնագավառում պետք է հիմք ընդունել համաշխարհային գիտատեխնիկական ու տնտեսագիտական ինֆորմացիան։

Եթե գիտությունն ամբողջապես վերցրած արտադրողական ուժերի կարևոր բաղադրիչ տարրն է, ապա դժվար է գերագնահատել գիտական կադրերի վճռական դերը։ Ո՛չ բարձր զարգացած արդյունաբերությունը, ո՛չ էլ ընդհանուր միջնակարգ կամ տեխնիկական կրթությունը առաջ չեն մղի գիտությունն այնտեղ, որտեղ չկան հետազոտողների կադրեր։ Այդ իսկ պատճառով գիտական հետազոտությունների կազմակերպման ասպարեզում ամենագլխավոր հարցը գիտական կադրերի պատրաստումն է։

Հետազոտողների կադրեր պատրաստելը գիտության մեջ կապիտալ ներդրումների ամենաարդյունավետ բնագավառն է։ Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեն պետք է այնպես կազմակերպի գործը, որ գիտության բոլոր, հատկապես ռեսպուբլիկայի համար հեռանկարային ճյուղերը, ապահովված լինեն գիտական կադրերով։ Այսպես, 1964 թվականին ռեսպուբլիկայի գիտական հիմնարկներում գիտության դոկտորի և թեկնածուի աստիճան ունեցող աշխատողները կազմում էին գիտական աշխատողների ընդհանուր թվի 28,6 տոկոսը։ Նախատեսվում է առաջիկա հնգամյակի վերջում այդ թիվը հասցնել 43, իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 69 տոկոսի։ Հատկապես կավելացվի գիտական կադրերի թիվն այն ճյուղերում ու բնագավառներում, որ նախկինում բավարար ուշադրություն չի դարձվել։ Այսպես, նախատեսվում է մինչև 1970 թվականը ունենալ ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների 690 դոկտորներ և թեկնածուներ, 1964 թվականի հունվարի՝ 103-ի դիմաց, քիմիական գիտությունների 376 դոկտոր և թեկնածու՝ 75-ի դիմաց։ Ավելի քան 4 անգամ կաճի աստիճան ունեցող գիտական աշխատողների թիվը կենսաբանության ու տնտեսագիտության բնագավառում։

Գիտական կադրեր պատրաստելիս անհրաժեշտ է հաշվի առնել գիտու-



թյան հեռանկարային զարգացումը։ Եթե արդյունաբերության մեջ սարքավորման կապիտալ ներդրումները հատուցվում են գրեթե անմիջապես, իսկ մի 5—6 տարուց հետո այդ սարքավորումը բարոյապես սկսում է հնանալ և փոխարինում է պահանջում, ապա մասնագետ հետազոտողների կադրեր պատրաստելու համար պահանջվող կապիտալ ներդրումները մասնակի հատուցվում են 5—7 տարուց ոչ շուտ, իսկ հետազոտողը լրիվին կարող է այդ ներդրումները հատուցել ասպիրանտուրան ավարտելուց 10—12 տարուց հետո, եթե, իհարկե, նա այնտեղ է մտել բուհն ավարտելուց հետո։ Այս ամենից ելնելով, հետազոտողների կադրերի պատրաստման ընդհանուր ծախսերը պետք է չափել ըստ հնարավորին մեծ խորությամբ ու լայնությամբ։

Գիտության ապագա զարգացման, հետևապես նաև արտադրողական ուժերի ապագա բախտը այսօր լուծվում է գիտական բարձրորակ աշխատողներ պատրաստելու ասպարեզում։ Իսկ հեռանկարային ամեն մի աշխատանք պահանջում է խելացի, սիստեմատիկ ու հետևողական կերպով կազմակերպել այն։

Վլադիմիր Իլյիչ Լենինը բնորոշելով սովետական հասարակության զարգացման ուղիները, մատնանշում էր, որ անհնարին է ապահովել առաջընթացը դեպի կոմունիզմ, առանց գիտության վերջին խոսքով տեխնիկա ունենալու։ Նա պահանջում էր, որ գիտությունը մեզանում մեռած տարր կամ մոդայական ֆրազ չլինի, այլ հիրավի, միս ու արյուն դառնա մեր հասարակարգում, լրիվին վերածվելով արտադրողական ուժերի կարևոր բաղադրիչ տարրի։

Ղեկավարվելով լենինյան այդ ցուցումներով, ՍՄԿՊ ծրագրում կարևոր դեր է հատկացվում գիտությանը՝ պարտիայի և սովետական ժողովրդի տնտեսական գլխավոր խնդիրը լուծելու, այն է՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու ասպարեզում։ Ծրագիրն անհրաժեշտ է համարում գիտությունն օրգանապես միացնել արտադրության հետ, ստեղծել գիտության և արտադրության, տեսության և պրակտիկայի, տնտեսական շինարարության ղեկավարման մեկ միասնական պրոցես։ Ծրագիրը պարտիայի և սովետական ժողովրդի ուշադրությունը կենտրոնացնում է հայրենական գիտության և տեխնիկայի ավելի արագ զարգացման, արտադրության մեջ նրանց նվաճումների լայն արմատավորման, տեխնիկական առաջադիմության արագացման հարցերի վրա։

Գիտության ու արտադրության օրգանական միակցումը աննախընթաց չափերով կարագացնի գիտական ու տեխնիկական առաջադիմության, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տեմպերը։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում գիտության և տեխնիկայի զարգացումը հնարավորություն են տալիս առավել արդյունավետ օգտագործելու բնության ուժերը։ Գիտության լայն զարգացումը և նրա նվաճումների ակտիվ ու համակողմանի կիրառումը սովետական հասարակարգի արտադրողական ուժերի հզոր աճման վճռական գործոնն են։



# ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԳԵՂԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱՐԱՐ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ

## ԷԴ. ՋՐԲԱՇՅԱՆ

*Հայ ընթերցողը, վերջապես, ստացավ վաղուց սպասված մի գիրք՝ գրականության և արվեստի հարցերի վերաբերյալ գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի աշխատությունների, նամակների և ասույթների հավաքածուն: Հայերեն լույս է տեսել «Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին» երկհատոր ժողովածուն*[1], *որը 1957 թ. Մոսկվայի «Իսկուստվո» հրատարակության լույս ընծայած ռուսերեն ժողովածուի թարգմանությունն է:*

*Արվեստի հարցերով հետաքրքրվող բազմահազար ընթերցողներն այս երկու հատորների մեջ կգտնեն Մարքսի և Էնգելսի գրեթե այն բոլոր աշխատությունները ու հատվածները, նույնիսկ առանձին հիշատակությունները, որոնք վերաբերում են գեղագիտության ընդհանուր տեսական հարցերին և արվեստի ու գրականության պատմության կոնկրետ երևույթներին:*

*Մարքսը և Էնգելսը ներկայացնում էին լավագույն օրինակը բազմակողմանիորեն զարգացած անհատի, որի հոգևոր կյանքում և աշխատանքում արվեստը վիթխարի և անփոխարինելի տեղ է գրավում: Ազատ տիրապետելով և օգտվելով եվրոպական հին և նոր գրեթե բոլոր լեզուներից, նրանք հիանալի գիտեին մարդկության ստեղծած գեղարվեստական մեծագույն հուշարձանները: Դրանք Մարքսի և Էնգելսի համար ոչ միայն էսթետիկական բավականության աղբյուր էին, այլ անցյալի և ներկայի ճանաչողության, ժամանակակից հասարակական պայքարի հզոր միջոց:*

*Պատանեկության տարիներին Մարքսն ու Էնգելսը բանաստեղծություններ էին գրում, իրականությունից իրենց դժգոհությունը, սերն ու երազանքները արտահայտելով պոետական կրքոտ տողերում: Հետագայում էլ, թեև քաղաքական և գիտական աշխատանքը նրանց հեռացրեց անմիջական գեղարվեստական զբաղմունքից, բայց արվեստը մշտապես մնաց նրանց ամենաակտիվ հետաքրքրության շրջանակներում: Ժամանակակիցները հիշում են, թե ինչքան*

---

1 Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին. *երկու հատորով: Կազմեց Միխ. Լիֆշից, ներածական հատվածը՝ Միխ. Լիֆշիցի, կոմենտարները՝ Ա. Վիգոդսկու և Գ. Ֆրիդլենդերի: Հայաստանի պետական հրատարակչություն, Երևան, հատոր առաջին, 1963, 783 էջ, հատոր երկրորդ, 1964, 943 էջ:*



*լավ գիտեին Մարքսն ու Էնգելսը համաշխարհային գրականության լավագույն երկերը՝ Հոմերոսյան պոեմները և Էսքիլեսի պիեսները, Դանթեի այլաբանական պատկերները, Շեքսպիրի և Սերվանտեսի ողբերգական ու կոմիկական կերպարները, Գյոթեի և Հայնեի բանաստեղծությունները, Բալզակի սոցիալ-հոգեբանական վեպերը, գրականության և ժողովրդական բանահյուսության անհամար ուրիշ նմուշներ:*

*Հիրավի, կարդալով նրանց երկերը, քեզ մշտապես զգում ես մեծ արվեստագետների և գրական անմահ կերպարների շրջապատում, որոնք ասես վերակենդանանում, ապրում են մի նոր կյանքով, տոգորվում նոր բովանդակությամբ, բացվում իրենց նշանակության նորանոր կողմերով: «Մարքսը և Էնգելսը արվեստի մասին» ժողովածուն ակնառու կերպով ցույց է տալիս գիտական կոմունիզմի հիմնադիրների գեղարվեստական հետաքրքրությունների այդ բացառիկ լայնությունը, որոնք ընդգրկում են, ըստ էության, արվեստի զարգացման բոլոր հիմնական փուլերը՝ անտիկ աշխարհից, միջին դարերից ու վերածննդից մինչև 19-րդ դարի ստեղծագործական հոսանքներն ու տեսությունները, իրականության գեղարվեստական յուրացման ընդհանուր հարցերից մինչև կոնկրետ երկերի վերլուծությունը:*

*Մարքսիզմի քողարկված և բացահայտ հակառակորդները բազմիցս կրրկնել են այն միտքը, որ իբր թե Մարքսն ու Էնգելսը ամբողջական գեղագիտական ուսմունք չեն ունեցել և բավարարվել են միայն առանձին դիտողություններով, որոնք սոսկ նրանց անձնական գեղարվեստական ճաշակներն են արտահայտում: Այդ պնդումը վաղուց պետք է հերքված համարել՝ շնորհիվ առաջին հերթին սովետական գրականագետների և փիլիսոփաների կատարած հսկայական աշխատանքի, որոնք ոչ միայն հավաքել ու հրապարակել են արվեստի հարցերի վերաբերյալ Մարքսի և Էնգելսի հարստագույն ժառանգությունը, այլև բազմակողմանիորեն ուսումնասիրել նրանց գեղագիտական հայացքների համակարգը, վերջինիս օրգանական կապը մարքսիստական փիլիսոփայության և գիտական սոցիալիզմի ուսմունքի հետ:*

*Ճիշտ է, Մարքսն ու Էնգելսը չեն գրել էսթետիկայի գիտական հիմունքները հետևողականորեն շարադրող մի ամբողջական աշխատություն, կամ չեն ձգտել տալ պատրաստի և վերջնական պատասխաններ արվեստի պատմության և տեսության բոլոր խնդիրներին: Բայց նրանք տվել են այն, ինչ ամենից կարևորն է գիտական էսթետիկայի համար՝* նրա տեսական և մեթոդոլոգիական սկզբունքների հիմնավորումը: *Գեղագիտության ելակետային դրույթների սահմանումը Մարքսի և Էնգելսի կողմից՝ նրանց հեղափոխական ուսմունքի մի անբաժան մասն էր: Եվ չպիտի զարմանալ, որ էսթետիկայի հարցերը նրանք կարող էին քննել և, իրոք, հաճախ քննել են տնտեսագիտական և սոցիոլոգիական, փիլիսոփայական ու պատմագիտական հետազոտությունների էջերում: Արվեստի հարցերը, գեղագիտական դրույթները նրանք դիտում էին իբրև իրականության ճանաչողության և վերափոխման մեծ խնդրի մի կարևոր և անհրաժեշտ ասպեկտը, որ է՝* աշխարհի գեղարվեստական յուրացման ուղիների, բնույթի և նպատակների հարցը: *Գեղագիտության անխզելի կապը մարքսիստական ուսմունքի ընդհանուր սկզբունքների, ոգու և նպատակների հետ, որ ակնառու կերպով ցուցադրեցին Մարքսն ու Էնգելսը, այն միակ ճշմարիտ ուղին է, որը տանում է դեպի արվեստի պրոբլեմների արդյունավետ հետազոտություն:*

էսթետիկայի բնագավառում Մարքսի և Էնգելսի բերած արմատական նորությունը հանդես եկավ ամենից առաջ արվեստի և հասարակական կյանքի փոխհարաբերության, արվեստի զարգացման օրինաչափությունների նոր մեկնաբանության մեջ։ Մարքսիզմի երևան գալուց հետո է, որ այդ հարցերն առաջին անգամ խստորեն գիտական լուծում ստացան։

Իրոք, հայտնի է, որ արվեստի և իրականության փոխհարաբերության խնդիրը դարերի ընթացքում եղել է գեղագիտության հանգուցային և արմատական հարցը, լինելով փիլիսոփայության հիմնական հարցի յուրօրինակ դրսևորումը էսթետիկայի ասպարեզում։ Գեղագիտական մտքի բոլոր խոշորագույն ներկայացուցիչները, սկսած հին արևելքի մտածողներից, Պլատոնից և Արիստոտելից, ուղղակի կամ անուղղակի ձևով ձգտել են պատասխանել այն հարցին, թե ի՞նչ կապ կա արվեստի և իրականության միջև։ Այդ հարցի պատասխանը երբեմն ստանում էր արվեստի մեջ կյանքի և արտացոլման, արվեստը կյանքին ծառայեցնելու սկզբունքի հռչակման, երբեմն էլ այդ կապի ուղղակի կամ անուղղակի ժխտման ձև։ Իդեալիստական էսթետիկան իր ամենատարբեր դրսևորումների մեջ միշտ այսպես կամ այնպես հանգել է արվեստի և իրականության ռեալ կապերի բացասման, արվեստին միստիկական, անբացատրելի հատկանիշներ վերագրելուն։ Այդ էսթետիկայի ամենաբարձր արտահայտությունը՝ Հեգելի գեղագիտական ուսմունքը, հիմնվում էր այն դրույթի վրա, թե արվեստը «համաշխարհային ոգու», «բացարձակ գաղափարի» արտահայտությունն է, երբ այդ գաղափարը գտնվում է իր զարգացման համեմատաբար ցածր աստիճանում։

Հասարակական կյանքում արվեստի տեղի գիտական ըմբռնմանը չկարողացան հասնել նույնիսկ անցյալի առաջավոր մատերիալիստական գեղագիտության ներկայացուցիչները, չնայած գեղարվեստի դերի և նշանակության մասին նրանց արտահայտած բազմաթիվ ճշմարիտ դրույթների։

Հայտնագործելով հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունները, ցույց տալով նրա տարբեր կողմերի փոխհարաբերության ճշմարիտ նկարագիրը, Մարքսը և Էնգելսը դրանով իսկ առաջին անգամ գիտականորեն որոշեցին նաև արվեստի տեղն ու դերը հասարակական երևույթների շղթայի մեջ, բաց արեցին գեղագիտության էական խնդիրների ճշմարիտ լուծման ճանապարհը։ Այս առումով մենք կարող ենք ասել,— ինչքան էլ առաջին հայացքից սա տարօրինակ թվա,— որ եթե նույնիսկ Մարքսն ու Էնգելսը արվեստի մասին ուղղակիորեն ոչինչ գրած չլինեին, դարձյալ նրանց ուսմունքը մեծագույն նշանակություն կունենար գիտական էսթետիկայի հարցերի լուծման համար։ Այնինչ գիտական կոմունիզմի հիմնադիրները մեզ թողել են բազմաթիվ ուղղակի դիտողություններ արվեստի ընդհանուր հարցերի, նրա պատմության կոնկրետ երևույթների մասին, դիտողություններ, որոնք միասին վերցրած կազմում են մարքսիստական գեղագիտության անխախտ հիմքը։

Գաղափարախոսական երևույթների, այդ թվում և արվեստի վերաբերյալ խոսելիս Մարքսի և Էնգելսի հիմնական ելակետն այն էր, որ դրանց հիմքը, բոլոր դեպքերում, մարդկանց նյութական հարաբերություններն են, որոնք, վերջին հաշվով, պայմանավորում են նրանց գաղափարները, ըմբռնումները,



գեղագիտական պատկերացումները։ Հենց այդ պատճառով էլ Մարքսը «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» աշխատության մեջ (1859) հասարակության գեղագիտական հայացքները (հետևաբար և ողջ արվեստը) մտցնում էր գաղափարական վերնաշենքի մեջ, վերնաշենք, որը պայմանավորված է նյութական կյանքի արտադրաեղանակով և դանդաղ կամ արագորեն հեղաշրջվում է տնտեսական հիմքի փոփոխության հետ միասին։

Սակայն մարքսիզմի ոգուն բոլորովին խորթ է արտադրության և արվեստի ուղղագիծ և ավտոմատիկ կապի տեսակետը։ Մարքսիզմի հետ ոչինչ ընդհանուր չունի այն մեխանիկական հայացքը, որի համաձայն արվեստի առաջադիմությունն ինքնին բխում է արտադրության եղանակի զարգացումից։ Այդ հայացքը պատմական մատերիալիզմի գռեհկացման նմուշներից մեկն է, որոնց դեմ անցյալ դարի 90-ական թվականներին այնպիսի կրքոտությամբ հանդես է եկել Էնգելսը իր մի շարք նամակներում։

Մարքսիստական էսթետիկայի կարևորագույն դրույթներից մեկն այն է, որ արվեստի զարգացումը ամենևին էլ ավտոմատիկորեն չի բխում արտադրության զարգացումից։ Այո՛, արտադրության եղանակը վերջին հաշվով պայմանավորում է հոգևոր կյանքի բոլոր կողմերը, այդ թվում և արվեստը։ Բայց այստեղ գործում են նաև շատ ուրիշ հանգամանքներ, ինչպես ժամանակի հասարակական հարաբերություններն ու դասակարգային պայքարը, քաղաքական, փիլիսոփայական, բարոյական ուսմունքներն ու իդեոլոգիայի մյուս ձևերը, նախկինում ստեղծված գեղարվեստական ավանդները և այլն։ Սրանք են, որ անմիջապես ներգործում և պայմանավորում են արվեստի զարգացման մակարդակը տվյալ դարաշրջանում։ Արվեստի պատմության մասին ճիշտ դատելու համար, սովորեցնում է Մարքսը, պետք է հաշվի առնել այդ բոլոր գործոնները և ոչ թե մեխանիկական հավասարություն որոնել գեղարվեստական ձևերի ու տնտեսական զարգացման աստիճանի միջև։ Հենց այդ պատճառով էլ արվեստի զարգացումը ձեռք է բերում հարաբերական ինքնուրույնություն, որոշակի դարաշրջաններում անհամաչափություն է առաջացնում նյութական արտադրության և գեղարվեստական առաջադիմության մակարդակի միջև։ Հասարակության գեղարվեստական զարգացումը կարող է ետ կամ առաջ ընկնել նյութական հիմքից, տնտեսական համեմատաբար ցածր մակարդակի պայմաններում կարող է ստեղծվել բարձր զարգացման հասած արվեստ և կամ ընդհակառակը՝ նյութական առաջադիմությունը կարող է չուղեկցվել համապատասխան գեղարվեստական նվաճումներով։

Այս հարցերին Մարքսն անդրադարձել է «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» աշխատության հռչակավոր ներածության մեջ, ուր ասված է. «Արվեստի նկատմամբ հայտնի է, որ նրա ծաղկման որոշ ժամանակաշրջաններն ամենևին չեն համընկնում հասարակության ընդհանուր զարգացմանը, հետևաբար, նաև նրա նյութական հիմքի զարգացմանը, հիմք, որը կարծես հասարակության կազմակերպության կմախքն է։ Օրինակ, հույները ժամանակակից ժողովուրդների համեմատությամբ կամ թե նաև Շեքսպիրը» (հ. I, էջ 160)։

Հին հունական արվեստն իր վառ և անկրկնելի մարմնավորումներով՝ մարդկության «պատմական մանկությունը» հավերժացնող իր կոթողներով Մարքսի համար հենց լավագույն օրինակն էր այն բանի, թե ինչպես տնտեսական անզարգացած պայմաններում կարող է ստեղծվել մի արվեստ, որը հա-

զարամյակներ հետո էլ շարունակում է պահպանել «նորմայի և անհասանելի տիպարի նշանակությունը»։ Մարքսը նշում էր նաև Շեքսպիրի և առհասարակ վերածնության դարաշրջանի արվեստը, իբրև նշված անհամաչափության վառ օրինակ, իսկ Էնգելսը այս առումով խոսում էր 18-րդ դարի Գերմանիայի մասին, երբ «քաղաքական և սոցիալական տեսակետից ամոթալի դարաշրջանը միաժամանակ եղավ գերմանական գրականության մեծ դարաշրջանը» (հ. I, էջ 606)։ Էնգելսը նշել է նաև ռուսական և նորվեգական գրականության մեծ ծաղկումը 19-րդ դարում, չնայած տնտեսական մակարդակի իմաստով Ռուսաստանն ու Նորվեգիան այդ ժամանակ ետ էին մնացել եվրոպական զարգացած երկրներից։

Այս օրինակները ցույց են տալիս, որ արվեստի և հասարակության նյութական հիմքի անհամաչափ զարգացման միտքը Մարքսի և Էնգելսի գեղագիտական ուսմունքի կարևորագույն կողմերից մեկն է։ Այդ դրույթը պարտավորեցնում է արվեստի զարգացման մասին դատել ոչ թե ինչ-որ ընդհանուր սխեմայով («տնտեսական դրության ավտոմատիկ ներգործության» սկզբունքով, ինչպես ասում էր Էնգելսը), այլ ամեն դեպքում հետազոտել տնտեսական, քաղաքական, գաղափարական և գեղարվեստական այն բոլոր նախադրյալները, որոնք միասին վերցրած պայմանավորել են արվեստի պատմության վերելքներն ու անկումները։

Մատերիալիստական դիալեկտիկայի դիրքերից Մարքսն արծարծեց նաև արվեստի մեծ հուշարձանների հարատևող կյանքի պատճառների հարցը։ Արվեստի ստեղծագործությունը դուրս է գալիս իր դարաշրջանի սահմաններից, ապրում է հաջորդ սերունդների գիտակցության մեջ, որովհետև խորապես արտացոլել է իր ժամանակի էական գծերը։ Այն դառնում է անկրկնելի և անփոխարինելի, ինչպես որ անկրկնելի է նրան ծնունդ տված դարաշրջանը։ Մարքսը ոչ միայն չի հակադրում արվեստի երկերի կոնկրետ պատմական պայմանավորվածությունը և նրանց հարատևող նշանակությունը, այլև ցույց է տալիս դրանց դիալեկտիկ կապը. որքան ավելի խորն է արտացոլում արվեստն իր դարաշրջանը, այնքան ավելի համամարդկային և հավերժական գծեր է ձեռք բերում այն։

Գիտական կոմունիզմի հիմնադիրների մի շարք աշխատություններում, հատկապես Մարքսի «1844 թվականի տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում», Էնգելսի «Բնության դիալեկտիկայում» արմատապես նոր լուծում ստացան նաև գեղագիտական ըմբռնումների ծագման և պատմական զարգացման հարցերը։ Էսթետիկայի այս հանգուցային և իդեալիստների կողմից ամենից ավելի խճճված խնդրի մեկնաբանության մեջ ևս Մարքսն ու Էնգելսը ելնում էին պատմականության դիրքերից, մարդկության նյութական-հոգևոր առաջադիմության մատերիալիստական ըմբռնումից։ Նրանք չեմքից մերժեցին իդեալիստական, միստիկական պատկերացումները գեղագիտական զգացումների «բնածին» բնույթի, նրանց «աստվածային ծագման» վերաբերյալ։

Էսթետիկական զգացումը ոչ թե մարդու բիոլոգիական հատկանիշն է, այլ նրա պատմական զարգացման օրինաչափ արդյունքը, նշում էր Մարքսը։ Մարդկային հասարակության զարգացման անհամար դարեր էին պետք, որպեսզի աստիճանաբար «մարդկայնանային» մարդու զգացումները, ընդունակ դառնային ընկալելու ձևի և հնչյունների գեղեցկությունը։ Այդ պրոցեսում



«մարդկայնանում է» նաև բնությունը, մարդու առջև բացվում իր ամբողջ գեղեցկությամբ ու խորությամբ։

Գեղագիտական ունակությունների առաջացման վճռական գործոնը եղել է աշխատանքը, կյանքի պայմաններն ու արտադրության միջոցները բարելավելու մշտական ձգտումը։ Աշխատանքի, արտադրության պրոցեսում է, որ մարդու մեջ առաջացան ռիթմի, հնչյունների համաչափության, ձևի գեղեցկության ըմբռնումները և, ի վերջո, «մարդու ձեռքը հասավ կատարելության այն բարձր աստիճանին, որի վրա նա կարողացավ, կարծես թե կախարդական ուժով, կյանքի կոչել Ռաֆայելի նկարները, Տորվալդսենի արձանները, Պագանինիի երաժշտությունը» (հ. I, էջ 170)։ Իր ծագման շրջանում գեղագիտական զգացումը սերտորեն կապված է գործնական նպատակների ու ազդակների հետ և միայն հետագայում է, որ ինքնուրույն հոգեկան բավականության բնույթ է ստանում։ Մարքսի և Էնգելսի այս դրույթները հետագայում իրենց բազմակողմանի հիմնավորումն ու զարգացումը գտան մարքսիզմի մեծ տեսաբան և պրոպագանդիստ Գ. Վ. Պլեխանովի աշխատություններում («Նամակներ առանց հասցեի»)։

Նույն «1844 թվականի տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում» Մարքսը առաջ քաշեց չափազանց կարևոր մի գեղագիտական դրույթ։ Կենդանական աշխարհից բաժանվելու վճռական գործոններից մեկը, նշում էր Մարքսը, հենց այն էր, որ մարդն սկսեց ստեղծագործել «նաև ըստ գեղեցկության օրենքների», իր գործունեության բոլոր ոլորտները ներմուծելով գեղագիտական չափանիշը, օգտակարության գործնական սկզբունքը զուգակցելով գեղեցկության պահանջի հետ։ Մարդկային գործունեությունը գեղեցկության օրենքների համաձայն գնահատելու միտքը մատնանշում էր մարդու լիարժեք զարգացման իսկական հեռանկարը, որն աներևակայելի է առանց գեղագիտական սկզբունքի առկայության։

Մարքսն ու Էնգելսը պատմական զարգացման իրական հակասությունների մեջ էին որոնում այնպիսի գեղագիտական հասկացությունների աղբյուրը, որպիսիք են ողբերգականը և կոմիկականը։ Դեռևս վաղ շրջանում գրած «Հեգելի իրավափիլիսոփայության քննադատության շուրջը» հոդվածում, հետագայում էլ «Լուի Բոնապարտի բրյումերի տասնութը» գրքում Մարքսը ցույց տվեց, որ հասարակական կյանքի այս կամ այն պատմական ձևի, դասակարգի կամ անհատի կործանումը ողբերգական բնույթ է ունենում այն ժամանակ, երբ նրա հետ խորտակվում է որևէ դրական մարդկային-հասարակական բովանդակություն։ Իսկ երբ տվյալ երևույթն արդեն սպառել է իր դրական զարգացման հնարավորությունները, վերածվել է պատմական առաջադիմության խոչընդոտի, նրա կործանումն էլ դառնում է կոմիկական, օգնում է մարդկությանը «ուրախ բաժանվելու իր անցյալից»։ Ավելի ուշ՝ Ֆ. Լասսալին գրած նամակում (1859) Էնգելսը տալիս էր գեղագիտական շատ բարդ հարցի զարմանալիորեն պարզ և խոր բնութագիրը, երբ գրում էր, թե ողբերգական բախումը առաջանում է «պատմականորեն անհրաժեշտ պահանջի և նրա իրագործման պրակտիկ անկարելիության միջև» (հ. I, էջ 33)։ Երբ հասարակական կյանքում արդեն ծնվել է տվյալ պատմական պահանջը, բայց պրոգրեսիվ ուժերը դեռ հնարավորություն չունեն այն իրագործելու, այդ դեպքում նրանց կործանումը դառնում է ողբերգական։ Օրինակ, հենց դրա մեջ է անցյալում ժողովրդական ապստամբությունների պարտության ողբերգական իմաստը՝ պատմական և գեղա-

գիտական առումով։ Այսպես, մարքսիզմը ողբերգականն ու կոմիկականը բնորոշեց պատմական առաջադիմության դիրքերից, մերժելով այդ ըմբռնումների արտապատմական, ֆաթալիստական մեկնաբանությունները, որ հատուկ էին իդեալիստական գեղագիտությանը։



Գրական բարդ իրադրության մեջ Մարքսն ու Էնգելսը ունեին իրենց որոշակի դիրքորոշումն ու կայուն նախասիրությունները։ Իրենց գործունեության ողջ ընթացքում նրանք պաշտպանում էին ռեալիզմը իբրև նոր ժամանակների առավել արդյունավետ և կարևոր գրական ուղղություն։ Չժխտելով ուրիշ հոսանքների ստեղծած գրական արժեքները, օրինակ՝ Բայրոնի և Շելլիի հեղափոխական ռոմանտիզմը, մարքսիզմի հիմնադիրները միաժամանակ բազմիցս նշել են այդ հոսանքների թույլ կողմերը։ Նրանք մարդկության գեղարվեստական զարգացման հեռանկարները կապում էին նախ և առաջ ռեալիզմի հետ, քանի որ վերջինս ամենից ավելի է համապատասխանում արվեստի գերագույն կոչմանն ու նպատակին՝ կյանքի ճշմարտացի արտացոլման խնդրին։ Դեռ 40-ական թթ. սկզբին գրած մի հոդվածում Մարքսն ասում էր, որ «ոչ միայն հետազոտության արդյունքը, այլև դեպի այն տանող ուղին պետք է լինի ճշմարիտ։ Ճշմարտության հետազոտությունն ինքը պետք է լինի ճշմարիտ» (հ. II, էջ 561—562)։ Կյանքի ճշմարտության գեղարվեստական հետազոտության ամենաճշմարիտ ուղին Մարքսն ու Էնգելսը համարում էին ռեալիզմը, սրանից էլ բխում է այդ մեթոդի հետևողական պաշտպանությունը, նրա էական գծերի տեսական հիմնավորումը, որոնք, հիրավի, կարմիր թելի պես անցնում են նրանց գեղագիտական դատողությունների միջով։

Ռեալիզմի սկզբունքների պաշտպանությունը երևաց արդեն Մարքսի և Էնգելսի առաջին համատեղ աշխատության՝ «Սուրբ ընտանիք» գրքի մեջ (1845 թ.), ուր տրված է Էժեն Սյուի «Փարիզի գաղտնիքները» վեպի մանրամասն վերլուծությունը, ինչպես նաև, այսպես կոչված, «ճշմարիտ սոցիալիզմի» գրականության քննադատության մեջ, որ նույն տարիներին տվել է Էնգելսը։

Ռեալիզմի մարքսիստական ըմբռնումը ավելի ամբողջական արտահայտություն ստացավ Մարքսի և Էնգելսի նամակագրության մեջ Ֆերդինանդ Լասսալի հետ՝ վերջինիս «Ֆրանց ֆոն Զիկկինգեն» պիեսի առթիվ (1859)։ 16-րդ դարի սկզբի գերմանական ասպետների ապստամբության մասին պատմող այդ ստեղծագործությունը Մարքսի և Էնգելսի համար առիթ դարձավ արտահայտելու մի շարք սկզբունքային դրույթներ՝ պատմական ողբերգության աղբյուրների և բնույթի, ռեալիստական արվեստի չափանիշների մասին։ Նշանակալից է, որ թեև իրենց կարծիքը Լասսալի ողբերգության մասին Մարքսն ու Էնգելսը ձևակերպեցին իրարից անկախ, տարբեր քաղաքներից (Մարքսը Լոնդոնից, իսկ Էնգելսը՝ Մանչեստրից), բայց նրանց տեսակետները լրիվին համընկնում են ոչ միայն ընդհանուր ըմբռնումների, այլև մասնավոր դիտողությունների մեջ։

Դրվատելով պիեսի առանձին ուժեղ տեսարաններն ու կերպարները, նրանք միաժամանակ քննադատում են մի շարք կողմեր՝ կապված կոնֆլիկտի ընտրության, բնավորությունների պատկերման եղանակների հետ։ Այդ քննադատու-



թյունը, ըստ էության, վերաբերում էր ոչ միայն Լասսալի ստեղծագործության սուբյեկտիվ-ռոմանտիկական, «շիլլերական» սկզբունքներին, այլև նրա ամբողջ քաղաքական-փիլիսոփայական դիրքորոշմանը, որն արդեն այդ ժամանակ բնութագրվում էր իդեալիզմով և օպորտունիզմով՝ հեղափոխության և նրա շարժիչ ուժերի ըմբռնման հարցերում։

«Ֆրանց ֆոն Զիկկինգեն» ողբերգության մեջ Լասսալն այն միտքն էր զարգացնում, որ 1522—23 թթ. ապստամբության պարտության պատճառը ոչ թե սոցիալական ուժերի կոնկրետ հարաբերակցությունն է եղել, այլ շարժման առաջնորդների «հեղափոխական ոգևորության» պակասն ու կոմպրոմիսի բանական հաշվենկատությունը։ Այդ հատկանիշները, Լասսալի կարծիքով, ֆաթալիստորեն հանդես են գալիս բոլոր հեղափոխական առաջնորդների գործունեության մեջ, և հենց դա է նրանց ապրած ողբերգության պատճառը։ Մարքսն ու Էնգելսը վճռականորեն հանդես եկան այս վերացական-իդեալիստական ըմբռնման դեմ, որը հանգեցրել է նույնպիսի վերացականության՝ ստեղծագործական առումով։ Զիկկինգենի ապստամբության պարտությունը նրանք բացատրում են սոցիալական ուժերի կոնկրետ իրավիճակով, ժողովրդական մասսաներից կտրված լինելով։ Զիկկինգենը և Հուտտենը, նշում է Մարքսը, հեղափոխականներ էին միայն «իրենց երևակայության մեջ», քանի որ հանդես էին գալիս իբրև կործանվող դասակարգի՝ ասպետականության ներկայացուցիչներ և, իբրև այդպիսին, պետք է անխուսափելիորեն պարտություն կրեին կայսեր և իշխանների դեմ մղած պայքարում։

Մարքսը և Էնգելսը առաջ են քաշում չափազանց կարևոր մի հարց. ռեալիստական արվեստի պայմաններից մեկը պատկերվող դարաշրջանի հիմնական սոցիալական կոնֆլիկտի և հասարակական ուժերի հարաբերակցության ճիշտ բացահայտումն է։ Նրանք կշտամբում են Լասսալին այն բանի համար, որ նա, ցանկանալով պատկերել հեղափոխական իրադրություն, ըստ էության սխալ ընտրություն է կատարել՝ գործողության կենտրոնում դնելով ասպետական օպոզիցիայի ղեկավարներին և մոռացության տալով 16-րդ դարի գյուղացիական («պլեբեյական-մյունցերական») շարժումը՝ իր իսկական դեմոկրատական, հեղափոխական բովանդակությամբ, իր «զարմանալի խայտաբղետ պլեբեյական հասարակայնությամբ»։ Դա էլ հենց Լասսալի պիեսը դարձրել է «ոչ բավականաչափ ռեալիստական», քանի որ անտեսվել է ժամանակի հիմնական հեղափոխական շարժիչ ուժը։

Երբ Մարքսն ու Էնգելսը խոսում էին արվեստի ուժի և հնարավորությունների մասին, նրանց առջև, իբրև բարձր գեղարվեստական իդեալ, կանգնում էր Շեքսպիրը, որի նշանակությունը ժամանակակից արվեստի համար վիթխարի է։ Ահա թե ինչու նրանք կոչ էին անում «իդեալականի հետևում չմոռանալ ռեալիստականը, Շիլլերի հետևում՝ Շեքսպիրին», ձգտել գործողության «շեքսպիրացման», այսինքն՝ գեղարվեստական պատկերման օբյեկտիվության, վառ և կենդանի բնութագրումների։ Այնինչ բնավորությունների պատկերման «շիլլերական» եղանակը, որին հետևել էր Լասսալը, կերպարներին հաճախ զրկում է կենդանությունից, «անհատներին վերածելով ժամանակի ոգու պարզ խոսափողերի»։ Նշելով այդ թերությունը, Մարքսը դնում էր կերպարների մեջ նրանց բնորոշ գծերը և բնավորության կենդանի բազմակողմանիությունը բացահայտելու պահանջը։

Ռեալիզմի համար մարքսիզմի հիմնադիրների երկարամյա պայքարի վերջին փուլը 80—90-ական թթ. էնգելսի մի շարք ելույթներն էին, հատկապես նրա նամակները Մ. Կաուցկուն և Մ. Հարկնեսին: Ռեալիզմի մարքսիստական կոնցեպցիան այստեղ իր ավարտուն կերպարանքն ստացավ:

Գերմանացի կին գրող Միննա Կաուցկուն գրած նամակում (1885), ավստրիական աղահանքերի բանվորների կյանքը պատկերող նրա «Հները և նորերը» վեպի կապակցությամբ էնգելսը առաջ քաշեց արվեստի մեջ գաղափարական տենդենցի բնույթի և դրսևորման ձևերի հարցը: Տենդենցիոզությունը, այսինքն գաղափարական ուղղվածությունը հատուկ է ամեն մի իսկական գեղարվեստական երկի: Իր այդ միտքը հաստատելու համար էնգելսը բազմաթիվ օրինակներ էր բերում գրականության պատմության տարբեր փուլերից՝ սկսած «տրագեդիայի հայր էսքիլեսից և կոմեդիայի հայր Արիստոֆանից», որոնք, «երկուսն էլ վառ արտահայտված տենդենցիոզ բանաստեղծներ էին», մինչև Դանթեն, Սերվանտեսն ու Շիլլերը, մինչև «արդի ռուս և նորվեգացի գրողները, որոնք հիանալի վեպեր են գրում» (հ. I, էջ 6): էնգելսի դատողությունների բուն իմաստն այն է, որ տենդենցը ներքնապես հատուկ է առաջավոր արվեստին, որովհետև կյանքի ճշմարտացի արտացոլման ձգտումն արդեն խորապես գաղափարական ակտ է: Այն ենթադրում է կյանքի էական կողմերի բացահայտում, նրանց մեկնաբանություն և գնահատական որոշ գաղափարական դիրքերից: Բարձրարժեք գեղարվեստական երկում տենդենցը ոչ թե դրսից ներմուծված մի բան է, այլ պատկերվող իրականության էության մեջ ներթափանցելու, նրա զարգացման հեղափոխական տենդենցները կռահելու բնական արդյունք: Ահա թե ինչու էնգելսն ասում էր, թե «տենդենցը պետք է ինքնին բխի դրությունից և գործողությունից, առանց այն բանի, որ դա հատկապես մատնանշվի» (հ. I, էջ 6): Նա հանդես էր գալիս արհեստական, մերկապարանոց միտումնավորության դեմ, որը հանգեցնում է կյանքի օբյեկտիվ ճշմարտության խեղաթյուրման, կերպարներն ու գործողության ընթացքը բռնի կերպով ենթարկելով նախապես առաջադրված գաղափարին: Այդ թերությունը նա տեսնում էր իր ժամանակի որոշ «սոցիալիստական տենդենցիոզ վեպերում»:

Անգլիացի կին գրող Մարգարիտա Հարկնեսին գրած նամակում (1888) էնգելսը բնութագրեց ռեալիզմի տեսության այլ կողմեր՝ տիպականության, աշխարհայացքի և ստեղծագործության փոխադարձ կապի հարցերը: Դրվատելով Հարկնեսի «Քաղաքի աղջիկը» վիպակը մի շարք ճշմարտացի տեսարանների համար, էնգելսը միաժամանակ քննադատում էր նրան՝ բանվոր դասակարգին սոսկ «որպես պասսիվ զանգված» պատկերելու, նրա հեղափոխական ակտիվությունը չտեսնելու համար: Այդ պատճառով էլ վիպակի ռեալիստական կերպարները չեն դրվել պատմականորեն ճշմարտացի հանգամանքների մեջ, խզում է առաջացել բնավորությունների և հանգամանքների միջև: Հենց այս առիթով էլ էնգելսը ձևակերպեց ռեալիստական մեթոդի կարևորագույն դրույթը հետևյալ կերպ. «Իմ կարծիքով ռեալիզմը ենթադրում է, բացի մանրամասնությունների ճշմարտացիությունից, տիպական բնավորությունները տիպական հանգամանքների մեջ վերարտադրելու ճշմարտացիություն» (հ. I, էջ 8):

էնգելսի այս դրույթը հանդիսացավ գրականության պատմության և գեղագիտական մտքի նախընթաց փորձի յուրօրինակ հանրագումարն ու ընդհանրացումը: Պատկերվող կերպարների և նրանց շրջապատող իրադրության կապի, փոխհարաբերության հարցերը կանգնել են բոլոր մեծ արվեստագետների առջև,



ամեն անգամ յուրովի լուծվել մարդու և հասարակության մասին տվյալ դարաշրջանում եղած պատկերացումների ոգով: Այդ խնդրի այլևայլ ըմբռնումները եղել են այն հիմնական սահմանագծերից մեկը, որով իրարից տարբերվել են անցյալի ստեղծագործական մեթոդները՝ կլասիցիզմը, ռոմանտիզմը, ռեալիզմը, նատուրալիզմը և այլն: Նոր ժամանակներում գեղագիտական միտքը համառորեն որոնում էր այդ պրոբլեմի գիտական բնութագիրը:

Սակայն ռեալիզմին էնգելսի տված բնութագիրը, ունենալով իր նախորդները գեղագիտական մտքի պատմության մեջ, բոլորովին նոր խոսք էր, քանի որ հենվում էր բնավորության և հանգամանքների սկզբունքորեն այլ՝ պատմական մատերիալիստական ըմբռնման վրա: Խոսելով հանգամանքների մասին, նախամարքսյան մտածողներն ու գրողները դա կամ հասկանում էին աշխարհագրական միջավայրի, ժամանակի բարքերի ու ճաշակների առումով (18-րդ դարի լուսավորիչներ), կամ կապում էին սոսկ համապատասխան գաղափարների արտացոլման հետ (Հեգել), կամ էլ փաստորեն հանգեցնում էին հերոսների կենցաղային միջավայրին և ժառանգած հատկանիշներին (Զոլա և նատուրալիստներ):

Մարքսիստական գեղագիտությունը ելնում է մարդկային բնավորության, իբրև հասարակական հարաբերությունների արդյունքի, նոր ըմբռնումից: Տիպական հանգամանքների հասկացությունն էլ Մարքսը և էնգելսը կապեցին, ամենից առաջ, սոցիալ-պատմական կոնկրետ իրադրության և հարաբերությունների հետ: Դրանով իսկ նրանք մատնանշեցին այն ամենից վճռական գործոնը, որը պայմանավորում է բնավորության ձևավորման և զարգացման ընթացքը՝ սոցիալական հանգամանքների ամբողջությունը: «Եթե հանգամանքներն են ստեղծում մարդու բնավորությունը,— կարդում ենք «Սուրբ ընտանիքի» էջերում,— ապա ուրեմն հարկավոր է մարդկային դարձնել հանգամանքները: Եթե մարդն ըստ իր բնավորության հասարակական էակ է, ապա նա, հետևապես, միայն հասարակության մեջ կարող է զարգացնել իր իսկական բնավորությունը, և նրա բնավորության ուժի մասին հարկավոր է դատել ոչ թե առանձին անհատների ուժով, այլ ամբողջ հասարակության ուժով» (հ. I, էջ 466): Միաժամանակ Մարքսն ու էնգելսը հեռու էին բնավորությունը հանգամանքների սոսկ կրավորական արդյունք համարելուց: Մարդը ձևավորվում է հանգամանքների մեջ, բայց ինքն էլ ակտիվորեն մասնակցում է այդ հանգամանքների ստեղծմանը և վերափոխմանը: Հեղափոխական այդ ակտիվության պատկերումն էին պահանջում Մարքսն ու էնգելսը իրենց ժամանակի առաջավոր արվեստից:

Մ. Հարկնեսին գրած նամակում էնգելսը ցույց էր տալիս, որ ռեալիստական արվեստն ընդունակ է հասնելու իրականության պատմականորեն ճշմարտացի վերարտադրության, նրա զարգացման հեղափոխական տենդենցների բացահայտման՝ նույնիսկ հեղինակի քաղաքական նախապաշարումներին և սոցիալական համակրանքներին հակառակ: Դրա ամենացայտուն օրինակը Բալզակի ստեղծագործությունն է, որի սեղմ, բայց արտակարգ վառ և խոր գնահատականը այդ նամակում՝ պատկանում է մարքսիստական քննադատության լավագույն էջերի թվին: «Մարդկային կատակերգության» մեջ էնգելսը տեսնում էր 19-րդ դարի առաջին կեսի ֆրանսիական հասարակության հանճարեղ համայնապատկերը՝ դասակարգային տեղաշարժերի, ընտանեկան և հասա-

րական հարաբերությունների առավել էական գծերով դրոշմված։ Բալզակը սուր երգիծանքով պատկերեց ազնվական հասարակության անկումը, նա «անկեղծ հիացմունքով» ցուցադրեց հանրապետական հերոսներին, որոնք «ժողովրդական մասսաների ներկայացուցիչներն էին»։ Եվ այդ ամենը, չնայած այն հանգամանքին, որ Բալզակի համակրանքը հենց մահացող դասակարգի՝ արիստոկրատիայի կողմն էր, որ նա միապետությունն ու կրոնը համարում էր «երկու հավիտենական ճշմարտություններ» (տե՛ս «Մարդկային կատակերգություն» առաջաբանը)։

Ինչպե՞ս կարող էր առաջանալ այսպիսի, առաջին հայացքից անբացատրելի մի հակասություն։ Էնգելսն ամենևին էլ հարցն այնպես չի բացատրում, որ իբր թե կյանքի ճշմարտությունը և դեմոկրատական համակրանքները Բալզակի ստեղծագործության մեջ հանդես եկան «տարերայնորեն», «անգիտակցաբար», սոսկ կյանքը ռեալիստորեն արտացոլելու շնորհիվ։ Էնգելսի մտքերն այսպես բացատրելու փորձեր արվել են, բայց դրանք խեղաթյուրված պատկերացումներ են։ Բալզակի ռեալիզմը ինչ-որ «ենթագիտակցական» բան չէր։ Նրա աշխարհայացքին և ստեղծագործությանը հատուկ հակասությունները յուրօրինակ արտացոլումն էին դարաշրջանի հասարակական հակասությունների։ «Ա՛յն,— գրում է Էնգելսը,— որ Բալզակը հարկադրված էր դեմ գնալու իր սեփական դասակարգային համակրություններին և քաղաքական նախապաշարումներին, ա՛յն, որ նա տեսավ իր սիրած արիստոկրատների անկման անխուսափելիությունը և նկարագրեց նրանց որպես մարդկանց, որոնք արժանի չեն ավելի լավ վիճակի, և ա՛յն, որ նա ապագայի իսկական մարդկանց տեսավ այնտեղ, ուր միայն կարելի էր գտնել նրանց այդ ժամանակ,— այդ ես համարում եմ ռեալիզմի մեծագույն հաղթանակներից մեկը, ծերունի Բալզակի մեծագույն առանձնահատկություններից մեկը» (հ. I, էջ 10)։

Շատ իմաստալից է նաև մեծ գրողի այն գնահատականը, որ Էնգելսը տվել է ավելի վաղ (1883) Լաուրա Լաֆարգին գրած նամակում։ «Ինչպիսի՜ համարձակություն,— գրում էր Էնգելսը Բալզակի մասին։— Ինչպիսի՜ հեղափոխական դիալեկտիկա նրա բանաստեղծական արդարադատության մեջ»։ Մեծ ռեալիստի «բանաստեղծական արդարադատությունը» (այսինքն պատկերվող կյանքի և հերոսների գնահատականն ու «դատավճիռը») արտահայտում էր օբյեկտիվ իրականության «հեղափոխական դիալեկտիկան», նրա ներքին հակասությունները և ապագայի հեռանկարները։ Սրա մեջ է Բալզակի ռեալիզմի մեծագույն ուժը։

Ոչ միայն Բալզակի, այլև շատ ուրիշ գրողների կապակցությամբ Մարքսը և Էնգելսը տվել են արվեստագետին իր ներքին հակասությունների մեջ դիտելու և այդ հակասությունները պատմական հանգամանքներով բացատրելու դասական օրինակներ։ Հիշենք Դանթեի, Գյոթեի և Շիլլերի, Հյուգոյի և Սյուի, Իբսենի և այլ գրողների ստեղծագործությանը տրված գնահատականները։ Գեղարվեստական ժառանգությունն իր սոցիալ-պատմական միջավայրում, իր ներքին բարդության և դիալեկտիկ հակասության մեջ վերլուծելու սկզբունքը, որը հետագայում խորացվեց Լև Տոլստոյի մասին Լենինի հանճարեղ հոդվածներում, կազմում է մարքսիստական գրականագիտության մեթոդոլոգիական կարևորագույն հիմքերից մեկը։



⁂

Հենվելով հասարակության զարգացման խոր հետազոտության վրա, Մարքսը և Էնգելսը գիտականորեն բնութագրեցին բուրժուական հասարակության մեջ արվեստի ճակատագրի և նրա ապագայի հարցերը։ Արտադրության կապիտալիստական եղանակի հակասությունների բացահայտումը Մարքսին բերեց այն հետևության, որ բուրժուական հասարակության մեջ հոգևոր արտադրության, մասնավորապես արվեստի նկատմամբ դրսևորվում է յուրօրինակ վերաբերմունք. «կապիտալիստական արտադրությունը թշնամի է հոգևոր արտադրության որոշ ճյուղերին, օրինակ, արվեստին ու պոեզիային»,— գրել է Մարքսը (հ. I, էջ 229)։

Արվեստի նկատմամբ կապիտալիզմի թշնամության միտքը մարքսիստական գեղագիտության առաջ քաշած հիմնական դրույթներից մեկն էր, որը բխում էր ժամանակակից հասարակության օրինաչափությունների գիտական վերլուծությունից։ Կապիտալիզմը մարդկային բոլոր հարաբերությունները և արժեքները ենթարկեց շահույթի սկզբունքին։ Նա գրողի ու արվեստագետի աշխատանքը ևս դարձրեց «առուծախի առարկա», զրկելով այն «նախկին լուսապսակից»։ Նա ծայրահեղ չափերի հասցրեց աշխատանքի բաժանման հետևանքով առաջացած՝ «գեղարվեստական տաղանդի բացառիկ համակենտրոնացումը առանձին անհատների մեջ և դրա հետ կապված՝ նրա ճնշումը լայն մասսայի մեջ» (հ. I, էջ 244, 302)։ Այս բոլորի հետևանքով բուրժուական հասարակության մեջ շատ ավելի ուժեղացավ նյութական արտադրության և արվեստի զարգացման անհամաչափությունը, իսկ արտադրության և տեխնիկայի նվաճումները հաճախ գնվեցին «բարոյական անկման հաշվին»։

Իհարկե, Մարքսի և Էնգելսի այս մտքերը չպիտի հասկանալ այնպես, թե բուրժուական դարաշրջանում արվեստի զարգացումն ընդհանրապես կանգ է առնում և մեծ արժեքներ չեն ստեղծվում։ Հանրահայտ է, որ այդ հասարակության մեջ են երևան եկել գրականության և արվեստի շատ անմահ կոթողներ, և Մարքսն ու Էնգելսը դա բազմիցս նշել են։ Արվեստի նկատմամբ կապիտալիստական արտադրության թշնամության դրույթը պետք է հասկանալ այն իմաստով, որ գեղարվեստական նվաճումներն այդ հասարակության մեջ հնարավոր են միայն տիրապետող հարաբերություններին հակադրվելու, նրանց հակաժողովրդական ու հակամարդկային բնույթը քննադատելու ճանապարհով։ 19—20-րդ դարերի քննադատական ռեալիզմի և ռոմանտիզմի խոշորագույն երկերը այդ մտքի կենդանի ապացույցն են։

Ինչպես մարքսիստական ուսմունքն ընդհանրապես, այնպես էլ նրա հիմնադիրների գեղագիտական հայացքները տոգորված էին պատմական խոր լավատեսությամբ։ Ապագայում նրանք ոչ թե արվեստի անկում էին գուշակում, այլ նոր և աննախընթաց ծաղկում, որպես հասարակության սոցիալիստական հեղաշրջման և մասսաների մեջ գեղարվեստական տաղանդի արթնացման հետևանք։ Այդ նոր, սոցիալիստական արվեստը կարող է ծնվել արդեն կապիտալիստական հասարակարգի ընդերքում՝ բանվոր դասակարգի պայքարի և նրա հեղափոխական գաղափարախոսության անմիջական ազդեցության տակ։

Իզուր չէ, որ իրենց գործունեության հենց սկզբից Մարքսն ու Էնգելսը այնքան եռանդ ու ժամանակ են նվիրում գրական քաղաքականության հարցերին, առաջավոր գրողներին բանվոր դասակարգի և նրա պարտիայի հետ մերձեցնե-

լու գործին։ «Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին» ժողովածուի երկրորդ հատորում ընթերցողը բազմաթիվ նյութեր կգտնի, որոնք բնութագրում են պրոլետարիատի մեծ ուսուցիչների հարաբերությունները բանաստեղծներ Հայնեի, Հերվեգի, Ֆրայլիգրատի, Վեերթի և ուրիշների հետ։ Այդ հարաբերությունները միշտ խորապես սկզբունքային բնույթ ունեին և բախտորոշ դեր խաղացին նշված հեղինակների ստեղծագործական կենսագրության մեջ։ Մարքսի հետ անձնական ծանոթության և գաղափարական ազդեցության շնորհիվ քաղաքական պոեզիայի մի շարք հիանալի նմուշներ ստեղծեց Հայնեն, այդ թվում և հռչակավոր «Սիլեզյան ջուլհակները»։ Մարքսը և Էնգելսը մեծապես օգնեցին նաև Գ. Հերվեգին և Ֆ. Ֆրայլիգրատին ստեղծելու իրենց լավագույն երկերը բանվոր դասակարգի պայքարի թեմաներով։ Միաժամանակ նրանք քննադատում էին այդ գրողներին՝ անհատապաշտության, անարխիզմի, անսկզբունքային վարքագծի ամեն մի դրսևորման համար։ Գեորգ Վեերթը, որին Էնգելսը անվանել է «գերմանական պրոլետարիատի առաջին և ամենանշանավոր բանաստեղծը» (հ. II, էջ 443), իր կարճատև ստեղծագործական կյանքով ակնառու կերպով ցուցադրեց, թե գրողի առջև ինչպիսի հորիզոններ է բացում գաղափարական կապը հեղափոխական դասակարգի հետ։ Վեերթը Մարքսի և Էնգելսի անձնական բարեկամն էր։

Գիտական կոմունիզմի հիմնադիրները տարբեր առիթներով բնութագրել են նաև ապագայի սոցիալիստական արվեստը, որը, Էնգելսի խոսքերով ասած, պետք է «հավերժացնի այս նոր, պրոլետարական դարագլխի ծննդյան ժամը» (հ. I, էջ 411)։ Այդ արվեստը պետք է իր մեջ մարմնավորի մարդկության գեղարվեստական զարգացման լավագույն արդյունքները։

Սոցիալիստական արվեստի մեջ պետք է օրգանապես միաձուլվեն իրականության խորապես ճշմարտացի ըմբռնումը և պատկերման կենդանությունն ու բնականությունը, այն, ինչ անցյալում հաճախ հանդես է եկել տարանջատված կամ անհամաչափորեն։ Էնգելսը Լասսալին գրում էր. «Գաղափարական մեծ խորություն, գիտակցված պատմական իմաստ... լիակատար միաձուլումը շեքսպիրյան կենդանության ու գործողունակության հետ՝ հավանորեն կիրագործվի միայն ապագայում և գուցե բոլորովին էլ ոչ գերմանացիների ձեռքով։ Համենայն դեպս հենց այդ միաձուլման մեջ եմ ես տեսնում դրամայի ապագան» (հ. I, էջ 30)։ «Գիտակցված պատմական իմաստի» ներմուծումը գեղարվեստական ստեղծագործության մեջ պետք է լինի գրողի կողմից հասարակության զարգացման տենդենցների խոր ըմբռնման բնական հետևանքը։

Դեռ անցյալ դարի 40—50-ական թթ., կազմակերպված և ամբողջական պրոլետարական գրական հոսանքի բացակայության պայմաններում, Մարքսն ու Էնգելսը արծարծում էին պրոլետարիատի հետ կապված գրողների և բանվոր դասակարգի պարտիայի փոխհարաբերության հարցերը, մշակում էին գրականության նկատմամբ պարտիայի քաղաքականության հիմունքները։ Ֆրայլիգրատի և Հերվեգի հետ ունեցած նամակագրության մեջ նրանք բազմիցս ընդգծել են գրական աշխատանքում պարտիականության, այսինքն գիտակցված կոմունիստական գաղափարականության նշանակությունը։ Նրանց ազդեցության տակ Ֆրայլիգրատը հրաժարվեց արվեստի ապաքաղաքականության սկզբունքից, որ նա արտահայտել էր հայտնի տողերում՝ «Բանաստեղծը կանգնած է ավելի բարձր աշտարակի վրա, քան պարտիայի աշտարակը»։ Շուտով բանաստեղծը հրապարակեց իր հեղափոխական երգերի ժողովածուն, որը կրում



էր «Հավատի խորհրդանիշ» բնորոշ վերնագիրը։ Սակայն անցան տարիներ, և տարագրության մեջ գտնվող բանաստեղծը նորից հարեց պոեզիայի ապաքաղաքականության սկզբունքին, որը և դարձավ Մարքսի և Էնգելսի մի շարք խիստ ելույթների առիթը։ 1859—60 թթ. պոետին գրած նամակներում Մարքսը բացատրում էր, որ պարտիականության պահանջը ամենևին էլ չի հանգում որևէ միության կամ խմբագրության ձևականորեն պատկանելուն, այլ նշանակում է, ամենից առաջ, բանվոր դասակարգի պայքարին գիտակցաբար ծառայելու պատրաստակամություն։ «Պարտիա ասելով ես հասկանում եմ պատմական մեծ իմաստով պարտիա»,— գրում էր Մարքսը (հ. II, էջ 428)։

Մարքսն ու Էնգելսը սնանկ էին համարում այն ստեղծագործողներին, որոնք փորձում էին ներկայանալ իբրև հասարակական պայքարից կտրված «զուտ գրական շարժման» մասնակիցներ։ «Ճշմարիտ սոցիալիզմի» բանաստեղծների ձախողումները նրանք կապում էին և ա՛յն բանի հետ, որ այդ գրական շարժումը «ծայր է առել բուն պարտիական շահերից դուրս և այժմ, կոմունիստական պարտիայի ձևավորումից հետո, ցանկանում է շարունակել իր գոյությունը նրան հակառակ» (հ. II, էջ 113—114)։ Նույնքան անհաշտ էին նրանք նաև հասարակական պայքարի թեմաները չարաշահելու, «իրենց գործերի գրական արվեստի պակասը քաղաքական ակնարկներով լրացնելու» փաստերի նկատմամբ, որոնք նկատվում են,— ասում էին Մարքսն ու Էնգելսը,— «առանձնապես անտաղանդ գրողների շրջանում» (հ. I, էջ 10)։ Անողոքաբար դատապարտել են նրանք գրական կարիերիզմի, անհատապաշտության և շահամոլության երևույթները։ «Գրողը,— ասում էր Մարքսը վաղ շրջանի մի հոդվածում,— իհարկե, պետք է վաստակ անի, որպեսզի հնարավորություն ունենա իր գոյությունը պահպանելու և գրելու, բայց նա ոչ մի դեպքում չպետք է գոյություն ունենա ու գրի այն բանի համար, որպեսզի վաստակ անի... Պոետը դադարում է պոետ լինելուց, երբ պոեզիան նրա համար դառնում է միջոց» (հ. II, էջ 548)։

Գրական ստեղծագործության գաղափարականության և պարտիականության սկզբունքները բխում են մարքսիստական ուսմունքի, իբրև ակտիվ, ռևոլյուցիոն տեսության էությունից։ Մարքսի և Էնգելսի այդ մտքերը 20-րդ դարի սկզբի նոր պատմական պայմաններում, դասակարգային պայքարի ամենալարված շրջանում, խորացվեցին ու զարգացվեցին Վ. Ի. Լենինի կողմից՝ գրականության պարտիականության նրա ուսմունքի մեջ։

***

Տեսական և պատմական վիթխարի նյութ է պարունակում «Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին» երկհատոր ժողովածուն։ Կարդալով այն, ոչ միայն հաղորդակից ես լինում մեծ մտածողների խորիմաստ դատողություններին ու դրույթներին, այլև կենդանի կերպով զգում ես գեղարվեստական երկերի ու կերպարների այն ամբողջ լայնատարած ու բազմագունեղ աշխարհը, որը շրջապատել է նրանց՝ կյանքը վերափոխելու համար մղած տիտանական պայքարի ողջ ընթացքում։ Մարքսը և Էնգելսը տվեցին մարդկության գեղարվեստական զարգացման ամենաբարդ հարցերի մեջ կողմնորոշվելու հուսալի բանալին։ Դա է նրանց գեղագիտական ժառանգության անանցանելի արդիական նշանակությունը ինչպես արվեստի տեսության, այնպես էլ բազմամիլիոն ընթերցողի համար։

---

# ՄԱՐԴՈՒ ՊՐՈԲԼԵՄԸ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Գ. ԱՍԱՏՐՅԱՆ

«Եթե մենք ընտրել ենք այնպիսի մասնագիտություն, որի շրջանակներում ամենից շատ կարող ենք օգտակար լինել մարդկությանը, ապա մենք չենք կորանա նրա ծանրության տակ, որովհետև դա զոհաբերություն է հանուն բոլորի. այն ժամանակ մենք կզգանք ոչ թե խղճուկ, էգոիստական ուրախություն, այլ մեր երջանկությունը կպատկանի միլիոններին, մեր գործերն այն ժամանակ կապրեն խաղաղ, բայց հավերժ գործուն կյանքով, իսկ մեր աճյունի վրա կթափվեն ազնիվ մարդկանց տաք արցունքները»:

К. ՄԱՐՔՍ

*Մարդու, նրա ազատության, հոգևոր ու ֆիզիկական ուժերի ազատ ու անկաշկանդ զարգացման պրոբլեմը փիլիսոփայության հնագույն, սակայն հավերժ նոր ու կենդանի պրոբլեմներից է և արժանացել է բոլոր ժամանակների ու բոլոր ժողովուրդների փիլիսոփաների ու սոցիոլոգների սևեռուն ուշադրությանը: Մարդկության պատմական զարգացման ընթացքում հետաքրքրությունն այդ պրոբլեմի նկատմամբ ոչ միայն չի խամրել, այլ այն գնալով ավելի ու ավելի է դարձել փիլիսոփայության կենտրոնական հարցերից մեկը:*

*Այդ պրոբլեմն արտակարգ կարևորություն ու ակտուալություն է ստանում հատկապես մեր դարաշրջանում՝ պատերազմի և ռեակցիայի ուժերի դեմ ռևոլյուցիայի ու պրոգրեսի ուժերի պայքարի և հաղթանակների դարաշրջանում, դարաշրջան, որի գլխավոր բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին:*

*Մեր օրերում այդ պրոբլեմի արտակարգ ակտուալությունն ամենից առաջ պայմանավորված է ոչ միայն այն օբյեկտիվ հանգամանքով, որ պատմական բոլոր մեծագործությունների, հին աշխարհի գրոհի ու նոր աշխարհի կառուցման սուբյեկտը, նրա կրողը աշխատավոր մարդն է, այլև նրանով, որ պատմության մեջ առաջին անգամ կերտվում է մի հասարակություն, որի կենտրոնում կանգնած է մարդը, որի բուն նպատակը մարդու գոյության ու ստեղծագործության համար իսկական մարդկային պայմանների ստեղծումն է, մարդու ազատության ապահովումը, մի հասարակություն, որի գոյության ու զարգացման նշանաբանն է՝* ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության:

*Մինչմարքսյան փիլիսոփայական սիստեմներից ոչ մեկին չհաջողվեց ճիշտ կերպով դնել և լուծել մարդու էության, նրա ազատության հարցը: Նրանց չհաջողվեց այդ անել, որովհետև մարդու, մարդկային հարաբերությունների ու մարդկային հասարակության վերաբերյալ նրանց հայացքներում ու պատկերացումներում իշխում էր իդեալիզմը, որովհետև նրանց ելակետը պատմության իդեալիստական ըմբռնումն էր:*

*Սոցիալիզմի վերածումը գիտության և, հատկապես, Մարքսի և Էնգելսի կողմից պատմության մատերիալիստական ըմբռնման հայտնագործումը վճռական ազդեցություն ունեցան հումանիզմի մարքսիստական կոնցեպցիայի ձևավորման վրա, հնարավորություն ընձեռեցին միանգամայն նոր ձևով դնելու ու լուծելու մարդու պրոբլեմը:*

*Մարքսիզմը քննադատաբար յուրացրեց անցյալի հումանիստական մտքի նվաճումները, ժառանգեց նրա սոցիալիստական ու դեմոկրատական տրադիցիաները և դրանք զարգացրեց ու որակական միանգամայն նոր աստիճանի բարձրացրեց: Նա կատարյալ հեղաշրջում առաջացրեց ինչպես մարդկային հասարակության, այնպես էլ մարդու էության մասին մինչ այդ իշխող հայացքների մեջ, առաջ քաշեց մարդու բնության, աշխարհում նրա տեղի, նրա իրական ազատագրության պայմանների և ուղիների մասին սկզբունքորեն նոր տեսակետ:*

*Այն տոգորված է պատմական մեծ օպտիմիզմով, մարդկության լավագույն ապագայի, հասարակության ու բնության կույր ուժերի դեմ նրա անխուսափելի հաղթանակի նկատմամբ խոր հավատով: Այդ պատճառով էլ մարքսիզմը փիլիսոփայական բոլոր սիստեմներից ամենից օպտիմիստականն է ու ամենից կենսահաստատը: Այդ օպտիմիզմը, ընդ որում, ելնում է ոչ թե վերացական ցանկությունից, ոչ թե մարդկային կոչմանն արժանի գոյության պայմանների ստեղծման անհրաժեշտության զուտ իդեալական, բարոյական պահանջի թելադրանքներից, այլ երբեք չի կտրվում իրական, երկրային հողից, ամուր կերպով հենվում է հասարակության զարգացման օրենքների ու օրինաչափությունների խոր իմացության վրա:*

*Այն լրիվին ազատ է իդեալիզմից ու միստիցիզմից և խորապես թշնամի է դրանց: Այն իրականության ճշմարիտ փիլիսոփայություն է, ոչ միայն իրականության բացատրության, այլև նրա ռևոլյուցիոն վերափոխման փիլիսոփայություն: Այն իրական պատմական մարդու՝ բնության այդ տիրոջ, փիլիսոփայություն է, մարդու էության ու նրա ազատությունների իսկական հիմն:*

*Մարքսիստական մատերիալիզմը, բնագիտության տվյալներին միանգամայն համապատասխան, գտնում է, որ մարդը ոչ թե աստվածային արարչագործություն է, այլ բնության երկարատև էվոլյուցիայի արդյունք, նրա ամենավեհ ստեղծագործությունը, նրա զարգացման պսակը:*

*Մարդու, որպես հասարակական էակի, ձևավորման ու զարգացման գործին անգնահատելի ծառայություն մատուցեց աշխատանքը՝ մարդու պրակտիկ գործունեությունը: Աշխատանքը ոչ միայն կապկի կենդանակերպ մարմինը կերպարանափոխեց ու դարձրեց կատարյալ մարդկային մարմին, այլև կատարելության բարձր աստիճանի հասցրեց նրա օրգաններն ու «մարդկայնացրեց»*

նրա զգայարանները, նրա մեջ վառեց բանականության հավերժորեն բոցկլտացող ջահը և նրան պարգևեց աշխարհի ամենամեծ հրաշալիքը՝ լեզուն։ Մարդուն օժտելով այն ամենով, որոնց շնորհիվ նա բարձրացավ արտաքին բնությունից, այդ թվում կենդանիների հոտից, աշխատանքը հիմնովին փոխեց մարդու էությունը, «մարդկայնացրեց» նրան այդ բառի ամենալեն իմաստով։ Մարքսը մի առիթով նկատում է, որ «ամբողջ այսպես կոչված համաշխարհային պատմությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդկային աշխատանքի միջոցով մարդու ծննդյան պրոցես» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1955, стр. 598)։

Մարդը մարդ դարձավ ակտիվ, ստեղծարար աշխատանքի միջոցով բնությունը վերափոխելով ու մարդկային միջավայր ստեղծելով միայն։ Աշխատանքի միջոցով միայն մարդը կարողացավ ավելի ու ավելի մեծ չափերով իրեն ենթարկել բնությունը, իր դրոշմը դնել նրա վրա, «մարդկայնացնել» արտաքին աշխարհը՝ այն դարձնելով իր «անօրգանական մարմինը»։ Աշխատանքի միջոցով մարդն ստեղծեց քաղաքակրթության օրրաններ՝ ժամանակակից քաղաքներ ու գյուղեր, գործարաններ ու ֆաբրիկաներ, կամուրջներ ու երկաթուղիներ, ջրանցքներ ու իռիգացիոն հզոր սիստեմներ, և այժմ էլ ամենահանդուգն արարածի վճռականությամբ դնում է տիեզերքի նվաճման հիմքերը։ Մարդկային աշխատանքն ստեղծեց անթիվ ու անհամար հոգևոր արժեքներ։ Այդ բոլորի հետ մեկտեղ այն վճռականապես նպաստեց դրանց կերտողի՝ մարդու ֆիզիկական ու հոգևոր կերպարի ձևավորմանն ու կատարելագործմանը։

Մի խոսքով, աշխարհում գոյություն ունեցող ամեն լավի համար մենք պարտական ենք աշխատանքին։ Խորապես իրավացի էր Մ. Գորկին, երբ գրում էր. «Կյանքի բոլոր գաղտնիքները, նրա բոլոր հանելուկները լուծում է մարդկանց աշխատանքային էներգիան» (М. Горький, Соб. соч., т. 26, стр. 137)։

Սակայն մարդկային աշխատանքն իր այդ հրաշագործ հատկություններով հանդերձ, արտադրության միջոցների մասնավոր սեփականության և հակամարտ դասակարգերի բաժանված հասարակության պայմաններում դարձավ բռնի, հարկադրական գործունեություն։ Աշխատողի համար այն կորցրեց ստեղծագործական ակտի նշանակությունը, զրկվեց իմաստալի բովանդակությունից, դարձավ սոսկ նրա գոյության պահպանման միջոց, նրա էությանը չպատկանող, օտարված ու օտարացնող գործունեություն։ Եթե մեզ հայտնի ամենաբարձր հաճույքը, գրում է Էնգելսը, հոժարակամ արգասավոր գործունեությունն է, ապա հարկադրական աշխատանքն ամենից դժնդակ, ստորացուցիչ տանջանքն է հանդիսանում։

Աշխատանքը դադարեց աշխատանքի նկատմամբ մարդու պահանջի բավարարման միջոց լինելուց և դարձավ մարդկային ուրիշ պահանջմունքների բավարարման միջոց, բայց ոչ երբեք աշխատանքի պահանջի բավարարում։ Այսպիսով ծագեց խոր հակասություն աշխատանքի բուն էության, նրա կոչման ու սոցիալական դերի և հակամարտ դասակարգերի բաժանված հասարակությունում նրա դրսևորման, նրա ռեալիզացիայի կոնկրետ ակտի միջև։ Արտադրության կապիտալիստական եղանակը ոչ միայն չլուծեց ու չհաղթահարեց այդ բախումը, այլև ավելի խորացրեց այն՝ մարդու ու մարդկային հարաբերությունների անմարդկայնացումը հասցնելով ծայր աստիճանի։

Աշխատանքի պրոցեսի օտարումը ծնում է բանվորի՝ նրա կողմից ստեղծված արդյունքի օտարում։ Բանվորի օտարումն իր արդյունքի հանդեպ



հանգեցնում է ոչ միայն նրան, որ այդ արդյունքը ձեռք է բերում ուրույն գոյություն, այլև նրան, որ այն դիմակայվում է բանվորին, որպես խորթ ու թշնամական ուժ և ճնշում նրան։ Բանվորն ու նրա կողմից արտադրվող իրը շահագործողական հասարակարգում գտնվում են հակադարձ հարաբերության, ուղղակի բևեռային հակադրության մեջ։ Ինչքան շատ է արտադրում նա, ինչքան շատ են աճում նրա կողմից ստեղծված արդյունքի հզորությունն ու չափերը, այնքան ավելի շատ է աղքատանում բանվորն ինքը։ Որքան շատ ապրանքներ է ստեղծում նա, այնքան ավելի էժան ապրանք է դառնում ինքը։ Որքան ավելի շատ արժեքներ է ստեղծում նա, այնքան ավելի շատ է զրկվում արժեքից ու արժանապատվությունից։ Բանվորը որքան ավելի շատ է իրեն տանջում աշխատանքում, այնքան ավելի է հզորանում նրա կողմից իր դեմ ստեղծված, իրեն օտար առարկայական աշխարհը, այնքան ավելի քիչ իրեր են նրան պատկանում։ Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, որքան ավելի լավ է ձևավորված նրա արդյունքը, այնքան ավելի է այլանդակված բանվորը, ինչքան ավելի կուլտուրական է նրա կողմից ստեղծված իրը, այնքան ավելի շատ է նա նման բարբարոսի, որքան ավելի բովանդակալից է նրա կողմից կատարվող աշխատանքը, այնքան ավելի մեծ մտավոր ամայացման է ենթարկվում նա ինքը։

Բանվորն իրի մեջ է դնում իր կյանքը, սակայն այդ կյանքն այլևս չի պատկանում նրան, այն արդեն պատկանում է ուրիշին, աշխատանքի պայմանների տիրոջը՝ կապիտալի տիրոջը։ Բանվորի ստեղծած արդյունքը նրա տիրոջ ձեռքին դառնում է կապիտալ, բանվորի վրա իշխելու, նրան ստրկացնելու նյութական պայման։ Բանվորն իր աշխատանքով ստեղծում է ուրիշի հարստություն, կապիտալ, որով ավելի է հզորացնում իր դեմ հանդիման կանգնած իրերի անմարդկային աշխարհը, որպեսզի վերջինս նոր ուժով հարձակվի իր վրա ու նոր ուժով հարստահարի իրեն։ Այս ամենից հետո, Մարքսի մոտ կարդում ենք. Մարդը դադարեց մարդու ստրուկը լինելուց և դարձավ իրի ստրուկը։ Մարդկային հարաբերությունների աղավաղումն ավարտված է. ժամանակակից առևտրական աշխարհի ստրկությունը... կրում է ավելի անմարդկային ու համապարփակ բնույթ, քան ֆեոդալական ժամանակվա ճորտատիրական իրավունքը (К. Маркс и Ф. Энгельс, Соч., 6. 2, издание втэрое стр. 605).

Մարքսիզմի հիմնադիրները ոչ միայն բացահայտեցին այն խայտառակ դրության պատճառները, որի մեջ գտնվում է աշխատավոր մարդը կապիտալիզմի պայմաններում, այլև ցույց տվեցին կապիտալի անմարդկային տիրապետությունից աշխատավորների ազատագրության իրական ճանապարհը։ Աշխատավոր մարդկությանը ծառայելու, նրան իրական երջանկություն բերելու, անհատի ազատ ու անկաշկանդ զարգացման համար մարդկային պայմանների ստեղծման գաղափարը կարմիր թելի պես անցնում է մարքսիզմի հիմնադիրների բոլոր ստեղծագործությունների, մարքսիստական ամբողջ ուսմունքի միջով։ Այդ ուսմունքի տեսակետից աշխարհում չկա մարդուց թանկ ու բարձր բան. «Ռադիկալ լինել,— գրում է Մարքսը,— նշանակում է հասկանալ իրի արմատը։ Սակայն մարդու համար արմատն ինքը մարդն է»։ Կրոնի քննադատությունը, գրում է Մարքսը մի այլ առիթով, ավարտվում է այն ուսմունքով, ըստ որի՝ մարդու համար բարձրագույն էակը մարդն է։

Սակայն հուշակելով այդ թեզը, մարքսիզմի հիմնադիրներն աչքի առաջ

ունեին ոչ թե աբստրակտ, երկնային կյանքով ապրող մարդուն, այլ պատմականորեն կոնկրետ, ինդիվիդուալ մարդուն, աշխատավորին։

Ըստ արժանվույն գնահատելով այն բարձր ծառայությունը, որ փիլիսոփայությանը մատուցեց իրենց հանճարեղ նախորդներից մեկը՝ բուրժուական ականավոր հումանիստ Ֆոյերբախը՝ «մարդուն դնելով հին խլամի, այդ թվում անսահման ինքնագիտակցության տեղը» (տե՛ս Ф. Меринг, К. Маркс и Ф. Энгельс — Создатели научного коммунизма, М., 1960, стр. 96), Մարքսն ու Էնգելսը միաժամանակ անխնա քննադատության ենթարկեցին Ֆոյերբախի աբստրակտ հումանիզմը, նրա մետաֆիզիկական-նատուրալիստական անթրոպոլոգիան, մարդու՝ նրա վերացական ըմբռնումը, նրան հասարակությունից ու դասակարգերից դուրս քննելու փորձերը։ Նրանք կտրականապես մերժեցին մարդուն իբրև «կրավորական» և «զգայական», պասսիվ էակ ներկայացնելու Ֆոյերբախի միտումը, մարդ, որը թեև իր բովանդակությունը քաղում է բնությունից, սակայն ունակ չէ վերափոխելու ինչպես միջավայրը, առարկայական աշխարհը, այնպես էլ իր սեփական բնությունը։ Այսպիսով Մարքսն ու Էնգելսը մարդու առարկայական պրակտիկ գործունեության հիման վրա հանգեցին պատմության գիտական մատերիալիստական ըմբռնմանը։

Ի տարբերություն Ֆոյերբախի, որը մարդուն դիտում էր իբրև վերացական, «աշխարհում ինչ-որ տեղ ծվարած» էակ, Մարքսը մարդուն քննում է կոնկրետ, պատմականորեն և նրան բնորոշում որպես կոնկրետ հանգամանքների ու հարաբերությունների ծնունդ ու կրող, որպես հասարակական հարաբերությունների ամբողջություն։ Եթե մարդը մարդ դարձավ աշխատանքի շնորհիվ, բնությունը վերափոխելով ու մարդկային միջավայր ստեղծելով միայն, ապա նրա էության, նրա բնության ճիշտ ըմբռնման առաջին ու ամենավճռական պայմանը, նրա ելակետն ու բանալին պետք է դառնա այդ պրոցեսի, նյութական արտադրության պրոցեսի վերլուծությունը։ Իբրև ելակետ ունենալով նյութական բարիքների արտադրությունը, Մարքսը ցույց տվեց, որ այն վերջին հաշվով պայմանավորում է մարդու գործունեության մյուս բոլոր ձևերը, որոնք միշտ և բոլոր պայմաններում կրում են հասարակական բնույթ։

Մարդն ապրում է պատմականորեն ձևավորված որոշակի պայմաններում, հասարակության մեջ, որի հետևանքով էլ նա հասարակական էակ է, հասարակական հարաբերությունների ամբողջություն և մարդկային հասարակության զարգացման պրոցեսը՝ պատմական մարդու զարգացման պրոցես է, մարդու, որպես հասարակական էակի, պատմական զարգացման պրոցես։ Նույնիսկ այն ժամանակ, գրում է Մարքսը, երբ ես զբաղված եմ գիտական գործունեությամբ, նույնիսկ այդ դեպքում ես զբաղված եմ հասարակական գործունեությամբ, որովհետև ես գործում եմ իբրև մարդ։ Ինձ ոչ միայն տրված է, իբրև հասարակական արդյունք, իմ գործունեության համար նյութ, նույնիսկ և ինքը՝ լեզուն, որով աշխատում է մտածողը, այլև իմ սեփական կեցությունը հասարակական գործունեություն է» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, стр. 590)։ Աշխարհի նկատմամբ մարդու հարաբերաձևերից յուրաքանչյուրը՝ տեսողությունը, լսողությունը, մտածողությունը, մի խոսքով նրա անհատականության բոլոր օրգանները գոյություն ունեն որպես հասարակական օրգաններ, և ինքը մարդն էլ գոյություն ունի իբրև հասարակական էակ։

Եթե մարդը հասարակական էակ է, հասարակական հարաբերությունների ամբողջություն, ապա նրա իրական ազատագրության հարցը պետք է կապել այն



հասարակական հարաբերությունների ոչնչացման հետ, որոնց մեջ մարդիկ ապրում են։ Մարքսը կտրականապես մերժեց դասակարգային հակադրությունները «մարդկայնության» համընդհանուր գաղափարի մեջ թաղելու փորձերը։ Նա խստագույն քննադատության ենթարկեց գերմանական «ճշմարիտ սոցիալիզմի» տեսաբաններին, նրանց կողմից պրոլետարիատի շահերի տեղ առհասարակ մարդու շահերը պաշտպանելու համար, մարդ, որը ոչ մի դասակարգի չի պատկանում և, Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, ապրում է ոչ թե իրականության մեջ, այլ փիլիսոփայական երևակայության մշուշապատ երկնքում։ Այդ պատճառով էլ մարքսիզմի տեսակետից աբստրակտ, դասակարգային բովանդակությունից զուրկ հումանիզմը, հումանիզմն «ընդհանրապես», մարդու ազատությունն «ընդհանրապես» պատկանում են պատրանքների աշխարհին և վարագուրում են աշխատավորների ու շահագործողների դրության միջև եղած խոր անտագոնիզմը։

Իրականության մեջ սկզբունքորեն տարբեր են անհատի ազատության պայմանները շահագործվողի ու շահագործողի, բանվորի ու կապիտալիստի համար, և, հետևաբար, տարբեր են նաև նրանց ազատագրության ու բազմակողմանի զարգացման ուղիները։

Աշխատավորների ու շահագործողների շահերի, նրանց դրության միջև եղած խոր անտագոնիզմն էլ կազմում է այն իրական սոցիալական հողը, որից ծնունդ է առնում իրենց ազատության ու մարդկային արժանապատվության համար աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը։ Կապիտալի մութ ուժերի դեմ մղած դասակարգային սուր պայքարում բանվոր դասակարգը լուսավորվում է, անցնում իր պատմական էվոլյուցիայի փուլերը, «իր մեջ դասակարգից» դառնում «դասակարգ իր համար»։ Նա ճանաչում է իր թշնամուն՝ կապիտալիստների դասակարգին, որը նրան դրել է գոյության անմարդկային պայմանների մեջ, զրկել մարդկային արժանապատվությունից։ Նա ըմբոստանում է այդ խորթ, անմարդկային հասարակության դեմ և այդ ընդվզումի ու շահագործողների դեմ մղվող դասակարգային պայքարի մեջ գտնում իր մարդկային արժանապատվությունը պահպանելու միակ միջոցը։

Բանվորները, գրում է Էնգելսը, որոնց հետ վարվում են որպես անասունների հետ, կամ իրոք անասնանում են, կամ իրենց մարդկային արժանապատվության զգացումն ու գիտակցությունը կարողանում են պահպանել միայն շնորհիվ այն հրաբորբոք ատելության ու ներքին անդադրում զայրույթի, որ նրանք տածում են դեպի իշխանակիր բուրժուազիան։ Նրանք մարդիկ են, քանի դեռ ցասումով են համակված ընդդեմ շահագործողների, նրանք անասուններ են դառնում, հենց որ հնազանդորեն տանում են իրենց վրա դրված լուծը։ Կապիտալիզմի պայմաններում բանվորը չունի իր մարդկային զգացումների դրսևորման համար ուրիշ ոչ մի ասպարեզ, բացի ռևոլյուցիայից, ընդվզումից, ուստի «միանգամայն բնական է, որ հենց այդ ընդվզման մեջ պետք է բանվորը հայտնաբերի իր ամենանվիրական, ամենաազնիվ, ամենամարդկային գծերը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., 6. 2, стр. 438).

Ոչ ոք մեղավոր չէ այն բանում, գրում է Լենինը, որ նա ստրուկ է ծնվում։ Սակայն այն ստրուկը, որը ոչ միայն զենքը ձեռքին չի պայքարում հանուն իր ազատագրության, հանուն իր մարդկային արժանապատվության, այլև արդարացնում ու գովերգում է իր ստրկական վիճակը, «զայրույթի, արհամարհանքի ու զզվանքի օրինական զգացում առաջ բերող քծնողի ու գյադայի մեկն է»

(Վ. Ի. Լենին, երկեր, հատոր 21, էջ 120)։ Լենինը կատարյալստրուկ էր համարում նրան, ով չգիտակցելով իր ստրկական վիճակը՝ իր գոյությունը քարշ է տալիս «անգիտակցական ու անբարբառ ստրկական կյանքի մեջ»։ Ընդհակառակը, իր ստրկությունը գիտակցած և իր այդ դրության դեմ պայքարի ելած ստրուկին Լենինն անվանում էր իսկական ռևոլյուցիոներ։

Այսպիսով, աշխատավոր մարդու մարդկային արժանապատվության պաշտպանման, նրա մարդկային զգացմունքների դրսևորման, աշխատավորների իրական ազատագրության հարցը մարքսիզմի կլասիկները կապեցին գոյություն ունեցող կարգերի դեմ աշխատավորների ըմբոստացման, ռևոլյուցիայի և այդ ճանապարհով գոյություն ունեցող իրականության տապալման հետ։ Հին հասարակական հարաբերությունների տապալման, մարդու կողմից մարդու շահագործման վերացման և հումանիստական իդեալների իրականացման հարցը մարքսիզմը մեկընդմիշտ կապեց պրոլետարական ռևոլյուցիայի ու արտադրության միջոցների մասնավոր սեփականության ոչնչացման հետ։

Մասնավոր սեփականության գաղափարը ոչնչացնելու համար, գրում է Մարքսը, բավական է կոմունիզմի իդեան, այնինչ ռեալ իրականության մեջ մասնավոր սեփականության ոչնչացման համար անհրաժեշտ է իրական կոմունիստական գործողություն, ռևոլյուցիա։ Միայն ռևոլյուցիոն պայքարի շնորհիվ են կյանքում մարմնավորվում մարդկության բազմադարյան պատմության ընթացքում մշակված հումանիստական իդեալները, միայն այդ ճանապարհով են աշխատավորները ազատագրվում սոցիալական ամեն մի ճնշումից ու նվաստացումից։ Միայն պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի միջոցով է փիլիսոփայությունը թափանցում աշխատավորական լայն մասսաների շրջանները, հայեցողական թեորիայից, ինչպիսին էր այն մինչև մարքսիզմի պատմական ասպարեզ գալը, դառնում մարդկության լավագույն իդեալների իրականացման համար պայքարի ելած ռևոլյուցիոն բանվոր դասակարգի հոգևոր զենքը։

Սակայն այն հանգամանքի ուժով, որ պրոլետարիատը պատմական պրոգրեսի կրողն է, բոլոր ճնշվածների, ամբողջ մարդկության շահերի իսկական արտահայտիչը, նրան է վիճակված սոցիալական ու ազգային ամեն մի ճնշումից ու հարստահարումից բոլոր մարդկանց ազատագրելու վեհ ու առաքինի միսիան, նրա «էմանսիպացիան իր մեջ պարունակում է համամարդկային էմանսիպացիա»։

Պրոլետարական ռևոլյուցիան ոչնչացնում է մասնավոր սեփականությունը։ Նրա ոչնչացման հետ չքանում են օտարման բոլոր ձևերը, և իրականանում է մարդու վերադարձը «կրոնից, ընտանիքից, պետությունից և այլնից դեպի իր մարդկային, այսինքն՝ հասարակական կեցությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, стр. 589)։ Նա մարդուն է վերադարձնում «մարդկային աշխարհը, մարդկային հարաբերությունները» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. I, стр. 406)։

«Մարդկային էմանսիպացիան», հասարակական հարաբերությունների արմատական վերափոխումը սոցիալիստական հիմքի վրա իրենից ներկայացնում է մարդու բազմակողմանի ազատագրում, մարդկային բոլոր զգայությունների ու հատկությունների էմանսիպացիա։

Մասնավոր սեփականության դրական վերացման ու օտարման հաղթահարման շնորհիվ մարդը դառնում է իսկական հասարակական էակ, նրա



էությունը ստանում է ադեկվատ արտահայտություն և այլևս չի օտարվում փողի, ապրանքի, մասնավոր սեփականության ձևով։ Մասնավոր սեփականության վերացումն ու հասարակական սեփականության ըստ ամենայնի զարգացումը նյութական նախադրյալներ է ստեղծում անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման համար՝ այդ բառի ամենախսկական իմաստով։

Աշխատանքը վերստին ձեռք է բերում սպեցիֆիկ մարդկային նշանակություն։ Նա դադարում է սոսկ մարդու բիոլոգիական գոյության պահպանման միջոց լինելուց և գնալով ավելի ու ավելի է ձեռք բերում ստեղծագործական այնպիսի ակտի նշանակություն, որը կազմում է մարդու բուն էությունը։

Մարքսիզմը գտնում է, որ բազմակողմանիորեն զարգացած, լիարժեք մարդու մասին կարելի կլինի խոսել այն ժամանակ միայն, երբ աշխատանքը կդադարի հարկադրական գործունեություն լինելուց և կկրի ազատ ստեղծագործության բնույթ։ Այսպիսի աշխատանքի պրոցեսում կբացահայտվեն ու ներդաշնակորեն կզարգանան մարդկանց բոլոր ձիրքերն ու ընդունակությունները։ Իսկական ազատությունը սկսվում է այնտեղ, որտեղ դադարում է կարիքի ու արտաքին նպատակահարմարության կողմից թելադրված աշխատանքը։

Կոմունիստական աշխատանքը բառիս բուն իմաստով ազատ աշխատանք է։ Միայն նրա մեջ է անհատը ձեռք բերում իսկական ազատություն, որը հանդիսանում է նրա բոլոր ազատությունների հիմքը։ Մարդու այդ ազատությունը աշխատանքի մեջ սկսվում է կոմունիստական հասարակության առաջին փուլում՝ սոցիալիզմի պայմաններում և լիակատար ծաղկման է հասնում կոմունիզմի հաղթանակի հետ՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» սկզբունքի հիման վրա։

Կոմունիստական հասարակությունը չի նշանակում ազատություն աշխատանքից, հրաժարումն նրանից։ Ընդհակառակը, այն աշխատավորների հասարակություն է և ամբողջովին հիմնվում է աշխատանքի վրա։ Ամբողջ հարցը հանգում է այն բանին, որ կոմունիզմի պայմաններում լիովին փոխվում է աշխատանքի բնույթը, նրա էությունը։ Հարստահարման միջոցից, ինչպիսին է այն կապիտալիզմի ժամանակ, դառնում է մարդկանց ազատագրության միջոց, նրանց մտավոր ու ֆիզիկական ընդունակությունների ազատ ու անկաշկանդ զարգացման պայման, մարդկային առողջ օրգանիզմի կենսական պահանջ։

Հենց կոմունիստական աշխատանքն էլ հանդիսանում է ազատության բարձրագույն դրսևորումը, անհատի ու հասարակության իսկական ծաղկման արտահայտություն։ Այն հանդես է գալիս իբրև մարդկային գործունեության բարձրագույն ձև և նրան պատճառում է մեծագույն հաճույք ու բավականություն, որպես նրա հոգևոր ուժերի ու ընդունակությունների դրսևորման միջոց։

Բուրժուական քննադատները պնդում են, թե իբր մարքսիզմը չի ընդունում ոչ մի այլ բան, բացի մարդու նյութական պահանջմունքներից։ Հոգ տանելով մարդու նյութական պահանջմունքների բավարարման մասին, ասում են նրանք, կոմունիստները մոռացության են տալիս մարդկային մնացած պահանջմունքները։ Իրականում նման պնդումները ոչ այլ ինչ են, եթե ոչ զրպարտանք մարքսիզմի ու կոմունիզմի հասցեին։ Հակառակ այդ կեղծ պնդումների, մարդկային անհատն ու նրա ճակատագիրը գտնվում են մարքսիստական աշխարհայացքի կենտրոնում, կոմունիստական հասարակության կառուցման առաջին բնագծում։ Փիլիսոփայական սիստեմներից ոչ մեկն այնքան բարձր աստիճանի չհասցրեց մարդու ներքնաշխարհի, նրա ֆանտազիայի ու մտքի թռիչքների,

հոգևոր ուժերի ու պոտենցիաների ըստ ամենայնի զարգացման հարցը, այնպես բազմակողմանիորեն ու խոր կերպով չբացահայտեց դրանց նյութական ու սոցիալական հիմքերը, ինչպես մարքսիստական փիլիսոփայությունը։

Արդեն սոցիալիզմն աշխատավորներին բերում է իրական ազատություններ ու իրավունքներ, մեկընդմիշտ ազատում նրանց գործազրկությունից ու կապիտալիզմի պայմաններում մարդուն հետապնդող վաղվա օրվա նկատմամբ մշտական վախից։ Սոցիալիզմը լիկվիդացնում է աղքատությունից, սովից, ռասայական ու ազգային ճնշումից ծնունդ առած՝ աշխատավորների թշվառությունները ու տառապանքները։

Մարքսիզմը երբեք մարդուն չի դիտում որպես «տնտեսական էակ», որի նպատակը հարստության կուտակումն է։ Եվ եթե մարդու մասին խոսելիս նա իր ուշադրությունը սևեռում է նրա սոցիալ-տնտեսական էության վրա, ապա այդ արվում է ամենևին ոչ այն բանի համար, որպեսզի մոռացության տրվեն նրա ներքնաշխարհը, նրա բազմակողմանի ու հարուստ հոգևոր պոտենցիաները, այլ այն բանի համար, որպեսզի բացահայտի մարդու ոչ թե երևակայական, պատրանքային, ֆանտաստիկ էությունը, այլ նրա իրական էությունը և այդ հիմքի վրա ցույց տա իսկական մարդկային բոլոր պոտենցիաների ու հոգևոր ուժերի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման ուղին։

Մարքսիզմը անհատի ազատագրության ու հումանիստական իդեալների իրականացման հարցը կապեց մասսայի ազատագրության հարցի հետ։ Անհատը հասարակություն կոչվող սոցիալական ամբողջի մի մասն է, ուստի և նրա ազատությունը չի կարելի որոնել այլ տեղ, քան բուն այդ հասարակական ամբողջի՝ մասսայի ազատագրության մեջ։ Այդ պատճառով էլ մարքսիզմը ելնում է այն բանից, որ «Միայն կոլեկտիվում է անհատը ստանում իր հակումները զարգացնելու հնարավորություն, և, հետևաբար, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Сочинение, том 3, стр. 75).

Կոմունիստական հասարակությունը ոչ մի ընդհանուր բան չունի մարդկանց անհատականությունների ոչնչացման ու համահարթման, անհատի այսպես կոչված «ստանդարտիզացիայի», «միջին անհատի» գոյացման, հօգուտ կոլեկտիվի անհատի նվաստացման սպեկուլյատիվ գաղափարների հետ։ Ընդհակառակը, կոլեկտիվի հարուստ ու լիարյուն կյանքը ենթադրում է այն կազմող անհատների անհատականությունների բազմազանություն ու հարստություն։ Ինքը «յուրաքանչյուրից ըստ իր ընդունակությունների» սկզբունքը ելնում է ընդունակությունների ու անհատականությունների տարբերությունից ու բազմազանությունից։ Ամենազարգացած սոցիալիստական հասարակությունն անգամ ոչ միայն չի ջնջում մարդկանց անհատականությունների տարբերությունը, այլև հանդիսանում է անհատի ներդաշնակ զարգացման պայմանը։ Սոցիալիզմը գնալով ավելի ու ավելի է անհրաժեշտ պայմաններ ստեղծում մարդկանց անհատականությունների ըստ ամենայնի զարգացման համար, այն բանի համար, որպեսզի հասարակության յուրաքանչյուր անդամ իր գործունեության համար ընտրի այնպիսի ասպարեզ, կարողանա զբաղվել այնպիսի գործով, դեպի որը նա ամենից մեծ հակում ունի և որի միջոցով նա ամենից շատ կարող է օգտակար լինել հասարակությանը։

Սոցիալիզմի պայմաններում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում աճում է ոչ միայն ժողովրդական մասսաների դերը ամբողջությամբ վերցրած, այլև յուրաքանչյուր անհատի դերը։ Սոցիալիզմը յուրաքանչյուր բանվորի, յուրաքանչյուր կոլտնտեսականի ու մտավոր աշխատողի դարձնում է ստեղծագործող անհատ, որը գիտակցաբար ու ակտիվորեն մասնակցում է հասարակական արտադրությանն ու հասարակական կյանքին, նոր աշխարհի կառուցմանը։

Կոմունիզմը պատմության մեջ առաջին անգամ կյանքի է կոչում այնպիսի ուժեր, ստեղծում այնպիսի պայմաններ, որոնք ապահովում են մարդկանց անհատականությունների անկաշկանդ զարգացումը, նրանց իսկական ծաղկումը։ Այդ պատճառով էլ Մարքսը կոմունիզմը նույնացնում էր ռեալ հումանիզմի հետ, աշխատավոր լայն մասսաների կյանքում հումանիզմի գաղափարների մարմնավորման հետ։

Մարքսիզմի տեսակետից բնության ու հասարակության զարգացման օրենքների օբյեկտիվ բնույթը ոչ միայն չի բացառում մարդու ազատությունը, այլ հանդիսանում է այն նյութական պատվանդանը, որի վրա է միայն ծաղկում իսկական ազատությունը, իսկ վերջինս ձեռք է բերվում միայն զարգացած կոմունիստական հասարակությունում։ Այդ պատճառով էլ պայքարը կոմունիզմի համար, պայքար է մարդկության լավագույն ապագայի, նրա իսկական ազատության ու երջանկության համար։ Ահա թե ինչու պայքարը հանուն կոմունիզմի՝ հումանիզմի բարձրագույն արտահայտությունն է, ուստի և չկա ավելի ազնիվ ու ավելի առաքինի գործ, քան ամբողջ ուժերը այդ հասարակության կառուցման վեհ գործին նվիրաբերելը, մի հասարակություն, որի իրականացումը իր տեսական մարմնավորումն է գտել պարտիայի նոր ծրագրում և դարձել հարյուր միլիոնավոր սովետական մարդկանց պրակտիկ գործը, նրանց աշխատանքի ու պայքարի նշանաբանը։



# ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

ՀԿՊ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար

Ապրել և աշխատել լենինաբար, այդ նշանակում է ամեն ինչով նմանվել Լենինին, անսահմանորեն նվիրված լինել նրա գործին, պայքարել լենինիզմի վեհ գաղափարների իրականացման համար, սրբությամբ կատարել կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը։

1924 թվականի հունվարից, մեծ Լենինի մահվանից անմիջապես հետո, մեր քաղաքի աշխատավորության կամքով նախկին Ալեքսանդրապոլը վերանվանվեց Լենինական։ Մեծ Լենինի անունը կրող մեր քաղաքում ամուր են լենինյան տրադիցիաները, որոնք ստեղծվել են լենինյան պարտիայի հիմնադրման առաջին իսկ տարիներից, անցել երեք ռևոլյուցիաների, Մեծ Հոկտեմբերի ծնունդ մայիսյան հերոսական ապստամբության բովով, զարգացել ու բազմապատկվել մեր երկրում սոցիալիզմի շինարարության տարիներին։

Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի շնորհիվ հայ ժողովուրդը ապրեց մեծ վերածնունդ, վերականգնեց իր ինքնուրույն պետականությունը և այժմ սովետական ժողովուրդների հոյակապ ընտանիքում վստահորեն գնում է դեպի կոմունիզմ։ Մեր երկրի, ռեսպուբլիկայի հաջողություններից անմասն չի մնացել նաև Լենինականը։

Յոթնամյակը մեծ հաղթանակների ժամանակահատված եղավ Լենինականի արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կուլտուրայի համար։ Միայն յոթնամյակի վերջին տարվա՝ 1965 թվականի վեց ամիսների ընթացքում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը մեր քաղաքում ավելացել է 13 տոկոսով։ 1965 թվականի ութ ամիսների պետական առաջադրանքները քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները կատարել են 103 տոկոսով և պլանից ավելի թողարկվել է 2 միլիոն 800 հազար ռուբլու արտադրանք։

Ապրել և աշխատել լենինաբար, նախ և առաջ նշանակում է պայքարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, աշխատանքի նկատմամբ ցուցաբերել կոմունիստական վերաբերմունք, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, որը Լենինը համարում էր ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակն ապահովելու համար։



Այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունները, կոմունիստները լավ են ըմբռնել ու կատարում լենինյան այս պահանջները, այնտեղ հաջող են կատարվում պետական առաջադրանքները։ Վերցնենք մեր քաղաքի ամենախոշոր ձեռնարկության՝ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի օրինակը։ Կոմբինատը տևականորեն ետ էր մնում, և դա խիստ բացասաբար էր անդրադառնում ոչ միայն ձեռնարկության տնտեսական վիճակի, այլև բազմահազարանոց այս կոլեկտիվի տրամադրության վրա։ Իսկ ետ մնալու պատճառն այն էր, որ կոմբինատում աշխատանքները վատ էին կազմակերպվում, չկար լենինյան գործարարություն և երբեմն էլ՝ լենինյան հոգատարություն մարդու հանդեպ։

Բայց վիճակը փոխվեց, երբ պարտիական օրգաններն ընդհուպ զբաղվեցին կոմբինատի աշխատանքներով։ Քաղաքային կոմիտեն վերանայեց տեքստիլ կոմբինատի ղեկավար աշխատողների կազմը, կոնկրետ միջոցառումներ մշակեց գործերի վիճակը հիմնովին բարելավելու համար։ Գործնական լուրջ քայլերի դիմեցին նաև տեղի պարտիական կազմակերպությունը և տնտեսական ղեկավարությունը։ Բեկում մտցվեց աշխատանքի կազմակերպման մեջ, բարձրացվեց աշխատանքային տեղամասերի, կոմունիստ ղեկավարների անձնական պատասխանատվությունը, ավելի հետևողականորեն իրականացվեց՝ վստահիր և ստուգիր լենինյան աշխատանքի ոճը։

Կարևոր նշանակություն ունեցան նաև, առերևույթ երկրորդական թվացող, մի շարք այնպիսի միջոցառումներ, որոնք բանվոր-ծառայողների համար ստեղծեցին աշխատանքի ավելի բարենպաստ պայմաններ։ Բարեկարգվեց կոմբինատի բակը, ստեղծվեցին պուրակներ, ծառուղիներ և անգամ ջերմոցներ, կառուցվեցին հասարակական սննդի նոր օբյեկտներ։ Բոլոր այս միջոցառումները հետևանք էին մեր պարտիայի կողմից իրագործվող լենինյան հոգատարության, դեպի աշխատավորը ցուցաբերվող զգոն ու ուշադիր վերաբերմունքի։ Եվ դրանք ապարդյուն չանցան։ Բարձրացավ կոլեկտիվի տրամադրությունը, դրական փոփոխություն կատարվեց նրանց վերաբերմունքի մեջ աշխատանքի նկատմամբ։

Այսպիսի օրինակները մեր քաղաքում եզակի չեն։

Տեղին կլինի անդրադառնալ հղկող հաստոցների գործարանին։ Այս ձեռնարկության ընդամենը մի քանի տարվա պատմություն ունեցող կոլեկտիվն արդեն ստեղծում է լավ տրադիցիաներ, որոնք առաջին հերթին արտահայտվում են պետական պլանների կատարման մեջ։ Ավելին, այստեղ լայն պայքար է տարվում թողարկվող հաստոցների որակը միջազգային ստանդարտին հասցնելու համար։ Եվ պատահական չէ, որ նրանց վստահվել է հաստոցներ արտադրել արտասահմանյան մոտ 10 երկրների վաճառելու համար։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ գործարանում համախառն արտադրանքի թողարկումն ավելացել է 12 տոկոսով։

Արտադրության խելացի ու գործիմաց կազմակերպումը լավ արդյունքների է հասցրել նաև երկաթուղային հանգույցի ձեռնարկություններին։ Լոկոմոտիվային և վագոնային դեպոների, կայարանի կոլեկտիվները, հիմնական ցուցանիշների գծով, գերակատարելով պետական առաջադրանքները, նվաճել են ռեսպուբլիկական ու միութենական փոխանցիկ դրոշներ։

Ոչ պակաս հաջողություններ են ձեռք բերել միկրոէլեկտրաշարժիչների, սարքաշինական, ղարբնոցամամլիչային սարքավորումների գործարանների,

գուլպայի, կարի, տրիկոտաժի ֆաբրիկաների և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք ցուցաբերում են ստեղծագործական աշխատանքի հիանալի օրինակներ։ «Հայգորգ» ֆիրմայի Լենինականի բաժանմունքի կողմից թողարկված «Երևան» գորգը Լայպցիգի տոնավաճառում արժանացել է ոսկե մեդալի։

Լավ են աշխատում մեր շինարարները։ Լենինը երազում էր սովետական երկրի քաղաքներն ու գյուղերը տեսնել գեղեցիկ ու բարեկարգ, որ աշխատավոր մարդը դուրս գար նկուղներից ու խավար խցերից և ապրեր լուսավոր, բարեկարգ տներում։ Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը, հատկապես հետպատերազմյան տարիներին, հսկայական միջոցներ են տրամադրել բնակարանային պրոբլեմը մեր երկրում լուծելու համար։ Թեկուզ Լենինականի օրինակով կարելի է նկատել, թե ինչպիսի մեծ աշխատանք է կատարված այդ ուղղությամբ։ Բոլորիս աչքի առաջ կառուցվում ու գեղեցկանում է Լենինականը։ Վաղեմի Գյումրին գարնան ձյան նման հալվել ու անէացել է։ Նրա փոխարեն հասակ է առնում սոցիալիստական Լենինականը։ Այդ ամբողջ բարեփոխությունները լենինաբար ապրելու հիմքերն են, որ արդեն դրված են մեր քաղաքում։

Կառուցվել և կառուցվում են արտադրական նոր կորպուսներ, կուլտուր-կենցաղային օբյեկտներ, վարչա-տնտեսական շենքեր և բնակելի հսկա զանգվածներ։ Միայն Անտառավանում այսօր այնքան մարդ է ապրում, որքան Ալեքսանդրապոլում մինչև սովետական կարգերի հաստատումը։ Խարխուլ, գորշ ու անհրապույր միհարկանի տների փոխարեն վեր են խոյացել բազմահարկ ու տուֆակերտ հիանալի շինություններ։ Ընդամենը մեկ տարի առաջ քաղաքի կենտրոնում, Շահումյան փողոցի վրա հայտնվեցին էքսկավատորները, որոնք բաց արին Արագած փողոցը։

Մեր հայրենակից վարպետը՝ Ավետիք Իսահակյանը երազել էր կենտրոնական հրապարակից դիտել Արագածի լանջերը։ Հին, խարխուլ տնակներով էր փակված այդ հատվածը, և մարդիկ ապրում էին բնակարանային վատ պայմաններում։ Քաղաքային կոմիտեն և քաղաքային սովետը որոշեցին ընդառաջ գնալ բնակիչների ցանկությանը և, չնայած լուրջ դժվարություններին, քանդել այդ խարխլված տնակները։ Եվ այսօր Արագած փողոցի վրա բարձրանում են բնակելի տուֆակերտ շենքերի կորպուսները։

Լենինականի № 6 շինարարական տրեստը 1965 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարեց 101 տոկոսով։ Ընդ որում հաջողությամբ կատարվում են թե՛ բնակելի և թե արդյունաբերական ձեռնարկությունների շինարարական պլանները։

Լենինականի աշխատավորները մեծ եռանդով ու հայրենասիրությամբ են աշխատում։ Յուրաքանչյուր բանվոր և ծառայող ձգտում է իր համեստ լուման ներդնել կոմունիստական շինարարության համընդհանուր գործի մեջ։ Մի՞թե այդ մասին չի վկայում այն փաստը, որ միայն այս տարի արտադրության մեջ արմատավորվել են ավելի քան 700 նորարարական առաջարկություններ, որոնք երկրին տվել են միլիոնավոր ռուբլիների օգուտ։

Այս հաջողությունները բացատրվում են մեր աշխատավորության գաղափարական ու քաղաքական բարձր կոփվածությամբ, մասսայական-դաստիարակչական այն նպատակասլաց աշխատանքով, որ տանում են Լենինականի պարտիական կազմակերպությունները։ Նրանց գործադրած ջանքերի շնորհիվ հաջողությամբ ավարտվեց պարտիական-լուսավորության ցանցի անցած



ուսումնական տարին։ 360 քաղխմբակներում և տեսական սեմինարներում ընդգրկված էին մոտ 12 հազար 500 ունկնդիրներ, որոնք ուսումնասիրում էին մեր երկրում կոմունիզմի կառուցման պրոբլեմները, համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացումը, կոմունիստական և բանվորական պարտիաների ստրատեգիան ու տակտիկան արդի էտապում։ Ուշադրության կենտրոնում են եղել Վ. Ի. Լենինի հանճարեղ աշխատությունների, նրա կենսագրության ուսումնասիրությունը։

Պարտիական ու սովետական ղեկավար աշխատողների գաղափարական-դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունեցավ ՀԿՊ քաղաքային կոմիտեի՝ կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի երկամյա համալսարանը։ Այստեղ, ուր ընդգրկված են շուրջ 200 ղեկավար աշխատողներ, զեկուցումներով ու դասախոսություններով հանդես են եկել մեր Միության ու հանրապետության ականավոր գիտնականներ, ավելի սրելով ունկնդիրների անկաշկանդ հետաքրքրությունը մարքս-լենինյան տեսության կարևորագույն խնդիրների նկատմամբ։

Ղեկավար աշխատողների և, ընդհանրապես, մեր կոմունիստների գաղափարական-դաստիարակության ուղղությամբ լավ գործ են կատարում ժողովրդական համալսարանները, որոնց թիվը հասնում է 10-ի։

Լենինաբար աշխատելու և ապրելու համար անհրաժեշտ է ամեն օր, ամեն ժամ պրոպագանդել լենինյան գաղափարները, բոլոր աշխատավորներին պարզաբանել կոմունիստական շինարարության արդի էտապի ամենահրատապ խնդիրները։ Այդ ուղղությամբ որոշակի գործ են կատարում մոտ չորս հազարի հասնող մեր ագիտատորները, պրոպագանդիստները և դասախոսները, որոնք ամենօրյա կապի մեջ են աշխատավորների հետ, նրանց բացատրում են Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականության, մարքսիզմ-լենինիզմի տեսության հարցերը, որոնք սերտորեն զուգակցում են պրակտիկ խնդիրների կատարման հետ։ Ավելին, մեր պրոպագանդիստներն ու ագիտատորները ձգտում են ավելի մոտ կանգնել յուրաքանչյուր անհատի, թափանցել նրանց մտորումների աշխարհը, հաղորդակից դառնալ նրանց անձնական կյանքին ու հոգսերին։

Տեքստիլ կոմբինատի մեխանիկական ցեխում է աշխատում Մկրտիչ Ղրչյանը։ Նա շարունակ հարբեցողությամբ էր զբաղվում, վատ էր հետևում երեխաների դաստիարակությանը, շատ կոպիտ ու անտակտ էր վարվում կնոջ հետ, աշխատավարձը տուն չէր բերում։ Բանը հասավ այնտեղ, որ կինը՝ նույն կոմբինատի բանվորուհի Գոհար Հակոբյանը, ստիպված բաժանվեց ամուսնուց, չնայած ունեին չորս երեխա։ Մեխ. ցեխի կոլեկտիվը, սկզբնական պարտիական կազմակերպությունը զբաղվեցին Ղրչյանի հարցով։ Պարտկազմակերպության բյուրոն նրա կոմունիստ ընկերներին և աշխատամասի ագիտատորին հանձնարարեց մշտական ուշադրության կենտրոնում պահել ճանապարհից շեղված ընկերոջը։ Նրանք միշտ լինում էին Ղրչյանի հետ, բացատրում էին, թե որքան թանկ են ընտանիքի համերաշխությունն ու երեխաների դաստիարակությունը։ Նրա վարքը խիստ քննադատության ենթարկվեց կոմբինատի «Տեքստիլագործ» բազմատիրաժ թերթում։ Այդ բոլորի շնորհիվ Ղրչյանը հետըզհետե փոխվեց, թողեց խմելը։ Ամուսինները միացան։ Ընտանիքում խաղաղություն տիրեց, բարձրացավ երեխաների տրամադրությունը։ Կինը՝ Գոհարը, օրերս ընդունվեց ՍՄԿՊ շարքերը որպես թեկնածու։

Այսպիսի օրինակները շատ են, երբ պարտիական կազմակերպությունները, ագիտատորները օգնում են մարդկանց կանգնելու ճիշտ ճանապարհի վրա, ապրելու մարդավայել։

Աշխատավորությանը լենինյան ոգով դաստիարակելու գործում դժվար է գերագնահատել այն միջոցառումները, որոնք նվիրված են եղել հին բոլշևիկների մեծարմանը կամ նրանց հիշատակի հավերժացմանը։ Լենինյան հին գվարդիայի ռևոլյուցիոն տրադիցիաների պահպանման ու պրոպագանդման ուղղությամբ կարևոր նշանակություն ունեն հին կոմունիստների մշտական հանդիպումները արտադրական ձեռնարկությունների և ուսումնական հաստատությունների կոլեկտիվների հետ։ Կարող ենք համարձակորեն ասել, որ մեր քաղաքում ռևոլյուցիոն հին տրադիցիաները լավ են պահպանվում ու պրոպագանդվում։

Կոմունիստաբար ապրելու և աշխատելու սկզբունքների պրոպագանդումն ու կենսագործումն առավել մեծ կարևորություն են ստանում հայրենադարձ հայերի շրջանում։ Այս տեսակետից բավականին լուրջ աշխատանք է կատարվել մեր քաղաքում։ Բոլոր հայրենադարձներն ապրում են բարեկեցիկ բնակարաններում, ապահովված են համապատասխան աշխատանքով, հարյուրավոր երեխաներ սովորում են դպրոցներում, մանուկներն ընդգրկված են մանկապարտեզներում։ Ահա այս հողի վրա էլ նրանց շրջանում ծավալվեց քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։ Բոլոր շենքերին ամրացված են ագիտատորներ, որոնք ոչ միայն քաղաքական ագիտացիա են տանում, այլև կոնկրետ կերպով օգնում են նրանց վերացնելու կենցաղի թերությունները, հոգալու կարիքները։ Ամեն ամիս նրանց համար կազմակերպում են քաղաքական-կուլտուրական բնույթի զանազան միջոցառումներ։ Զգալի գործ են կատարում նաև Գր. Զոհրապի անվան գրադարանը, Պ. Դուրյանի, Մ. Մաշտոցի անվան դպրոցների պարտիական կազմակերպությունները։ Արդեն մի շարք գործարաններում հայրենադարձ հայերն ընդգրկված են կոմունիստական շարժման մեջ, արտադրության առաջավորներ են։ Կան քաղսովետի դեպուտատներ, հասարակական գործիչներ։ Նկարիչ Հակոբ Հակոբյանը ակտիվորեն մասնակցում է սովետահայ կերպարվեստի զարգացման գործին, ստեղծում սովետական կյանքին վերաբերող հաջող գործեր։

Իհարկե, այս ամենը քիչ է։ Հարկավոր է ավելի ուժեղացնել հայրենադարձների շրջանում տարվող աշխատանքը, նրանց լայնորեն ներգրավել մեր քաղաքական-հասարակական կյանքում, ընդգրկել թաղային կոմիտեներում, արհմիության տեղկոմներում և այլ հասարակական կազմակերպություններում։



Ապրել և աշխատել լենինաբար սկզբունքի անշեղորեն կենսագործմանը մեծապես նպաստում է վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ դրվածքը։ «Հաշվառումն ու վերահսկողությունը, որոնք անհրաժեշտ են սոցիալիզմին անցնելու համար,— ասել է Վ. Ի. Լենինը,— կարող են միայն մասսայամապարփակ, համընդհանուր, համաժողովրդական, այդ ժամանակ չի կարելի նրանից ոչ մի կերպ խույս տալ» (հ. 26, էջ 499)։ Երբ այդ վերահսկողությունը կդառնա իսկական հանրանից ոչ մի կերպ խույս տալ, ոչ մի կերպ չես կարող նրանից թաքնվել։

Լենինականի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեն զգալի



աշխատանք է կատարել այդ ուղղությամբ։ Այժմ արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտում և հիմնարկություններում գործում են 210 աջակցող խմբեր և 118 պոստեր, քաղաքային կոմիտեում՝ 11 բաժիններ և հանձնաժողովներ։ Բացի դրանից, կոմիտեի կողմից հանձնարարություն են ստացել և մասնակցել հարցերի ու դիմում-բողոքների ուսումնասիրմանը շուրջ երկու հազար մարդ։ Դա մի ստվար բանակ է, որը պարտիական օրգաններին օգնում է ապահովելու ամենօրյա վերահսկողությունը պարտիայի և կառավարության դիրեկտիվների փաստական կատարման, կոմունիստական շինարարության ղեկավարման հետագա կատարելագործման, պարտիական ու պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության պահպանման գործում։

Վերահսկողության գործում պարտիական կազմակերպությունների երաշխավորությամբ ընդգրկված են հեղինակություն վայելող հին բոլշևիկներ, դեպուտատներ, ժուռնալիստներ, գրողներ, արտադրության ու գիտության առաջավորներ, կոմունիստներ և անպարտիական ընկերներ, որոնք բարձր պատասխանատվությամբ և սկզբունքայնությամբ են կատարում տրված հանձնարարությունները, օգնում պարտիական օրգաններին անտնտեսվարության ու բյուրոկրատիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ մղվող պայքարում։ Այդպիսի լայն ակտիվի առկայությունը մեծ հնարավորություն է տալիս կազմակերպելու մասսայական ռեյդեր, որին մասնակցում են հարյուրավոր աշխատողներ։ Նրանց օգնությամբ ստուգվում են քաղաքային տնտեսության տարբեր բնագավառներ ու ճյուղեր, քննարկվում են ամբողջ խումբ կոմպլեքս հարցեր, որոնք պարտիական ու սովետական օրգանների կողմից ստանում են համապատասխան լուծում։

Պարտիական կազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ էլ ավելի մեծ ուշադրություն դարձնել աջակցող խմբերին, դրանք ամրապնդել կազմակերպչորեն, դարձնել իսկական մասսայական վերահսկողության օրգաններ, հենվել վերահսկողների վրա և նրանց նպատակամղել եղած թերությունների ու բացերի վերացմանը։



Պարտիայի Ծրագիրը, որն ամբողջությամբ բխում է ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարներից, ազդարարում է «Կոմունիստական ծավալուն շինարարությունը ՍՍՌՄ-ում ազգային տարբերությունների զարգացման նոր էտապ է նշանավորում, որը բնութագրվում է ազգերի հետագա մերձեցմամբ և նրանց լիակատար միասնության իրագործմամբ»։ Լենինականում բնակվող բազմազգ աշխատավորների միջև ստեղծված են եղբայրության, համագործակցության ամենաջերմ կապեր։ Տեքստիլ կոմբինատում, մանվածքային, գուլպայի ֆաբրիկաներում, № 6 շինտրեստում և այլուր աշխատում են ՍՍՌՄ ժողովուրդների բազմաթիվ ներկայացուցիչներ՝ ռուսներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, վրացիներ, ադրբեջանցիներ և ուրիշներ։ Նրանք հայերի հետ միասին աշխատում են կողք-կողքի՝ բազմապատկելով Սովետական Հայաստանի տնտեսական հզորությունը։

Լենինյան եղբայրության ամենաջերմ կապեր են հաստատվել Անդրկովկասի երեք քաղաքների՝ Լենինականի, Քութաիսիի և Կիրովաբադի աշխատա-

վորների միջև: Տասնվեցամյա տրադիցիոն մեր մրցությունը հիանալի կամուրջ է տնտեսական ու կուլտուրական նվաճումների փոխանակման համար: Սերտ կապեր են հաստատված օվկիանոսային «Լենինական» տանկերի բազմազգ անձնակազմի, ինչպես նաև Էստոնիայի Տարտու քաղաքի աշխատավորության հետ:

Սովետական Միության ժողովուրդների լենինյան բարեկամության ամրապնդման գործում հսկայական դեր խաղացին Ուզբեկստանի, Էստոնիայի և Ռուսաստանի ֆեդերացիայի գրականության ու արվեստի տասնօրյակները, որոնք անօրինակ խանդավառություն առաջ բերին նաև Լենինականում:

Վերջերս մեր քաղաքում հյուր եղան տիեզերական բազեները՝ Վալենտինա Նիկոլաևնա-Տերեշկովան և Անդրիան Նիկոլաևը: Նրանց հետ աշխատավորության և երիտասարդության բազմաթիվ հանդիպումները վերածվեցին համաժողովրդական ցնծության, վկայելով լենինյան անմահ գաղափարների հաղթանակը մեր երկրում:

Հոգատարությունը մարդկանց, աշխատողների, ընկերների նկատմամբ Վ. Ի. Լենինի բնորոշ գիծն էր: Լենինը սովորեցնում էր, որ պետք է միշտ լինել հոծ մասսաների շարքերում, իմանալ նրանց տրամադրությունը, հասկանալ մասսային, նվաճել նրա բացարձակ վստահությունը: Ձեռնարկության ղեկավարը քաղաքական աշխատող է, աշխատավորներն ի դեմս նրա տեսնում են ոչ միայն արտադրության կազմակերպչի, մասնագետի, այլև այնպիսի մարդու, որն իրենց ավագ ընկերն է, կոլեկտիվի գաղափարական աշխատողն ու դաստիարակը:

Կադրերի մեջ պետք է դաստիարակել խոր հարգանք աշխատավորի նկատմամբ, ձգտում՝ սովորել աշխատավորությունից և սովորեցնել նրան: Մասսաների մեջ քաղաքական աշխատանքում պետք է լինել ճկուն, տեսնել քաղաքական աշխատանքի բազմաթիվ ձևերն ու մեթոդները: Ղեկավար կադրերը,— սովորեցնում է Լենինը,— պետք է «Կարողանան նվաճել մասսաների անսահման վստահությունը իրենց ընկերական վերաբերմունքով, նրանց կարիքների հոգատար բավարարմամբ» (Пол. собр. соч., т. 44, էջ 348): Պարտիական ղեկավարը պետք է բացարձակապես ազնիվ լինի մյուս մարդկանցից:

Կոմունիստը, որտեղ էլ որ նա աշխատի, պետք է ակտիվորեն մասնակցի երկրի քաղաքական կյանքին, նպաստի կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորմանն ու դաստիարակմանը: Մինչդեռ մեր պարտիական կազմակերպություններում դեռևս կան այնպիսի կոմունիստներ, որոնք չեն արդարացնում լենինյան պարտիայի անդամի վեհ կոչումը:

Կոշիկի ֆաբրիկայի պարտկազմակերպությունը պարտիայի անդամության թեկնածու էր ընդունել պահեստապետ Զավեն Ղալաչյանին, որը հենց թեկնածուական ժամանակաշրջանում, սոցիալիստական սեփականությանը ձեռք մեկնելու համար, հեռացվեց պարտիայից: Նույն ֆաբրիկայից Ֆրունզիկ Ասլանյանը, որը նախկինում դատված էր եղել, խցկվել էր պարտիայի շարքերը, բայց կրկին կանգնեց դատական օրգանների առջև և հեռացվեց պարտիայից:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները, նրանց բյուրոներն ու քարտուղարները լրիվ պատասխանատվություն են կրում պարտիայի առաջ՝ նրա շարքերի նոր համալրման համար: Հարկավոր է ավելի ու ավելի բարձրացնել պարտիայի անդամի կոչումը, յուրաքանչյուր կոմունիստի մեջ դաստիարակել ներքին, օրգանական պահանջմունք՝ միշտ և ամեն ինչում նմանվել Լենինին:



Լենինյան գործելակերպի գլխավոր հատկանիշներից մեկը անհաշտվողականությունն է թերությունների նկատմամբ: Անհնարին է նոր հասարակարգ կառուցել, առանց պայքարելու առաջընթացին խանգարող թերությունների և բացերի դեմ: Իսկ այդպիսի թերություններ ու բացեր մեր աշխատանքներում քիչ չեն: Մենք դեռ ամեն ինչ չենք անում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում մեր արժանավայել լուման մտցնելու ուղղությամբ: Պետք է նշել, որ քաղաքի արտադրական ձեռնարկություններից ոչ բոլորն են կատարում պետական պլանները: Դրանց թվում են գարեջրի, մաhճակալի, կենցաղային սառնարանների կոմպրեսորների և այլ գործարանները:

Արդի էտապում, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, երբ օրվա կարևորագույն խնդիրն է կոմունիստական մարդու դաստիարակությունը, մեծապես փոխվում է տնտեսական ղեկավարի դերը կոլեկտիվում: Նա անպատճառ պետք է հանդես գա որպես կոլեկտիվի քաղաքական դաստիարակ, որպես գաղափարական աշխատող և իր օրինակով վարակի մյուսներին: Առանց ղեկավար կադրերի անձնական մասնակցության մասսաների դաստիարակության գործին, նշել է Լենինը, չի կարող լինել ոչ իսկական քաղաքական գործունեություն և ոչ էլ կազմակերպական աշխատանք:

Հայտնի է, որ Լենինը վճռականորեն դեմ էր պաշտպանելու այն կոմունիստներին, որոնք խախտել են օրենքը և հանցանք են կատարել: Կենտկոմի քաղբյուրոյի անդամներին 1922 թ. մարտի 18-ին հասցեագրած իր նամակում նա գրել է. «...Հայտարարել բոլոր նահանգկոմներին, որ կոմունիստի պատասխանատվության, «մեղմացման» իմաստով դատարանների վրա «ազդելու» ամենափոքր իսկ փաստի համար կենտկոմը կհեռացնի պարտիայից... շրջաբերականով հաղորդել արդարադատության ժողկոմատին, պատճեն՝ պարտիայի նահանգկոմներին»: Վերջում Լենինը ավելացնում է. «Ամոթանքի և խայտառակության գագաթնակետ է, երբ իշխանության գլուխ կանգնած պարտիան պաշտպանում է իր սրիկաներին»:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր լուրջ մոտեցում ունենալ դեպի քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ամեն կերպ զարգացնել այն, համարձակորեն բացահայտել թերություններն և հասնել դրանց վերացմանը: Այս ուղղությամբ մեզ մեծ օգնություն է ցույց տալիս մամուլը և, մասնավորապես, քաղաքային «Բանվոր» թերթը: Քաղաքի պարտիական, տնտեսական, արհմիութենական կազմակերպությունները ժամանակին քննության են առնում թերթի ահազանգումները, քննադատական ելույթները, անտիպ նամակներում բարձրացված հարցերը, ձեռնարկում անհրաժեշտ միջոցառումներ և պատասխանում խմբագրությանը: Սակայն միշտ չէ, որ ներքևից եկող քննադատական դիտողություններն ու ահազանգերը արժանանում են կազմակերպությունների ուշադրությանը: Պատահում են դեպքեր, երբ թերթում տպագրված և տեղերն ուղարկված քննադատական հոդվածներն ու նամակները անուշադրության են մատնվում, մի քանի անգամ հիշեցումից հետո էլ չեն պատասխանում, կամ գլխացավանքից ազատվելու համար ուղարկում են ձևական պատասխաններ:

Ընթացիկ տարվա ապրիլի 10-ին «Բանվոր»-ում լույս տեսավ «Քաղաքը պետք է փայլի իր մաքրությամբ» վերնագրով ռեյդային հոդվածը, ուր կոնկ-

րետ կերպով նշված են այն կազմակերպությունների հասցեները, որոնք այս
կամ այն ձևով քանդում են փողոցներն ու մայթերը, կեղտոտում շրջակայքը,
խանգարում բարեկարգման աշխատանքներին: Հոդվածն ուղարկվեց քաղսո-
վետ, սակայն ահա երրորդ ամիսն է, ինչ խմբագրությունը պատասխան չի
ստացել: Իսկ ինչո՞ւ, մի՞թե այդ հարցը հուզող չէր, մի՞թե ամեն ինչ կարգին է:
Իհարկե, ոչ:

Կամավոր սպորտընկերությունների քաղաքային ֆիզկուլտ խորհուրդը
չհետաքրքրվեց այս տարվա հունվարի 29-ին «Բանվոր» թերթում տպագրված
«Իսկ չէ՞ որ ձմեռն անցնում է» նամակում առաջ քաշված հետաքրքիր հարցե-
րով: Դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանի աշխատակից
Ռ. Վարդանյանը խնդիր էր դրել սպորտասեր երիտասարդությանը ապահովել
սեզոնային սպորտհագուստներով, դահուկներով, չմուշկներով և այլն: Այդ
հարցով զբաղվում են առևտրական կազմակերպությունները: Սակայն սեզոնը
գալիս է ու գնում, մինչդեռ խանութներում անհրաժեշտ սպորտային գույք և հա-
գուստ շատ դժվար է ճարել:

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ աշխատավորական նամակները ունեն
կարևոր նշանակություն, դրանք ներքևից եկող ահազանգումներ են, այդ նա-
մակների ետևում կանգնած են կենդանի մարդիկ՝ իրենց ապրումներով ու հույ-
զերով, խոհերով ու մտքերով: Նրանք գրում են թերթին և սպասում հույսով, որ
անպայման իրենց ցանկություններն ու պահանջները, առաջարկություններն ու
քննադատական դիտողությունները ահրաժեշտ ընթացք, լուծում կստանան:

Քաղաքի տնտեսական, պարտիական, սովետական, արհմիութենական,
կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների խնդիրն է՝
առանց հապաղման գործարար և կոնկրետ միջոցառումներ ձեռնարկել թերթի
քննադատական ելույթների կապակցությամբ, ժամանակին քննության առնել
խմբագրությունից ուղարկվող տպագրված և անտիպ նամակներն ու թղթակ-
ցությունները, կազմակերպել ստուգումներ, արդյունքների մասին հաղորդել
խմբագրությանը:



Հայտնի է, թե որքան մեծ նշանակություն էր տալիս Լենինը երիտասար-
դության կոմունիստական դաստիարակությանը: Սովորել կոմունիզմ, օգնել
պարտիային և ժողովրդին կառուցելու կոմունիզմ, ստեղծել կոմունիստական
հասարակություն,— այսպես է բնորոշել Լենինը կոմերիտմիության խնդիր-
ները:

ՍՄԿԿ XXII համագումարից հետո մեր քաղաքի պարտիական կազմակեր-
պությունները ավելի կոնկրետ ու արդյունավետ են զբաղվում երիտասարդու-
թյան գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցերով: Քաղկոմը
և սկզբնական պարտիական կազմակերպությունները քննության են առնում
երիտասարդության դաստիարակության, նրա կյանքի, կենցաղի բարելավմանը
վերաբերող բազմազան հարցեր: Քաղաքի երիտասարդությունը անձնվիրաբար
աշխատում է պարտիայի կողմից առաջադրված խնդիրների իրագործման հա-
մար: Սակայն քաղաքի ոչ բոլոր պարտիական կազմակերպությունները, ոչ բո-
լոր ձեռնարկություններն ու հիմնարկներն են անհրաժեշտ ուշադրություն նվի-
րում երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը:



Կենցաղային սառնարանների, ԴՄՍ, հատուկ կոնստրուկտորների գործա-
րանների, մանվածքային, կարի № 2 «Լենկոշ» ֆաբրիկաների պարտիական
կազմակերպությունները չեն հասել այն բանին, որպեսզի վերացվեն երիտա-
սարդության քաղաքական դաստիարակության գործում եղած թերությունները:
Բավական է ասել, որ նշված ձեռնարկություններում երիտասարդության գերա-
կշռող մասը 1964—65 թվականներին դուրս էր մնացել քաղուսուցումից, իսկ
էլեկտրատեխնիկական գործարանում, որտեղ հաշվվում են 100-ից ավելի կոմե-
րիտականներ, չէր ստեղծված և ոչ մի կոմերիտական քաղխմբակ:

Երիտասարդության շրջանում տարվող գաղափարական դաստիարակու-
թյան թույլ աշխատանքով է բացատրվում այն, որ մեզ մոտ առանձին երի-
տասարդների և նույնիսկ անչափահասների կողմից նկատվում են հակահասա-
րակական արարքներ, աշխատանքային կարգապահության կոպիտ խախտ-
ման փաստեր:

Պարտիական կազմակերպությունների և կոմսոմոլի քաղաքային կոմիտեի
խնդիրն է՝ սիստեմատիկաբար և որակյալ կերպով ուղղություն տալ կոմերի-
տական կազմակերպությունների գործունեությանը, իրենց դերը չհանգեցնել
ընդհանուր ցուցումներ տալուն, այլ կոնկրետ կերպով, ըստ էության զբաղվել
երիտասարդության հետ տարվող աշխատանքի, նրա ուսուցման և դաստիարա-
կության հարցերով:

Պարտիական կազմակերպությունները պետք է իրենց ջանքերը, բոլոր կո-
մունիստների ուշադրությունն ուղղեն այն բանին, որ բարձրացվի կոմերիտա-
կան կազմակերպություններին ցույց տրվող պարտիական ղեկավարության մա-
կարդակը, երիտասարդության դաստիարակությունը լիովին համապատասխա-
նի ժամանակի պահանջներին, կոմունիստական շինարարության խնդիրներին:

Աշխատել և ապրել լենինաբար, դա մեր բոլորի ամենօրյա գործունեության
խնդիրն է ու նպատակը: Մեզանից յուրաքանչյուրի գործն ու խոսքը պետք է
ներդաշնակ լինեն, բխեն լենինյան գաղափարների կենսագործման շահերից: Չի
կարելի ասել մի բան, անել մի այլ բան:

Մեր խնդիրն է՝ ուժեղացնել գաղափարական-քաղաքական աշխատանքները,
դաստիարակել մեր մարդկանց լենինյան վեհ գաղափարների կենսագործման
ոգով, ապահովել աշխատանքի բարձր արտադրողականությունը, արտադրու-
թյան ճկուն ու հնարամիտ կազմակերպումը:



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Երեկո էր: Դանդաղ մաղում էր անձրևը: Կոմունիստներից մի քանիսը դիրեկտորի առանձնասենյակում տեղեր էին գրավել և սպասում էին պարտիական կազմակերպության ժողովի սկսվելուն: Բակում եռուզեռ էր, աշխուժություն: Մեքենաները նոր էին վերադառնում երթուղուց: Կոմունիստ-վարորդները տեղավորում էին մեքենաները, հանձնում փաստաթղթերը և, ինչպես իրենք են ասում՝ «փակում հաշիվները», ապա առանց շտապելու, դանդաղ մոտենում դիրեկտորի առանձնասենյակի լուսամուտին, նայում, նոր ներս մտնում:

Երբ պարտիական կազմակերպության քարտուղար Գ. Արշակյանը հայտարարեց, որ կոմունիստների մեծամասնությունը ներկա է, և ժողովը վարելու համար պետք է ընտրել նախագահ ու քարտուղար, ժողովն սկսելու նշանակված ժամից անցել էր շուրջ 40 րոպե և կազմակերպության 44 անդամներից ներկա էին միայն 26-ը: Ժողովի ընթացքում, մեծ ուշացումով կոմունիստները դեռ շարունակում էին գալ:

— Օրակարգի վերաբերյալ,— հայտարարեց ժողովի նախագահը, զեկուցումով պետք է հանդես գար ավտոտրանսպորտի գրասենյակի պետ ընկ. Գյոզալյանը, բայց հաշվի առնելով որոշ հանգամանքներ, զեկուցման համար խոսքը տրվում է պարտբյուրոյի քարտուղար ընկ. Արշակյանին:

Ժողովի մասնակիցները տարակուսած լսեցին 25 րոպե տևողությամբ զեկուցումը՝ աշխատանքային կարգապահության և պարտիական կազմակերպության խնդիրների մասին: Բայց զեկուցողը չտվեց տիրող վիճակի վերլուծությունը, չնշեց ոչ մի ազգանուն, չասաց, թե ինչն է պատճառը, որ գրասենյակում ընկած է կարգապահությունը, ինչումն է կայանում կոմունիստների դերն ու խնդիրները կոլեկտիվում պատշաճ կարգ ու կանոն ստեղծելու հարցում:

Հասկանալի է, որ այսպիսի զեկուցումից հետո ժողովի մասնակիցները չգիտեին ինչից սկսել և ինչ ասել: Տիրեց երկարատև լռություն: Մերթ-մերթ անդորրը խանգարում էր միայն ժողովի նախագահը, դիմելով այս կամ այն ղեկավար աշխատող կոմունիստին «...ելույթների սկիզբը դնելու»: Եվ ահա համարյա ստիպողական ելույթներ ունեցան գրասենյակի տեղկոմի նախագահ Ս. Սարգսյանը, ինժեներ Կ. Վասիլյանը, ավագ տնտեսագետ Ս. Ղազարյանը, պետ Օ. Գյոզալյանը, նախկին պետ Ս. Մովսիսյանը: Նրանցից մի քանիսը նշեցին, որ կոմունիստների մոտ ցածր է կարգապահությունը, պարտիական ժողովները որպես կանոն սկսվում են ուշացումով, եղել են դեպքեր, երբ կոմունիստների մեծամասնության բացակայության պատճառով ժողովը հետաձգ-



վել է, որ կարգապահությունը խախտող կոմունիստներին պարտիական պատասխանատվության ենթարկելու մասին կազմակերպության որոշումը չի կատարվում, իսկ կոլեկտիվում տիրող վիճակը չի բարելավվում: Ասվում էր այդ ամենը ընդհանուր, առանց կոնկրետ փաստերի ու անվանակոչման: Ո՞ւմ էր հասցեագրվում մեղադրանքը, ո՞վ էր պատասխանատու դրա համար՝ թողնվում էր ժողովի մասնակիցների դատողությանը: Իսկ որ էջմիածնի ավտոգրասենյակում գործերը լավ չեն, դա փաստ է: Գրասենյակը 6 ամսվա պլանը կատարել է 98 տոկոսով: Մեծ չափերի են հասել կարգապահության խախտումները: Կոլեկտիվի 40 տոկոսն ունի վարչական տույժ:

Չնայած որ պարտիական կազմակերպության բյուրոն դեռևս անցյալ տարվա նոյեմբերի 12-ին աշխատանքի կարգապահության հարցը հատուկ քննարկման առարկա է դարձրել, դեկտեմբերի 15-ին, այս տարվա մարտի 10-ին, հուլիսի 8-ին անդրադարձել է կոմունիստներ Վարդիկյանի, Աբրահամյանի թույլ տված արարքներին, պարտիական ժողովներից բացակայողների հարցին, հունիսին կայացած պարտիական ժողովում հատուկ որոշում է ընդունվել պարտիական և աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու մասին: Հուլիսին նորից կարգապահության հարցը դրվում է կոմունիստների քննարկմանը, այն էլ չնախապատրաստված: Պարտիական կազմակերպությունն այստեղ հանդես չի բերում հետևողականություն և սկզբունքայնություն իր իսկ որոշումների կենսագործման հարցում: Այդ է պատճառը, որ նույն հարցի մասին ընդունվում են բազմաթիվ որոշումներ, իսկ գործը տեղից չի շարժվում, որով իսկ մեծ վնաս է հասցվում պարտիական կազմակերպության հեղինակությանը: Կոմունիստների մի մասը այդպիսի ժողովների նկատմամբ թերահավատ է և նրանց նայում է որպես խոսելատեղի:

Եզակի են արդյոք նման փաստերը էջմիածնի պարտիական կազմակերպություններում: Ոչ, եզակի չեն: Բանն այն է, որ շրջանային կոմիտեին և մի շարք սկզբնական պարտիական կազմակերպությունների չի հաջողվել լրիվ շրջադարձ կատարել դեպի ՍՄԿՊ հոկտեմբերյան, նոյեմբերյան (1964 թ.) և 1965 թ. մարտյան պլենումների որոշումներից բխող խնդիրների կենսագործումը, անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում կազմակերպական-պարտիական աշխատանքին:

Անշուշտ, չի կարելի ժխտել, որ ՀԿՊ էջմիածնի շրջանային կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների զգալի մասի ուշադրության կենտրոնում են գտնվում կոլտնտեսային, սովխոզային, արդյունաբերական արտադրության էկոնոմիկայի աճի, աշխատավորության կոմունիստական դաստիարակության, արտադրության մեջ կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման, սոցիալիստական մրցության կազմակերպման, պարտիական-պետական կարգապահության ամրապնդման և մի շարք այլ հարցեր: Պարտիական կազմակերպությունների ջանքերի շնորհիվ շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում զգալիորեն բարելավվել է աշխատանքի կազմակերպումը, ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներում ավարտվել են գյուղատնտեսական կուլտուրաների ցանքն ու մշակությունը, որը երաշխիք է տալիս բոլոր կուլտուրաների բարձր բերք ստանալուն: Շրջանի տնտեսությունները հաջողությամբ փակեցին ընթացիկ տարվա կիսամյակը՝ մսի վաճառքի պլանը կատարելով 101,7, կաթինը՝ 102,5, ձվինը՝ 113 տոկոսով: Առ 10-ը սեպտեմբերի շրջանի տնտեսությունները, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմա-

տությամբ, պետությանը ավելի են վաճառել 4.620 տոննա բանջարեղեն և 543
տոննա միրգ։
Շրջանում քիչ չէ այն պարտիական կազմակերպությունների թիվը, որոնք
կազմակերպական-քաղաքական աշխատանքի զգալի փորձ են կուտակել։ Այդ
կազմակերպություններում լուրջ ուշադրություն է դարձվում ներպարտիական
հարցերին, կոմունիստների ակտիվացմանը, նրանց դերի ու հեղինակության
բարձրացմանը, ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը, ընդուն-
ված որոշումների կատարմանը։ Այդ տեսակետից ուսանելի է Վերին Քյոլան-
լուի կոլտնտեսային պարտկազմակերպության աշխատանքի փորձը։ Այստեղ
հարցերը լուծվում են կոլեկտիվ կերպով։ Պարտբյուրոն և նրա քարտուղար Սա-
հակ Գրիգորյանը բազմակողմանիորեն խորանալով տնտեսության գործունեու-
թյան բոլոր կողմերի մեջ, զգալիորեն ակտիվացրել են կոմունիստներին, բարձ-
րացրել նրանց պատասխանատվությունը կոլտնտեսության գործերի համար։
Պարտիական ժողովներում կոմունիստներն իրենց կոլեկտիվ կարծիքն են
հայտնել արտադրության ճյուղերի հետագա զարգացման, քաղաքական-մաս-
սայական և պրոպագանդիստական աշխատանքի, կադրերի ընտրության, տե-
ղաբաշխման հարցերի վերաբերյալ։ Այդ ժողովների նախապատրաստմանն
ակտիվ կերպով ընդգրկվել են մեծ թվով կոմունիստներ, զեկուցումներով հան-
դես եկել գործին գիտակ մարդիկ՝ մասնագետներ, ճյուղերի վարիչներ, բրի-
գադավարներ։
Կոմունիստների կողմից առաջ քաշված հարցերը և քննադատական դիտո-
ղությունները բյուրոյի կողմից հաշվի են առնվում և գործնականորեն կազմա-
կերպվում դրանց լուծումը։ Պարտիական ժողովներում ընդունված որոշումները
նպատակասլաց են ու ռեալ, նշված են կոնկրետ կատարողը և ժամկետը։ Պարտ-
կազմակերպության ժողովներում ընդունված որոշումների կատարման վրա
սահմանվում է որոշակի հսկողություն և հետևողականություն։ Կազմակերպու-
թյան ժողովներում և բյուրոյի նիստերում հաճախ անդրադարձել են ընդունված
որոշումների կատարման ընթացքին։
Վերին Քյոլանլուի արտադրական պարտկազմակերպության ժողովները
իրոք դաստիարակիչ և ուսանելի են։ Դրանք անց են կացվել նպատակային և
կոմունիստների ու ժողովի մյուս մասնակիցների ուշադրությունը կենտրոնաց-
վել է քննարկվող հարցերի ճիշտ վերլուծման, գործնական որոշումների ըն-
դունման վրա։ Պարտիական կազմակերպությունը մարտունակ է, միասնական։
Դրա ապացույցն է տնտեսության ներկա վիճակը։ Ցանքերը լիարժեք են, մշա-
կությունը կատարված է ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներում, հավաքվում
է բարձր բերք։ Կոմունիստների 80 տոկոսն աշխատում է անմիջապես արտա-
դրության մեջ։ Կոմունիստներն իրենց ընտանիքի անդամների հետ դաշտերում
աշխատանքի բարձր արտադրողականության օրինակ են տալիս։
Կազմակերպական աշխատանքի դրական փորձ ունի նաև Ներքին Ջեյվայի
կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը։ Այստեղ ամբողջ շեշտը
դրվում է կադրերի ճիշտ տեղադրման, նրանց դաստիարակման և պատասխա-
նատվության բարձրացման վրա։ Պարտիական կազմակերպությունը և կոլտն-
տեսության վարչությունը հարցերը լուծում են համագործակցված, ցուցաբե-
րում միատեսակ և սկզբունքային վերաբերմունք կադրերի գործունեության
գնահատմանը։ Պարտիական բյուրոն և նրա քարտուղար Մելքուշ Սահակյանը
կոմունիստներին, անպարտիական մասնագետներին ակտիվորեն ներգրավել է



հասարակական աշխատանքներում, ընդգրկել նրանց քաղաքական ուսուցման մեջ։ Երբ կոլտնտեսություններում խոսք է լինում կոմունիստ Սարգիս Ջաքարյանի մասին, բոլորն էլ նշում են, որ նա «արդար դատավոր է»։ Լինելով ընկերական դատարանի նախագահ, նա վայելում է աշխատավորության հարգանքն ու համակրանքը։ Պարտբյուրոն և վարչությունը մեծ օգնություն են կազմակերպում նաև պրակտիկ աշխատողների ուսման հարցում։ Բոլոր պրակտիկ ղեկավար աշխատողներն ընդգրկված են ուսումնական հաստատություններում, իսկ բրիգադավարներից մեկն այժմ սովորում է գյուղատնտեսական ինստիտուտի չորրորդ կուրսում։ Պարտիական կազմակերպությանն ու կոլտնտեսության վարչությանը հաջողվել է վերացնել նախկինում տեղ գտած անհաշտությունները, գժտությունները և ստեղծել համերաշխ ու ստեղծագործ մթնոլորտ։ Երրորդ տարին է, ինչ տնտեսությունը մսի, կաթի, ձվի պետական առաջադրանքները կատարում է շուրջ 120 տոկոսով։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների դերի բարձրացման հարցում քիչ գործ չի կատարել ՀԿՊ էջմիածնի շրջկոմը։ Շրջկոմի բյուրոյում հաճախ քննարկվում են պարտկազմակերպությունների հաշվետվություններ, ձեռնարկվել են միջոցառումներ կոմունիստների ուժերը արտադրության ճյուղերում ճիշտ տեղաբաշխելու, պարտիական-պետական կարգապահությունն ամրապնդելու, հակահասարակական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու, կոմունիստների քաղաքական ուսուցումը բարելավելու, կոմունիստների կողմից արված քննադատական դիտողություններին ընթացք տալու համար։ Սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների ուսուցումը բարելավելու նպատակով շրջկոմին կից գործում է միամյա դպրոց։ Վերջերս տեղի ունեցած դպրոցի հերթական պարապմունքը նվիրված էր Աղավնատան կոլտնտեսության պարտկազմակերպության ժողովների նախապատրաստման ու անցկացման և Ներքին Ջեյվայի կոլտնտեսության պարտիական կազմակերպության կողմից կադրերի հետ տարվող աշխատանքի փորձին։

Շրջկոմին կից կազմակերպված և հաջողությամբ գործում է գյուղատնտեսական գիտության ու արտադրության առաջավոր փորձի ուսումնասիրման համալսարան, որտեղ ընդգրկված են պարտկազմակերպության քարտուղարներ, տնտեսության ղեկավարներ, գյուղատնտեսության մասնագետներ։ Ելնելով կոլտնտեսությունների ու սովխոզների առանձնահատկություններից, ձմռան ամիսներին տնտեսություններում կազմակերպվել էին առաջավոր փորձի ուսումնասիրման 14 դպրոց, 42 ագրո-զոո խմբակ, որոնց ղեկավարումը պարտկազմակերպությունները հանձնարարել էին փորձված և անհրաժեշտ գիտելիքներ ունեցող մասնագետների։

Դիմելով այս կամ այն միջոցառմանը, պարտիայի շրջկոմի բյուրոն իր վերաբերմունքն է ցույց տալիս, գնահատում գործերի վիճակը։

Հայթաղի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունում մինչև վերջերս ընկած էր կարգապահությունը։ Տարիներ շարունակ այստեղ արմատավորվել էին անսկզբունքայնությունը, անհոգությունը և թերությունների նկատմամբ հաշտվողական վերաբերմունքը։ Այդպիսի վիճակով էլ հենց պետք է բացատրել, որ չնայած արտադրության մեծ հնարավորություններին, կոլտնտեսությունը տնտեսապես և կազմակերպչորեն ամրապնդված չէ և ետ է մնում շրջանի առաջավոր տնտեսություններից։ Կոմունիստների զգալի մասը հարցերի լուծմանը վերաբերվում էր ելնելով անձնական նեղ շահերից. առանձին մար-

դիկ ձգտում էին իրենց կարծիքը անպայմանորեն թելադրել մյուսներին, գցում էին պարտիական կազմակերպության միասնությունն ու մարտունակությունը: Կտրված լինելով կոլտնտեսային մասսաներից, կոմունիստների մի մասը ոչ միայն չէր գլխավորում աշխատավորների խանդավառությունը, այլև սխալ դիրքի պատճառով հակասության մեջ էր ընկնում անպարտիականների հետ:

Այս ամենը հետևանք էին պարտիական կազմակերպության աշխատանքի թույլ մակարդակին, նրա բյուրոյի ու քարտուղար Ծ. Գևորգյանի անգործությանը: Պարտկազմակերպությունը պահանջկոտություն չէր ցուցաբերում կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու գործում, չէր ունկնդրում և ընթացք տալիս աշխատավորների կողմից առաջ քաշած հարցերին: Այստեղ ցածր էր քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կոմունիստների զգալի մասը պասսիվ էր, չուներ պարտիական հանձնարարություններ, չէր մասնակցում գյուղի քաղաքական և տնտեսական կյանքին, կազմակերպությունը չէր աճում արտադրության առաջավորների հաշվին:

Շրջկոմի բյուրոն խորամուխ լինելով պարտիական կազմակերպությունում տիրող վիճակին, կոնկրետ միջոցառումների դիմեց՝ պարտկազմակերպությունն առողջացնելու և մարտունակ դարձնելու համար: Շրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց սկզբնական պարտկազմակերպություններում և համատեղ միջոցառումների շնորհիվ վիճակն այժմ զգալիորեն բարելավվել է: Կոմունիստներ Բ. Նիկողոսյանը, Ա. Բաղդասարյանը, Ա. Համբարձումյանը ճիշտ եզրակացություն հանելով իրենց հասցեին արված քննադատություններից, վերանայել են իրենց վարքագիծը. այժմ նրանք ակտիվորեն մասնակցում են արտադրության և պարտիական կազմակերպության աշխատանքներին: Որոշ չափով բարելավվել է պարտիական-կազմակերպական աշխատանքը, բարձրացել կոմունիստների ակտիվությունը, արտադրության ճյուղերի ղեկավարների, մասնագետների պատասխանատվությունը, ամրապնդվել է կարգապահությունը: Անշուշտ, այս ամենը նպաստել է տնտեսության ցուցանիշների բարելավմանը: Բավական է նշել, որ անցյալ տարվա համեմատությամբ մսի արտադրանքն ավելացել է 129, ձվինը՝ 200 տոկոսով և մեկ կովի միջին կաթնատվությունը՝ 13 կիլոգրամով:

Բերված օրինակը ցույց է տալիս, որ պարտիայի շրջկոմի կազմակերպական աշխատանքի մակարդակից, նրա բովանդակությունից շատ բան է կախված: Մինչդեռ բազմաթիվ փաստեր ասում են այն մասին, որ ՀԿՊ էջմիածնի շրջկոմը միշտ չէ, որ անհրաժեշտ ու լուրջ ուշադրություն է դարձնում ներպարտիական հարցերին: Հաճախ տարվելով տնտեսական հարցերի լուծումով, շրջկոմն անտեսում է պարտիական կազմակերպական աշխատանքը, թողնում այն երկրորդական պլանի վրա: Շրջկոմի ապարատի աշխատողներին չի կարելի հանդիմանել տեղերում քիչ լինելու համար: Սակայն կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկ-ձեռնարկություններում շրջկոմի ընկերներն ավելի շատ զբաղվում են ֆերմաների, ցանքերի, կուլտուրայի վիճակով, զանազան տվյալներ հավաքելով և քիչ ուշադրություն են նվիրում այն բանին, թե այդ բնագավառների կոնկրետ հարցերի լուծման գործում պարտիական կազմակերպությունն ինչ է արել, ինչպես է պարտիական քաղաքական-մասսայական և կազմակերպական աշխատանքը զուգակցել տնտեսության գործունեության հետ: Միշտ չէ, որ շրջկոմի աշխատողները կազմակերպության քարտուղարին տեղերում սովորեցնում են ներպարտիական հարցերի ճիշտ լուծման ձևերն ու



մեթոդները: Այդ է ցույց տալիս շրջանի կազմակերպությունների մի զգալի մասում պարտիական-կազմակերպական աշխատանքի ցածր մակարդակը:

Ինչպես հայտնի է, պարտիական կազմակերպության աշխատանքի նպատակասլացությունը, հարցերի ժամանակին ու ճիշտ լուծումը կախված են մտածված պլանավորումից: Մինչդեռ այնպիսի խոշոր պարտիական կազմակերպությունների, ինչպիսիք են՝ № 3 և Մասիսի սովխոզների, Արքաթի կոլտնտեսության և մյուսների պարտիական բյուրոները ամիսներով չեն պլանավորում պարտիական աշխատանքը: Արտադրական վարչության պարտբյուրոն այս տարվա 6 ամսում միայն հունիսին է նիստ ունեցել, այն էլ այդ ամսվա աշխատանքի պլանը հաստատելու և պարտիայի շարքերի ընդունելության մի գործ լսելու համար:

Շրջանի մի շարք պարտիական կազմակերպություններում կոպիտ կերպով խախտվում է կանոնադրական այն պահանջը, որ պարտիական ժողովները հրավիրվում են ոչ սակավ, քան ամիսը մեկ անգամ: Պարտիական ժողովները կոմունիստների դաստիարակության դպրոց են: Պարբերաբար հավաքվելով, կոմունիստներն իրենց վերաբերմունքն են ցույց տալիս կյանքի կողմից առաջադրված հարցերին, կոլեկտիվ կերպով ուղիներ են նշում պարտիական կազմակերպությունում և տնտեսությունում վիճակն էլ ավելի բարելավելու համար: Մինչդեռ, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, պարտկազմակերպությունների մի զգալի մասում լուրջ ուշադրություն չի նվիրվում ներպարտիական աշխատանքի կարևորագույն բնագավառներից մեկի՝ ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը: Մի շարք պարտկազմակերպություններում ժողովների կազմակերպական-գաղափարական ցածր մակարդակը շտապողականության և հաճախ էլ ուղղակի ձևական մոտեցման արդյունք է: Բանն այն է, որ շատ հաճախ պարտբյուրոները, նրանց քարտուղարները անհրաժեշտ լրջությամբ չեն մոտենում ժողովների օրակարգերի և զեկուցողի ընտրությանը: Որպես կանոն օրակարգի հարցերի մասին չեն խորհրդակցում, հաշվի չեն առնվում կոմունիստների կարծիքը, քիչ թվով կոմունիստներ ու անպարտիական ակտիվիստներ են ընդգրկվում ժողովների նախապատրաստմանը, իսկ զեկուցողները, անհրաժեշտ պատասխանատվություն չզգալով, հաճախ չեն տալիս քննարկվող հարցի խոր անալիզը, ժողովում հանդես են գալիս իրենց անձնական կարծիքով և ոչ թե պարտբյուրոյի, կամ կոմունիստների կոլեկտիվ կարծիքը հաշվի առնելով: Պատահական չէ, որ այդ զեկուցումներում կազմակերպական-քաղաքական աշխատանքը չի զուգակցվում տնտեսության հարցերի հետ: Ընդունված որոշումներն էլ կրում են վարչական, հրամայողական և ոչ թե կազմակերպող ու մոբիլիզացնող բնույթ: Պարտիական ժողովների նկատմամբ ձևական վերաբերմունքը հանգեցրել է այն բանին, որ մի շարք պարտկազմակերպությունների քարտուղարներ մտածում են միայն ժողովն անցկացնելու և շրջկոմին հաշվետվություն տալու մասին, իսկ թե ինչ օրակարգ է, ինչպիսի որոշում է ընդունված, որքանով այդ ժողովը նպաստեց հարցերի լուծմանը, դարձավ այն կոմունիստների դաստիարակության միջոց, հասավ արդյոք իր նպատակին թե ոչ — այս ամենին անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում:

Շրջանի պարտիական կազմակերպությունների մեծ մասը տարվելով նեղ, տնտեսական հարցերի լուծումով, պարտիական ժողովներում հազվադեպ է քննարկել կոմունիստների կողմից կանոնադրական պահանջների կատարման,

ներպարտիական կյանքի լենինյան նորմերի պահպանման, գաղափարական-դաստիարակչական աշխատանքների դրվածքի, կադրերի գործունեության, երիտասարդության դաստիարակության, կուլտուրայի, կենցաղի հետ առնչվող հարցեր:

Բնական է, որ այսպիսի մոտեցումը աղքատացնում է կազմակերպական աշխատանքի բովանդակությունը, նեղացնում նրա շրջանակները, ցածրացնում՝ մակարդակը: Այս տեսակետից տիպիկ է Արբաթի կոլտնտեսային պարտկազ- մակերպության օրինակը: Այստեղ 28 կոմունիստներից մեծ մասը չունի հանձ- նարարություն: Հաշվետու ժողովից հետո պարտբյուրոն անգործության է մատնված: Պարտիական ժողովների, հատկապես հաշվետու-ընտրական ժողո- վի որոշումները, կոմունիստների քննադատական դիտողությունները մնում են շրջանցված և անհետևանք: Կոմունիստներ Գ. Բաղդասարյանը, Յ. Մեսրոպյանը և ուրիշներ պարտբյուրոյին և նրա քարտուղար Մ. Հակոբյանին բազմիցս քննադատել են ակումբա-գրադարանային աշխատողներին և կոմերիտական կազմակերպությանը անբավարար օգնություն և ղեկավարություն ցույց տալու համար: Այդ նույն հարցերի վերաբերյալ ընդունվել են և որոշումներ, բայց գործը տեղից չի շարժվել: Գյուղատնտեսական աշխատանքների եռուն պահին գրադարանն ու ակումբը շարունակում են հեռու մնալ քաղաքական-մասսայա- կան աշխատանքներից, չի գործում ոչ մի ինքնագործ խումբ: Այստեղ ձախող- վել է քաղաքական ուսուցումը: Պրոպագանդիստի ոչ լուրջ մոտեցման հետևան- քով ամփոփիչ պարապմունքներ համարյա տեղի չեն ունեցել, կոմունիստների մեծ մասը պարզ պատկերացում չունի կոմունիստական ու բանվորական պար- տիաների գործունեության առանձին հարցերի վերաբերյալ:

Ավելի վատ է վիճակը կոմերիտական կազմակերպությունում: Այստեղ այս տարի դեռ ոչ մի կոմերիտական ժողով չի եղել, իսկ փետրվար ամսից չի մուծ- վել անդամավճար, չի գործել քաղխմբակը: Վերջին երեք տարում ինչպես կոմերիտական, այնպես էլ պարտիական կազմակերպություններն ընդունելու- թյուն չեն կատարել:

Պարտիական կազմակերպությունների աշխատանքի ոճի ու մակարդակի վրա իր բացասական ազդեցությունն է թողնում շրջկոմի անհետևողականու- թյունն իր իսկ սեփական որոշումների բախտի նկատմամբ: Շրջկոմի բյուրոն ընդունելով որոշումներ, առանձին դեպքերում հետևողականություն հանդես չի բերում դրանք կազմակերպություններին հասցնելու, կոմունիստներին այդ մա- սին տեղյակ պահելու համար:

1965 թվականի վեց ամիսների ընթացքում № 3 սովխոզի պարտիական կազմակերպությունն ստացել է շրջկոմի վեց որոշում՝ կոմունիստների ուժերի տեղաբաշխման, նրանց ավանգարդային դերի բարձրացման, հանցագործու- թյունների ու հակահասարակական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու և այլ միջոցառումների մասին. սակայն և նրանցից ոչ մեկի մասին կազմա- կերպության անդամները տեղյակ չեն: Այդ նույն բախտն է վիճակվել շրջկոմի 1965 թ. փետրվարի 26-ի՝ «Կոմունիստների քաղաքական ուսուցման վիճակը Արշալույսի և Գեղանիստի սկզբնական պարտիական կազմակերպություննե- րում» որոշմանը: 1965 թվականի ապրիլի 10-ի շրջկոմի բյուրոյի որոշումը՝ Մեծամորի կոլտնտեսության պարտկազմակերպության հաշվետվության վերա- բերյալ, պարտիական ժողովը քննարկել է ուղիղ երեք ամիս անց: Դեռ ավելին, հունիսի 16-ին շրջկոմի բյուրոն հանձնարարում է կոլտնտեսությունների և սով-



խոզների սկզբնական պարտիական կազմակերպություններին մինչև հուլիսի 10-ը ժողովներում քննարկել բրիգադավարների հաշվետվությունները՝ առաջին կիսամյակի աշխատանքների արդյունքների մասին, սակայն այդ որոշումը մինչև օգոստոսի 5-ը դեռ ոչ մի կազմակերպության չէր ուղարկված:

Այս և նման փաստերը խոսում են այն մասին, որ շրջկոմի պատասխանատու աշխատողները հաճախ շատ ժամանակ տրամադրելով հարցերի նախապատրաստմանը, որոշումների նախագծեր, զեկուցագրեր գրելուն, մոռացության են տալիս ընդունված որոշումները տեղ հասցնելու, կոմունիստներին մոբիլիզացնելու և շրջկոմի որոշման կատարումն ապահովելու հարցերը: Իսկ այսպիսի վիճակը արդյունք է շրջկոմի քարտուղարների թույլ պահանջկոտության, ապարատի աշխատանքի դեռևս ցածր կուլտուրայի: Այդ մասին է խոսում թեկուզ այն անտարբերությունը, որ գոյություն ունի պարտիայի շարքերի համալրման և կոմունիստների կողմից թույլ տրված արարքների քննարկման հարցում:

Ինչպես հայտնի է, էջմիածինը ռեսպուբլիկայի խոշոր գյուղատնտեսական շրջաններից է: Այստեղից էլ՝ պարտիայի շրջկոմը պետք է կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացնի այն բանի վրա, որպեսզի պարտիայի շարքերի համալրումը կատարվի կոլտնտեսային, սովխոզային, արդյունաբերական արտադրության առաջավոր, գրագետ կոլտնտեսականների ու բանվորների հաշվին: Մինչդեռ այս տարվա առաջին կիսամյակում պարտշարքերն ընդունվածների միայն 16 տոկոսն են կոլտնտեսականներ և 19 տոկոսը բանվորներ: Շրջկոմը պարտիայի շարքերի ընդունելության և կոմունիստների անձնական գործերի քննարկումը չի դարձնում դաստիարակության միջոց: Ընդհակառակը, նման հարցերի վերաբերյալ սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումների քննարկումը սիստեմատիկաբար ձգձգելով 6—9 ամիս, գցում է պարտկազմակերպությունների հեղինակությունը, երիտասարդ կոմունիստների մեջ սերմանում թափթփվածություն և պարտիական կարգապահության խախտման տարրեր:

ՍՄԿՊ հոկտեմբերյան, նոյեմբերյան (1964 թ.) և այս տարվա մարտյան պլենումի որոշումներից բխող հիմնական հետևությունը՝ դա պարտիական-կազմակերպական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործումն է, նրա բովանդակության հարստացումը, սկզբնական պարտկազմակերպությունների հեղինակության բարձրացումը: Իսկ այդ խնդիրների հաջող լուծումը կախված է պարտիայի շրջկոմի աշխատանքի ոճից, նրա գործունեության կուլտուրայից: Որքան բարձր է կազմակերպական աշխատանքի մակարդակը, որքան մեծ է ուշադրությունը դեպի ներպարտիական հարցերը, այնքան կուռ, մարտունակ են սկզբնական պարտկազմակերպությունները:

Վ. ՎԱՐԴԱՆՈՎ
ՀԿՊ Կենտկոմի կազմակերպական-պարտիական աշխատանքի բաժնի տեսուչ



# ՆԱԽՆԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ ԵՎ «ՑՈՒՑԱԿՆԵՐՈՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆԸ»

## (ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՆԱՄԱԿՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ)

Խմբագրությանն ուղղված մի շարք նամակներում տարակուսանք է արտահայտվում, թե նպատակահարմա՞ր է արդյոք հաշվետու-ընտրական ժողովների ժամանակ ցեխային պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություններ հրավիրել ընտրովի պարտիական օրգանի կազմի թեկնածուների նախնական քննարկման համար։ Որոշ ընկերներ ուղղակի գտնում են, որ դա դեմոկրատիայի խախտում է, կոմունիստների իրավունքների սահմանափակում և այլն։ «Իմ կարծիքով,— գրում է Չերեմխովո քաղաքից «Օբյեդինյոննայա» հանքի հանքափոր Ս. Զագումյոննին,— ամեն մի ընտրություն՝ գործարանային, հանքահորային թե ցեխային, պետք է կատարվի առանց նախօրոք պատրաստած թերթիկների։ Չէ՞ որ մենք հանքահորում տարիներով ճանաչում ենք իրար։ Բոլորս միասին, և՛ ղեկավարները, և՛ բանվորները մեկ նպատակ ունենք և միասնաբար պայքարում ենք նրա համար։ Ուրեմն էլ ինչո՞ւ մենք պարտկոմի անդամ չպիտի ընտրենք նրան, ում ցանկանում ենք, այլ նրան, ում առաջարկում են»։

Ըստ էության նույն հարցն է դնում նաև Վոլգոգրադի մարզի Ռուդնյայավանից ՍՄԿԿ անդամ Ա. Սմիրնովան, բայց արդեն պարտիական կոնֆերանսների վերաբերյալ։ Նրա կարծիքով թեկնածուների նախնական քննարկման պրակտիկան այժմ այնպիսին է, որ ստացվում է ոչ թե դեմոկրատիա, այլ սոսկ ձևականություն։ «Գաղտնի քվեարկության ցուցակները մշակվում են նախապես։ Շատ կոմունիստներ բոլորովին չեն իմանում, թե ում են ձայն տալիս։ Ցուցակները քննարկվում են շտապ, վազքով։ «Բացարկներ չկա՞ն»,—հարցնում են նախագահությունից, և իսկույն դահլիճից հնչում է՝ «Ոչ», և անցնում են առաջ։ Եվ երբեք չի պատահում, որ ընտրեն մեկին, որը նախնական ցուցակի մեջ չի մտել, բայց արժանի է ընտրվելու»։ Ահա նամակի հեղինակը գրում է, որ փաստորեն դելեգատների երկու երրորդը քվեարկությանը մասնակցում է ձևականորեն, քանի որ թեկնածուներին ինչպես հարկն է ծանոթանում և նրանց օգտին քվեարկում են միայն «ավագների խորհրդի» անդամները, որոնք կազմում են դելեգատների մեկ երրորդ մասը։

Այս և նույնանման նամակների կապակցությամբ պետք է ասել հետևյալը։ Բյուրոների և պարտիական կոմիտեների կազմում թեկնածուների հարցի նախնական քննարկման համար ցեխային կազմակերպությունների ներկայացուցիչների և դելեգատների ներկայացուցիչների խորհրդակցությունների հրավիրումը նախատեսված է ՍՄԿԿ Կենտկոմի «Պարտիական ղեկավար օրգանների ընտրություններ անցկացնելու մասին» հրահանգում։ Արդյոք այդ նշանակո՞ւմ է, թե ներկայացուցիչների խորհրդակցություններ հրավիրելը պարտադիր է, թե դրանք հարկավոր են միշտ և ամենուրեք։ Եթե խոսքը վերաբերում է հաշվետու-ընտրական ժողովներին, ապա այդպիսի խորհրդակցություններ կարող են հրավիրվել միայն հենց ժողովի մասնակիցների որոշմամբ։ Հենց իրենց՝ կոմունիստների գործն է որոշել, թե արժե՞ արդյոք նախապես խորհրդակցել թեկնածությունների մասին, թե՞ դրանց կարելի է առաջադրել հենց ժողովում։ Ինչպես հայտնի է, հրահանգի մեջ խոսվում է ցեխային կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություններ հրավիրելու մասին։ Սրանով ընդգծվում է երկու հանգամանք. առաջին՝ այդպիսի պրակտիկան կիրառելի է միայն խոշոր սկզբնական պարտիական կազմակերպություններում, որոնց ներսում կան ցեխային (կամ նրանց հավասարեցված) կազմակերպություններ, երկրորդ՝ հրավիրվում են ոչ թե ինչ-որ մեկի կողմից կամ ինչ-որ ձևով նախապես ջոկված «ավագների խորհուրդներ», «ակտիվ խորհրդակցություններ», այլ այն մարդիկ, որոնց ընտրում են հենց ժողովները և հենց ժողովների սահմանած թվով։ Թերևս փոքր պարտկազմակերպություններում, որտեղ կոմունիստները լավ ճանաչում են միմյանց, եթե նույնիսկ այնտեղ ցեխային բաժանմունքներ գոյություն ունեն, նախնական խորհրդակցությունների անհրաժեշտություն չկա։ Այստեղ թեկնածուների առաջադրումն ու քննարկումը կարելի է հաջողությամբ կատարել նաև հենց ժողովում։ Բայց այն պարտիական կոլեկտիվներում, որտեղ կոմունիստների թիվը հարյուրների ու հազարների է հասնում, ցեխային պարտկազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություններում թեկնածությունների նախնական քննարկումը որոշակի իմաստ ունի, քանի որ դա հնարավորություն է տալիս ընտրություններ կատարել ավելի կազմակերպված, առանց ժամանակի ավելորդ կորստի, հնարավոր է դառնում ավելի մանրամասն կշռադատել հնարավոր թեկնածությունների արժանիքներն ու թերությունները և դրանով իսկ ժողովի (կոնֆերանսի) համար դյուրացնել ղեկավար օրգանի ընտրությունը։

Դելեգատների ներկայացուցիչների խորհրդակցությունների գումարումն առավել ևս նպատակահարմար է շրջանային, քաղաքային, մարզային և այլ կոնֆերանսներում։ Ի դեպ, ասենք, որ սրան համաձայն է տվյալ հարցի վերաբերյալ գրված նամակների հեղինակների մեծ մասը. օրինակ, Կրասնոյարսկ քաղաքից ընկ. Զուգունովը գրում է. «Այս դեպքում տերիտորիալ ցրվածության պատճառով մարդիկ լավ չեն ճանաչում իրար, և այստեղ հարկավոր է խորհրդակցել դելեգատների հետ, կոնֆերանս մտցնել մի ինչ-որ համաձայնեցված կարծիք»։ Սակայն վերը նշված ընկ. Սմիրնովայի նամակում, ինչպես և ներկայացուցիչների խորհրդակցություններին դեմ եղող ուրիշ ընկերների նամակներում բերվում է այսպիսի մի պատճառաբանություն. Նախնական քննարկման պատճառով պարտիական օրգանների կազմի մեջ հեղինակավոր, ակտիվ կոմունիստներ չեն ընկնում։ Եվ չեն ընկնում որպես թե միայն նրա համար, որ նախնական ցուցակների մեջ չեն մտցվում։

Բայց այդպե՞ս է արդյոք։ Թեկնածությունների նախնական քննարկումը խոչընդո՞տ է հանդիսանում արժանավոր ընկերներին ղեկավար օրգաններում ընտրելու գործին։ Մեր կարծիքով, միանգամայն հակառակը։ Պարտիայի լավ,

ակտիվ, բանիմաց անդամներ մենք շատ ունենք։ Եվ կոմունիստները որքան ավելի ակտիվ են ներգրավվում պարտիական աշխատանքի մեջ, այնքան ավելի արագ է աճում նրանց գաղափարական-քաղաքական մակարդակը, այնքան ավելի է ընդլայնվում պատրաստված կադրերի շրջանը։ Այսպիսի դեպքերում նախնական քննարկումը հնարավորություն է տալիս ընդունակ, հասուն կոմունիստների մասսայից ջոկել այնպիսիներին, որոնք լավագույն ձևով կարող են աշխատել տվյալ պայմաններում, տվյալ կազմի հետ։ Չի կարելի մոռանալ նաև, որ պարտիական աշխատանքը բազմակողմանի աշխատանք է։ Եվ որքան ավելի խնամքով կազմվի պարտիական օրգանը, այնքան ավելի մեծ վստահություն կլինի նրա աշխատանքի հաջողության։ Ուշադիր մոտեցումը հնարավորություն է տալիս խուսափել այնպիսի անցանկալի երևույթներից, ինչպիսիք են առաջքաշման ռեզերվի բացակայությունը, կոոպերացիան և այլն։ Բացի դրանից,— գրում է մեզ Աֆանասևը Իվանովո քաղաքից,—նախնական քննարկումը հնարավորություն է տալիս ավելի ճիշտ դասավորել պարտիական ուժերը, խուսափել այն բանից, որ «ՍՄԿՊ միևնույն անդամներից շատերը, մանավանդ ձեռնարկությունների, հիմնարկությունների ղեկավարներից շատերը ընտրվում են զանազան ղեկավար օրգանների կազմի մեջ»։

Այստեղ անհրաժեշտ է պատասխան տալ մեր ընթերցողներից ոմանց հարցին. արդյոք կոնֆերանսներում պարտադի՞ր է վերոհիշյալ պրոցեդուրան։ Ոչ, պարտադիր չէ։ Կոնֆերանսի նախագահությունն ինքն է որոշում՝ կիրառել այն թե ոչ։ Բայց նախագահությունը չպետք է ձևականորեն մոտենա այդ իրավունքի օգտագործմանը։ Ճիշտ չեն վարվել Ստեփանակերտի քաղաքային պարտիական կոնֆերանսում (Լեռնային Ղարաբաղի ավտոնոմ մարզ), երբ նախագահությունն առանց քվեարկության դնելու պարզապես մերժել է դելեգատ Գ. Սահակյանի առաջարկությունը քաղկոմի կազմի թեկնածությունները ուղղակի կոնֆերանսում առաջադրելու մասին, առանց դելեգատների ներկայացուցիչների խորհրդակցություն գումարելու։ Ընկ. Սահակյանն իր նամակում իրավացիորեն նշում է, թե որքան ավելի ճիշտ ու օգտակար կլիներ հենց կոնֆերանսին հնարավորություն տալ որոշելու, ընդունելի՞ է նրա առաջարկությունը, թե ոչ։

Բազմամյա փորձը ցույց է տալիս, որ թեկնածությունների նախնական քննարկումը նպատակահարմար, օգտակար միջոց է։ Ներկայացուցիչների խորհրդակցությունը դյուրացնում է կոնֆերանսի աշխատանքը, հնարավորություն է տալիս ավելի կազմակերպված կատարել թեկնածությունների ընտրությունը քննարկման համար։

Գուցե թեկնածությունների նախնական նշումը կապո՞ւմ է դելեգատների ձեռքն ու ոտքը, կաշկանդո՞ւմ է նրանց նախաձեռնությունը, ինչպես փորձում են պնդել որոշ նամակների հեղինակները։ Քննենք այս հարցը։ Ընտրովի օրգանի թվական ու անձնական կազմի մասին առաջարկություններ արվում են ժողովում (կոնֆերանսում)՝ ցեխային կազմակերպությունների ներկայացուցիչների (դելեգացիաների) խորհրդակցության անունից։ Իսկ հետո արդեն ժողովի (կոնֆերանսի) գործն է՝ համաձայնել ներկայացված նկատառումներին թե ոչ։ Չէ՞ որ խորհրդակցության առաջարկությունները նախնական են։ Դրանք քննարկվում և հաստատվում են ժողովում (կոնֆերանսում)։ Կանոնադրությունը պաշտպանում է կոմունիստների շահերն ու իրավունքները։ Այնտեղ գրված



է. «Պարտիայի բոլոր անդամներն ընտրությունների ժամանակ անսահմանափակ իրավունք ունեն բացարկ տալու թեկնածուներին և քննադատելու վերջիններիս»։ Ժողովում կամ կոնֆերանսում թեկնածություններ առաջադրելիս ու քննարկելիս պարտիական օրգանի նոր կազմի թեկնածությունների ոչ մի նախնական առաջադրում չի սահմանափակում ժողովի մասնակիցների, կոնֆերանսի դելեգատների իրավունքները, որոնք մասնակցել են նախնական խորհրդակցություններին։ Ճիշտ չեն վարվում այն ղեկավարները, որոնք դելեգացիաների խորհրդակցությունը վերջացնելիս նրա մասնակիցներին են դիմում մոտավորապես այսպիսի խոսքերով. «Քանի որ, ընկերներ, մենք այստեղ համաձայնության եկանք, ապա եկեք կոնֆերանսում ևս չնահանջենք այս նախագծումից»։ Քանի դեռ ժողովն ինքը բաց քվեարկությամբ չի որոշել դադարեցնել թեկնածությունների առաջադրումը կամ այս կամ այն թեկնածության քննարկումը, ամեն մի կոմունիստի պետք է հնարավորություն տրվի իր ուզած առաջարկությունն անելու։ Միայն ժողովը, կոնֆերանսն իրավունք ունի մերժելու կամ ընդունելու այն։

Այսպիսի դեմոկրատական կարգ պահպանելու են կոչված նախ և առաջ նրանք, ում հանձնարարված է վարել ժողովը, կոնֆերանսը, այսինքն նախագահությունները։ Եվ վատ է, երբ նախագահողի մեջ երևում է «գործը շուտ պրծնելու», քննարկումը կարճ կապելու ձգտում։ Չպետք է վախենալ հարցերից, կարծիքների բախումներից, անկեղծ ելույթներից ու գնահատականներից։ Շիտակությունը չի վնասում մեր պարտիական գործին, այլ, ընդհակառակը, օգնում է նրան։ Թեկնածությունները «վզին փաթաթելու» մասին ամենից ավելի շատ խոսակցություններ են ծագում հենց այնտեղ, որտեղ փորձեր են արվում գլուխ պրծացնել բացատրություններից ու քննարկումներից, որտեղ խուճապային վախ են զգում մի ավելորդ թեկնածությունից։ Ահա մի հետաքրքիր պատկեր. «Երբ ես նախապես նշված տասնմեկ ընկերներին լրացուցիչ թեկնածություն առաջադրեցի,— գրում է ՍՄԿՊ անդամ ընկ. Զուգանովը «Սիբտյաժմաշ» գործարանից,— ժողովին նախագահողն ինձ հարց տվեց. «Իսկ դուք ո՞ւմ եք առաջարկում ջնջել»։

Երևում է՝ ոմանց գլխում չի նստում այն միտքը, որ ցուցակում կարող են ավելի շատ թեկնածություններ լինել, քան սահմանված է ընտրել ղեկավար օրգանի կազմում։ Նույնանման բան է ասված նաև կոմունիստներ Ա. Ուրոսովի և Խ. Բադախովի նամակում։ Կարաչաևո-Չերկասկի մանկավարժական ինստիտուտում քաղաքային պարտիական կոնֆերանսի դելեգատների ընտրության ցուցակում ավելի շատ թեկնածություններ է առաջադրված եղել, քան պետք է ընտրվեին ըստ ներկայացուցչության նորմաների։ Ոմանք այդպիսի «ազատությունը» գնահատել են որպես ՍՄԿՊ կանոնադրության խախտում։ Վեճ է ծագել, որի ընթացքում պարտիական կազմակերպության քարտուղար Մ. Ակուլովը հայտարարել է, թե ինքը «հեռախոսով խորհրդակցել է ՍՄԿՊ քաղկոմի քարտուղարի հետ և նրանից ցուցում է ստացել գաղտնի քվեարկության համար ցուցակում թողնել ճիշտ այնքան թեկնածություն, որքան դելեգատ որ պիտի ընտրվի»։ Եվ այդպես էլ արվել է։

Ինչպես տեսնում ենք, այս երկու դեպքում էլ ղեկավարները ձգտել են ժողովներն անցկացնել հանգիստ, առանց որևէ «բարդության»։ Բայց այդպիսի մոտեցումը ամենից ավելի քիչ է համապատասխանում գործի շահերին։ Իհարկե, ավելորդ վեճերից, ժամանակի վատնումից պետք է խուսափել։ Բայց այդ

*արվում է իր դիրքի պատճառաբանման, պարզաբանման միջոցով և ոչ թե խոռամանկելու, ճնշելու եղանակով, ոչ թե ներպարտիական կյանքի ընդունված նորմերից հեռանալու։*

*Շատ նամակներում հեղինակները մանրամասնորեն կանգ են առնում հենց կոմունիստների պատասխանատվության վրա հաշվետու-ընտրական ժողովներն ու կոնֆերանսներն անցկացնելու գործում։ Զգալի չափով նրանցից է կախված դեմոկրատական նորմերի, ՍՄԿՊ կանոնադրության ու Կենտկոմի հրահանգի բոլոր պահանջների պահպանումը։ Նրանք պետք է համարձակորեն հանդես գան ինչպես նրանց դեմ, ովքեր կցանկանային վարչարարություն անել, այնպես էլ նրանց դեմ, ովքեր իրենց հանգստության համար, ինչպես գրում է ընկ. Կոմպանեցը (Մոսկվա), «իրենց թշնամիներ չվաստակելու համար» հաշտվում են պարտիական կյանքի նորմերից շեղվելու հետ»։ Կոմունիստը ակտիվ, համարձակ պայքարող է թերությունների դեմ, նա պարտավոր է իր ուժերի չափով ամեն ինչ անել, որպեսզի հեռացնի խոչընդոտները պարտիական դեմոկրատիայի զարգացման ճանապարհից։*

*Պարտիայի քաղկոմը, շրջկոմը իրավունք ունի հաշվետու-ընտրական ժողովից առաջ հետաքրքրվելու, թե կոմունիստներն ինչ կարծիք ունեն ընտրական օրգանի կազմի հնարավոր թեկնածությունների մասին։ Պատահում է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունը կադրերով ամրապնդելու նպատակով վերադաս օրգանները ժողովներին խորհուրդ են տալիս քարտուղար ընտրել այս կամ այն կոմունիստին նույնիսկ ուրիշ պարտկազմակերպությունից։ Առանձին նամակներում այսպիսի պրակտիկան գնահատվում է որպես «միջամտություն» սկզբնական պարտկազմակերպության գործերին, որպես ներպարտիական դեմոկրատիայի խախտում։ Սա սխալ կարծիք է։ Հիմնական պարտականություններից մեկը, որ ՍՄԿՊ կանոնադրությունը դնում է տեղական պարտիական կազմակերպությունների վրա, ղեկավար կադրերի ընտրությունն ու բաշխումն է, սկզբնական պարտկազմակերպությունների գործունեության ղեկավարումը։ Չընդունել շրջկոմի, քաղկոմի, ձեռնարկության պարտկոմի այդ իրավունքը՝ նշանակում է կասկածի տակ առնել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։*

*Իհարկե, վերադաս օրգանների ներկայացուցիչները պետք է ականջ դնեն պարտիական մասսաների ձայնին, չպետք է ճնշեն կոմունիստների ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը։ Դա թույլ չի տա, որ քարտուղարներ և բյուրոյի անդամներ ընտրելիս սխալներ արվեն։ Շատ ճիշտ է ասված Ժդանով քաղաքից ստացված հին կոմունիստուհի Ե. Զակի նամակում, թե հարկավոր է ոչ թե կասկածի տակ առնել պարտիական օրգանների ղեկավար դերը, այլ պրակտիկայից դուրս վանել ղեկավարման գրասենյակային-բյուրոկրատական մեթոդները։ «Ճիշտ կլինի,— գրում է նամակի հեղինակը,— եթե շրջկոմի ներկայացուցիչը գա պարտկազմակերպություն և ոչ միայն քարտուղարի, ոչ միայն դիրեկտորի կամ պարտբյուրոյի անդամների հետ, այլև շարքային կոմունիստների հետ ընկերական զրույց ունենալով իր համար պարզի իրադրությունը և, եթե հարկավոր է, պատրաստ լինի ընտրություններն ուղղելու ճիշտ ճանապարհով»։ Ճշմարիտ է նաև մի ուրիշ դատողություն. ղեկավարների և մասսաների կարծիքների միջև տարբերություններ չեն լինի, եթե ղեկավար օրգանները մշտական սերտ կապ ունենան սկզբնական պարտկազմակերպությունների հետ, լավ իմանան իրադրություններն ու կադրերին։ Միանգամայն անթույլատրելի է վարվել այնպես, ինչպես վարվել են Սարատովի մարզի Կրասնոարմեյսկի շրջանի «Նեկրասովսկի» սովխոզում։ Պարտբյուրոյի քարտուղար Վ. Լոյկոն որպես «դրական փորձ» հաղորդում է. «Մեզ մոտ հաշվետու-ընտրական ժողովից առաջ պարտիական բյուրոյի նիստում նախապես նշվում են ընտրական օրգանում ընտրվելիք թեկնածությունները և ապա կոմունիստներից մեկին հանձնարարվում է ժողովում կարդալ նշված ցուցակը»։ Ընկ. Լոյկոն խորապես մոլորության մեջ է. պարտբյուրոն ոչ մի նախանշված ցուցակ չպետք է դուրս բերի։ Չպետք է լինեն նաև պաշտոնական խորհրդակցություններ, նիստեր, որտեղ ժողովից առաջ բոլոր կոմունիստների համար պարտադիր հանձնարարություններ մշակվեն պարտբյուրոյի կամ պարտկոմի կազմի վերաբերյալ։*



*Տյումենի մարզի Նովի Տազ ավանից ստացված Վ. Կոմեդայի նամակում ժողովի, կոնֆերանսի ընթացքում թեկնածությունների նախնական քննարկումը, ցուցակի կազմումը և նրա քննարկումը ժողովում նույնացվում է «ցուցակներով ընտրության» հետ։ Սա ակնհայտ շփոթություն է։ «Ցուցակներով ընտրությունն» այն է, որ քվեարկվում է բոլոր թեկնածուների ցուցակը ամբողջությամբ. ընտրողը չի կարող իր հայեցողությամբ ցուցակից ջնջել այս կամ այն թեկնածությունը և նորը գրել. նա բոլոր թեկնածուներին ձայն է տալիս միանգամից։ Այս սիստեմը ոչ մի նմանություն չունի ՍՄԿՊ-ում ընդունված ընտրությունների կարգի հետ։ Թեկնածություններն առաջադրվում, քննարկվում և քվեարկվում են առանձին-առանձին։ Ձայների հաշվումը նույնպես կատարվում է ըստ յուրաքանչյուր թեկնածուի առանձին-առանձին։*

*Ուշադրության արժանի է և այն հարցը, որ շոշափվում է ընկ. ընկ. Ալլաբերինովի (Թուրքմենական ՍՍՌ, Կալինինի շրջան) և Լապտևի (Ամուրի մարզի Զեա քաղ.) նամակներում։ Հեղինակները նշում են, թե երբեմն այն իրադրությունը, որի մեջ տեղի է ունենում քվեարկությունը, չի նպաստում կոմունիստների կամքի արտահայտմանը։ Բյուլետենները բաժանելու ժամանակ և քվեարկության ընթացքում որոշ ղեկավարներ, վերադաս պարտիական օրգանների ներկայացուցիչներ տեղավորվում են հաշվիչ հանձնաժողովի կողքին, քվեատուփին մոտիկ և դիտում են քվեարկության ընթացքը։ Թույծ նրանց մտքով էլ չի անցնում թե դա ինչպես է ազդում քվեարկողների վրա, բայց, պարզվում է, որ բացասական ազդեցություն է ունենում։ «Իսկապես,— գրում է ընկ. Ալլաբերինովը,— այդպիսի պայմաններում ամեն մեկը սիրտ չի անում մի կողմ քաշվել, ջնջել թեկնածուի անունը կամ նորն ավելացնել»։ Իհարկե, կոմունիստին վայել չէ ավելորդ երկչոտություն ու անվճռականություն ցուցաբերել։ Բայց, համենայն դեպս, աղնիվ հանձնաժողովի պարտքն է հոգալ, որ քվեարկության շենքում ճխլտոց չլինի, որ բյուլետենները բաժանելու տեղում, քվեատուփերի մոտ ոչ մի «հսկիչ» չլինի։ Միշտ էլ հնարավոր է, ժողովի տեղի պայմաններից ելնելով, հարկ եղած իրադրությունն ստեղծել։*

«Партийная жизнь»,
№ 14, 1965 г.



## ՊԱՐՏԻԱՅԻ ՄԱՍԻՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ

«Օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցին» *վերտառության տակ* «Партийная жизнь» *ամսագրի խմբագրությունն սկսում է տպագրել հոդվածաշար այդ դպրոցի ծրագրով նախատեսված՝* Պարտիայի մասին լենինյան ուսմունքի հիմունքները և պարտիական աշխատանքը կոլեկտիվում *ենթաբաժնով։ Նրա մեջ մտնում է ութ թեմա՝ կոլեկտիվի միջուկը, կոմունիստի կոչումը պարտավորեցնում է, կոմունիստներն ու արտադրությունը, ինչպես է ձևավորվում գաղափարական համոզվածությունը, կոլեկտիվն ու անհատը, թերությունները լռության չմատնել, այլ բացահայտ քննադատել, որպեսզի ավանգարդը կապված լինի մասսաների հետ, լենինյան սկզբունքների հիման վրա։*

Պարտիայի մասին լենինյան ուսմունքի հիմունքները և պարտիական աշխատանքը կոլեկտիվում *դասընթացին հատկացվում է 16 ժամ՝ յուրաքանչյուր թեմային երկու ժամ։ Ուսումնական պլանի*[1] *համաձայն դրա ուսումնասիրությունն սկսվում և ավարտվում է ուսման առաջին տարում։ Պարապմունքներն անցկացվելու են զրույցի ձևով։ Այդ հնարավորություն կընձեռի, որ ունկնդիրները համառ և ինքնուրույն աշխատանք կատարեն տվյալ ենթաբաժնի գծով ուսումնական պլանում նախատեսված պրոբլեմների վրա, իսկ ղեկավարները՝ լուրջ կերպով նախապատրաստվեն յուրաքանչյուր պարապմունքի։*

*Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ կոլեկտիվում պարտիական աշխատանքի հարցերի ուսումնասիրությունը պարտիական ուսուցման սիստեմում մտցվում է առաջին անգամ։ Այդ, բնականաբար, պարտիական կազմակերպությունների առաջ դնում է լրացուցիչ պահանջներ։ Այդ դասընթացի նպատակն է՝ ունկնդիրներին պատկերացում տալ պարտիական շինարարության հիմունքների և պարտիական սկզբնական կազմակերպությունների բազմակողմանի գործունեության մասին։ Կարևոր է, որ ուսման պրոցեսում բարձրանա կոմունիստների հասարակական ակտիվությունը, նրանց պատասխանատվությունը իրենց կոլեկտիվի գործերի նկատմամբ։*

*Հասկանալի է, որ նման կարևոր և միաժամանակ առանձնահատուկ ենթաբաժնի վերաբերյալ պարապմունքները պետք է անցկացնեն որակյալ ու պարտիական գործին լավ ծանոթ պրոպագանդիստները։ Դասընթացի նոր լինելը նրանցից ոմանց մոտ կարող է առաջացնել որոշ դժվարություններ, հատկապես սկզբնական շրջանում։ Այդ պատճառով պարտիական կազմակերպությունները պարապմունքների հենց առաջին օրվանից պետք է առավելագույն ուշադրություն նվիրեն* Պարտիայի մասին լենինյան ուսմունքի հիմունքները և պարտիական աշխատանքը կոլեկտիվում *ենթաբաժինն անցկացնող պրոպագանդիստներին։ Անհրաժեշտ է նրանց խորհուրդներ տալ, թե ինչպես կազմակերպել զրույցները, ինչպես ուսումնասիրվող թեմաները կապել իրենց պարտիական կազմակերպության աշխատանքի հետ։ Օգտակար կլիներ ընդհանրացնել հենց առաջին՝* Կոլեկտիվի միջուկը *թեմայի գծով անցկացված զրույցի արդյունքները։ Դա պարտբյուրոյին (կոմիտեին) կհուշի, թե ինչպիսի միջոցառումներ են հարկավոր իրագործել, որպեսզի ապահովվի պարապմունքների բարձր մակարդակը։ Զուցե անհրաժեշտ լինի պարտլուս կաբինետում կազմակերպել հատուկ կոնսուլտացիաներ, պարտբյուրոյում (կոմիտեում) հանդիպել պրոպագանդիստների հետ, օգնել ձեռք բերելու պարտիական շինարարության պրոբլեմների վերաբերյալ նոր գրականություն և այլն։*

---

[1] Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի օրինակելի ուսումնական պլանը հրատարակվել է *«Партийная жизнь»* ամսագրի № 16-ում։



*Հոդվածաշարը, որի հրատարակմանը ձեռնամուխ է եղել* «Партийная жизнь» *ամսագրի խմբագրությունը, նպատակ ունի սիստեմավորված ձևով լուսաբանել հիշյալ ենթաբաժնի կյանքի հետ սերտորեն կապված բոլոր թեմաների սկզբունքային հարցերը։ Նրանցում կնշվեն, թե այս կամ այն պրոբլեմն ինչպես է լուսաբանվում Վ. Ի. Լենինի աշխատություններում, ՍՄԿՊ համագումարների և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներում, մեր պարտիայի ծրագրում ու կանոնադրությունում, ինչպես նաև յուրաքանչյուր թեմայի վերաբերյալ հիմնական գրականությունը։ Հոդվածների գլխավոր նպատակն է՝ օգնել պրոպագանդիստին և ունկնդիրներին լավ նախապատրաստվել զրույցներին։ Ամսագրի այս համարում ընթերցողին է ներկայացվում առաջին հոդվածը։*

## ԿՈԼԵԿՏԻՎԻ ՄԻՋՈՒԿԸ

Ե. ԲՈՒԳԱԵՎ

*Պարտիայի մեջ ընդունվելով, մարդը կամավոր կերպով իր վրա պարտավորություն է վերցնում պայքարել նրա նպատակների իրագործման համար։ Բանվոր դասակարգի պարտիայի՝ կոմունիստական պարտիայի վերջնական նպատակը կոմունիզմի կառուցումն է։ Մեր երկրում այդ արդեն անմիջական պրակտիկ խնդիր է։ Հետևապես, յուրաքանչյուր կոմունիստի համար գլխավորը կոմունիզմի կառուցումն է։ Սակայն կոմունիստները կազմում են միայն ժողովրդի ոչ մեծ մասը։ Սխալ կլիներ կարծել, թե նրանք միայն իրենց սեփական ձեռքերով կկարողանան կատարել պատմական այդ մեծ խնդիրը։ Սակայն կոմունիստներն ունեն այնպիսի մի բան, որը տասնապատկում է թե նրանցից յուրաքանչյուրի և թե ամբողջ պարտիայի ուժը։ Դա այն է, որ պարտիան իր շարքերն է ընդունում ժողովրդի ներկայացուցիչներից առավել առաջավորներին և գիտակիցներին, գիտականորեն արտահայտում ամենախոր համաժողովրդական շահերը, որ կոմունիստները գործում են ոչ թե առանձին-առանձին, այլ կազմակերպված, որ նրանց կազմակերպություններն աշխատում են աշխատավոր մասսաների մեջ և նրանց հետ միասին՝ ամենուրեք, ուր ստեղծվում են հասարակության նյութական և հոգևոր արժեքները։ «Առանց գործունեության ամենատարբեր ասպարեզներում ոչ-կոմունիստների հետ դաշնակցելու,— սովորեցնում էր Վ. Ի. Լենինը,— խոսք անգամ չի կարող լինել որևէ հաջող կոմունիստական շինարարության մասին» (Երկեր, հ. 33, էջ 266—267)*։*

*ՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳԱՌԱՎԱՆՆ Է*

*Պատմական փորձը հաստատել է, որ աշխատավոր մասսաների ղեկավարությունը բանվոր դասակարգի կողմից, որի ավանգարդը հանդիսանում է մարքս-լենինյան պարտիան,— սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարի համընդհանուր օրինաչափություն է։*

*Այդ գաղափարն առաջին անգամ առաջ են քաշել ու հիմնավորել Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը իրենց* Կոմունիստական պարտիայի մանիֆեստ-*ում (1848 թվական)։ Աշխատության մեջ նրանք պարտիան դիտում են որպես բանվոր դասակարգի առաջադեմ, առավել ռևոլյուցիոն մասը, որը տիրապետում է հասարակության զարգացման օրենքներին, պարզ պատկերացնում ու պաշտպանում է ամբողջությամբ վերցրած պրոլետարիատի ինտերնացիոնալ շահերը, նրա պայքարի վերջնական նպատակը։ Նրանք պարտիան դիտում են որպես խիստ դասակարգային, սակայն սեկտանտական ինքնամփոփությունից զերծ կազմակերպություն։*

*Պատմական նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում, Վ. Ի. Լենինը զարգացրեց ու ավելի առաջ մղեց պարտիայի վերաբերյալ մարքսիստական ուսմունքը, բազմակողմանիորեն հիմնավորեց պարտիայի դերը որպես բանվորական շարժումը ռևոլյուցիոնականացնող, ղեկավարող և կազմակերպող ուժ, պրոլետարիատի դասակարգա-*

---

** Այստեղ և հետագայում մեջբերումները կատարվում են չորրորդ հրատարակությունից։*

յին կազմակերպության բարձրագույն ձև, որը կոչված է ղեկավարելու պրոլետարիատի բոլոր մյուս կազմակերպությունները։ Նա ցույց տվեց, որ պարտիան իր այդ դերը չի կարող կատարել, եթե նա չի տիրապետում գիտական ռևոլյուցիոն տեսությանը, որ նա պետք է լինի բանվոր դասակարգի գիտակից մասը, մասսաների տարերային շարժման մեջ մտցնի սոցիալիստական գիտակցությունը։ Ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի գործունեության արմատական հատկանիշներից մեկը և անհրաժեշտ պայմանը հանդիսանում է մարքս-լենինյան տեսությանը հարազատ մնալը, ռևոլյուցիոն պայքարի փորձի հիման վրա նրա ստեղծագործական զարգացումը, անհաշտելիությունը դեպի ռևիզիոնիստական և դոգմատիկական խեղաթյուրումները։

Պարտիան, սովորեցնում էր Լենինը, բանվոր դասակարգի ոչ միայն առաջավոր, գիտակից ջոկատն է։ Նա նաև կազմակերպված ջոկատն է՝ կապված կամքի միասնությամբ, գործունեության միասնությամբ, կարգապահության միասնությամբ։

«Առաջավոր ջոկատի գիտակցականությունը հենց, ի միջի այլոց, նրանում է արտահայտվում,— գրում է Լենինը,— որ նա կարողանում է կազմակերպվել։ Իսկ կազմակերպվելով՝ նա ստանում է միասնական կամք, և այդ առաջավոր հազարի, հարյուր հազարի, միլիոնի միասնական կամքը դառնում է դասակարգի կամքը» (Երկեր, հ. 19, էջ 503)։

Լենինը գտնում է, որ պարտիայի կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքը կարող է լինել միայն դեմոկրատական ցենտրալիզմը։ Պարտիայի մեջ խստագույն կարգապահությունը, մատնանշում էր Լենինը, պետք է զուգակցվի ներպարտիական դեմոկրատիայի լայն զարգացման հետ, ապահովելով մտքերի ազատ փոխանակման, պարտիական աշխատանքի ու պարտիական քաղաքականության հարցերի քննարկման համար պայմաններ։ «Գործողությունների միասնականություն, քննարկման և քննադատության ազատություն...» (Երկեր, հ. 11, էջ 395),— այսպես է Լենինը սահմանում պարտիական կարգապահության հասկացությունն ու նրա նշանակությունը։

Կենտրոնացված ղեկավարությունն ու ամուր կարգապահությունը օրգանական միասնությամբ կապված լինելով ընտրովիության ու պարտիական կազմակերպությունների առաջ պարտիական օրգանների հաշվետվության, ղեկավարման կոլեկտիվության, պարտիայի բոլոր անդամների ակտիվության ու նախաձեռնության զարգացման հետ, պարտիային հնարավորություն են տալիս գործել ներդաշնակ, արագ վերադասավորել իր շարքերը՝ նոր խնդիրների իրագործման համար։ Ամեն մի ֆրակցիոնականություն, միասնականորեն ընդունված որոշումներին չենթարկվելու ցանկություն անհամատեղելի է պարտիականության հետ։

Լենինը պարտիան դիտում էր որպես բանվոր դասակարգի լայն մասսաների հետ առաջավոր ջոկատի կապի մարմնավորում։ Պարտիան բանվոր դասակարգի ավանգարդն է։ Սակայն միայն ավանգարդով, մատնանշում էր Լենինը, անհնար է հաղթել։ «Ավանգարդը միայն այն ժամանակ է կատարում ավանգարդի խնդիրները, երբ նա կարողանում է չկտրվել իր ղեկավարած մասսայից, այլ իսկապես առաջ տանել ամբողջ մասսային» (Երկեր, հ. 33, էջ 266)։

Իր պատմական միսիան իրագործելու համար բանվոր դասակարգը օգնության կարիք է զգում աշխատավորության ոչ պրոլետարական մասսաների կողմից, վերջիններս էլ իրենց ազատագրական պայքարում զգում են բանվոր դասակարգի ու նրա ավանգարդի՝ պարտիայի կողմից ղեկավարության կարիքը։

Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «Դաստիարակելով բանվորական պարտիան՝ մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդը, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին դեպի սոցիալիզմ առաջնորդելու, կազմակերպելու և ուղղություն տալու նոր հասարակարգին, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը՝ նրանց հասարակական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում» (Երկեր հ. 25, էջ 521)։

Սոցիալիզմի կառուցման ու ամրապնդման պայքարի ընթացքում, երբ աշ-



խատավորության բոլոր ոչ պրոլետարական խավերն ավելի ու ավելի էին համախմբվում բանվոր դասակարգի և նրա պարտիայի շուրջը՝ հանուն ընդհանուր նպատակի՝ կոմունիզմի կառուցման, բանվոր դասակարգի կոմունիստական պարտիան դառնում է ամբողջ ժողովրդի պարտիա, նրա ավանգարդը։ ՍՄԿՊ-ն արդեն թևակոխել է իր զարգացման այդ շրջանը, որի մասին էլ ահա գրված է ծրագրում ու կանոնադրությունում։

Պարտիայի հաջողությունների անհրաժեշտ պայմանը, սովորեցնում էր Լենինը, հանդիսանում է իր թերությունների, թուլությունների ու սխալների համարձակ և բացահայտ քննադատությունը։ Եթե պարտիան, նրա ղեկավարությունը և սկզբնական կազմակերպությունները վախենում են անկեղծ ու բացահայտ կերպով ընդունել իրենց սխալներն ու վրիպումները, դադարում են դրանք նկատել, ապա նրանք կորցնում են այդ սխալներն ուղղելու հնարավորությունը, կորցնում են իրենց նկատմամբ մասսաների տածած վստահությունը, հետևապես նաև մասսաներին ղեկավարելու ընդունակությունը։ «Խոսք չկա, ինքնաքննադատությունն անպայման անհրաժեշտ է ամեն մի կենդանի ու կենսունակ պարտիայի համար։ Ինքնագոհ օպտիմիզմից ավելի գռեհիկ բան չկա»,— գրում է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 8, էջ 575)։

ՍՄԿՊ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թվական) և հաջորդ պլենումների որոշումները դարձյալ ու դարձյալ հաստատում են, որ մեր պարտիան խստորեն հետևում է լենինյան պատգամներին։ Նա իր անդամներին, սովետական մարդկանց դաստիարակում է թերությունների ու սխալների նկատմամբ՝ անկախ նրանից, թե ումից են դրանք գալիս, անհաշտ լինելու, դրանք համարձակ բացահայտելու և վերացնելու պատրաստակամության ոգով։

Կոմունիստական պարտիան միջազգային կոմունիստական շարժման ջոկատներից մեկն է։ Նրան խորթ են ազգային ամեն տեսակ պարփակվածությունն ու սահմանափակությունը։ Նա բարձր է պահում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, պատվով կատարում իր ինտերնացիոնալ պարտքը միջազգային կոմունիստական ու ազգային-ազատագրական շարժման առջև։ Նա հետևողականորեն հանդես է գալիս հանուն բոլոր երկրներում կոմունիստների միասնականության ամրապնդման, պայքարում է այն բոլոր գործողությունների դեմ, որոնք խախտում են այդ միասնականությունը։ «Առաջավոր երկրների ռևոլյուցիոներների և բոլոր կեղեքված ժողովուրդների հետ դաշինք կնքած ընդդեմ ամեն տեսակ և բոլոր իմպերիալիստների— այս է պրոլետարիատի արտաքին քաղաքականությունը» (Երկեր, հ. 25, էջ 93)։

Միջազգային պրոլետարական համերաշխությամբ ներծծված իր ողջ գործունեությամբ ՍՄԿՊ-ն իրագործում է լենինյան այդ քաղաքականությունը, ղեկավարվում է Կոմունիստական պարտիայի մանիֆեստի պատմական կոչով՝ Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

Ինչպես ասված է ՍՍՌՄ կոնստիտուցիայում, կոմունիստական պարտիան հանդիսանում է պետական մյուս բոլոր ու աշխատավորության հասարակական կազմակերպությունների ղեկավար միջուկը։

Ինչո՞ւ հատկապես պարտիան է հանդես գալիս այդ դերում։ Որովհետև միայն պարտիան է, որը, տիրապետելով հասարակության զարգացման օրենքներին և կուտակելով հասարակական նոր կարգերի ստեղծումը ղեկավարելու պրակտիկ վիթխարի փորձ, կարող է իրագործել կոմունիստական շինարարության իսկական գիտական ղեկավարությունը։ Ազատ լինելով գերատեսչական, պրոֆեսիոնալ, տեղայնական որևէ շահերից, օժտված լինելով տասնամյակների պայքարի ընթացքում նվաճած բարձրագույն հեղինակությամբ, պարտիան միավորում է պետական ու հասարակական կազմակերպությունների ջանքերը և դրանք ուղղում միասնական նպատակի իրականացման, ապահովում է կառավարման ամբողջ սիստեմի գործունեությունը հօգուտ կոմունիզմի շինարարության շահերի։ Միայն պարտիան, իր գործունեության մեջ հենվելով մարքս-լենինյան տեսության վրա, կարող է մասսաների պրակտիկ փորձի գիտական ընդհանրացմամբ զարգացնել ու առաջ մղել այն։ Իսկ դա հասարակական առաջադիմության անհրաժեշտ պայմանն է։ Միայն պարտիայի՝ մարքս-լենինյան

աշխարհայացքի կրողի, ուժերը կներեն արմատական հեղաշրջում կատարել միլիոնավոր մարդկանց գիտակցության, հոգեբանության մեջ, դաստիարակել կոմունիստական հասարակարգի մարդուն։

Մի խոսքով, սովետական հասարակության ժամանակակից կյանքի որ կողմն էլ վերցնենք, միանգամայն ակնհայտ է, որ միայն պարտիան կարող է ճիշտ ղեկավարել կոմունիստական շինարարության աշխատանքը, այդ աշխատանքին տալ կազմակերպված, պլանավորված և գիտականորեն հիմնավորված բնույթ։ Հենց դա էլ բնորոշում է հասարակական կյանքում պարտիայի աճող դերը, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում նրա ղեկավար գործունեության նշանակությունը։

Ինչպե՞ս է պարտիան իրագործում իր ղեկավար դերը սովետական հասարակության կյանքում։

**Պարտիան ժողովրդի քաղաքական առաջնորդն է**։ Նրա ղեկավար գործունեության մեջ գլխավորը գիտականորեն հիմնավորված քաղաքականությունն է, զարգացման գիծը։ **Պարտիայի գլխավոր գիծը**, այսինքն, նրա քաղաքականության գլխավոր ուղղությունը, բնորոշում է հասարակության զարգացման յուրաքանչյուր ժամանակաշրջանի հիմնական նպատակը և բոլոր պետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների, ամբողջ սովետական ժողովրդի համար ծառայում է որպես կողմնացույց։ Զարգացման արդի էտապում պարտիայի գլխավոր գիծը մշակված է պարտիայի XX, XXI և XXII համագումարների որոշումներում և իր խտացված արտահայտությունն է գտել ՍՄԿՊ ծրագրում։

Քաղաքական ճիշտ գծի մշակումն ունի վիթխարի նշանակություն։ Սակայն ամենաճիշտ գիծը կմնա միայն որպես ցանկություն, եթե չգտնվի այն ուժը, որը ընդունակ լինի կազմակերպել մասսաներին, ժողովրդին՝ կյանքում այն իրագործելու համար։ Այդպիսի ուժ սովետական հասարակարգում հանդիսանում է կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն, պարտիական օրգանները և պարտիական կազմակերպությունները տեղերում։ «Քաղաքական կամ կազմակերպական ոչ մի կարևոր հարց,—ասում էր Վ. Ի. Լենինը,— մեր ռեսպուբլիկայի մեջ պետական ոչ մի հիմնարկ չի լուծում, առանց պարտիայի Կենտկոմի ղեկավար ցուցումների» (Երկեր, հ. 31, էջ 39)։

Հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա պարտիայի ազդեցությունը, նրա ղեկավար գործունեությունն իրականացվում է ոչ միայն պարտիական օրգանների սիստեմի և պարտիական կազմակերպությունների, այլև սովետական ժողովրդի պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների միջոցով։

Ինչպիսի՞ն է սովետական հասարակության սիստեմում կոմունիստական պարտիայի և աշխատավորության մյուս կազմակերպությունների փոխգործունեության մեխանիզմը։

Պարտիան իրագործում է պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների նկատմամբ **քաղաքական ղեկավարությունը**, սակայն նա իր վրա չի վերցնում անմիջական կառավարման ֆունկցիան։ ՍՄԿՊ կանոնադրության համապատասխան, պարտիական կազմակերպությունները ղեկավարում են սովետները, պրոֆմիությունները, կոմերիտմիությունը և հասարակական մյուս կազմակերպությունները՝ նրանցում եղած պարտիական խմբերի միջոցով։ Պարտիական խմբի մեջ մտնում են բոլոր կոմունիստները՝ համագումարի, կոնֆերանսի, խորհրդակցության կամ ընտրովի օրգանի պատգամավորները, անկախ նրանից, թե որ պարտիական կազմակերպության անդամ են հանդիսանում։ Ստեղծվում են պարտիական խմբեր համագումարի կամ լիազորված ընտրական օրգանների աշխատանքի ամբողջ ժամանակամիջոցի ընթացքում։ «Այդ խմբերի խնդիրն է,—ասված է ՍՄԿՊ կանոնադրության մեջ,—պարտիայի ազդեցության բազմակողմանի ուժեղացումը և նրա քաղաքականության կենսագործումը անպարտիականների շրջանում, պարտիական և պետական կարգապահության ամրապնդումը, պայքարը բյուրոկրատիզմի դեմ, պարտիական և սովետական դիրեկտիվների կատարման ստուգումը»։ Պարտիական խմբերը



ենթարկվում են պարտիական համապատասխան օրգաններին և խստորեն ղեկավարվում են նրանց որոշումներով։

Ի՞նչ ձևով է ապահովվում ամենաառաջավոր մարտիկների ընտրությունը պարտիայի մեջ, նրանց գիտակցականությունն ու ակտիվությունը, կազմակերպվածությունն ու համախմբվածությունը, ամբողջ ժողովրդի հետ առաջավոր ջոկատի սերտ կապը։ Այդ գործում վճռական դերը պատկանում է սկզբնական կազմակերպությանը։

### ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Կոմունիզմի կառուցման միասնական խնդրի բոլոր երեք բաղկացուցիչ մասերը՝ նրա նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, հասարակական նոր հարաբերությունների ձևավորումը, նոր մարդու դաստիարակումը— իրագործվում են աշխատանքի որոշակի բնագավառներում զբաղված ու ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների, ստեղծագործական միությունների և այլ կոլեկտիվներում միավորված կոնկրետ մարդկանց կողմից։ Եվ այդ խնդիրները այնքան հաջող են լուծվում, որքան ակտիվորեն են գործում կոմունիստները, որքան համախմբված ու մարտական են պարտիական կազմակերպությունները, որքան բարձր է կոլեկտիվներում նրանց կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները ստեղծվում են ըստ պարտիայի անդամների աշխատանքի տեղի. ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկներում, ուսումնական հաստատություններում, զորամասերում և այլն, եթե տվյալ կոլեկտիվում աշխատում են պարտիայի երեք անդամից ոչ պակաս։ Ըստ արտադրական հատկանիշի ստեղծվող պարտիական կազմակերպություններից բացի, կարող են ստեղծվել նաև տերիտորիալ սկզբնական պարտկազմակերպություններ՝ ըստ կոմունիստների բնակավայրի (գյուղերում, տնային կառավարչություններում)։ Պարտիական նոր սկզբնական կազմակերպություն ստեղծելու վերաբերյալ որոշում ընդունվում է պարտիայի շրջկոմների կամ քաղկոմների կողմից։

Պարտիան շահագրգռված է, որ ամենուրեք, ուր կան բավարար քանակի պարտանդամներ, նրանք միավորվեն պարտիական կոլեկտիվներում, գործեն որպես կազմակերպված ուժ։ Պարտիայի շարքերի աճման հետ մշտապես աճում է նաև նրա կազմակերպությունների թիվը։ Միայն վերջին երեք տարվա ընթացքում այն աճել է 13 հազարով և 1965 թվականի հունվարի 1-ի տվյալներով կազմել գրեթե 312 հազար։ Ավելորդ չի լինի հիշեցնել, որ 1922 թվականին պարտիայում կային 32 հազարից քիչ ավելի, 1941 թվականին՝ 184 հազար սկզբնական պարտկազմակերպություններ։ 1956 թվականից հետո, երբ կազմակերպությունների թիվը աճել ու հասել էր 350 հազարի և մինչև 1961 թվականը, կոլտնտեսությունների ամրապնդման և զգալի քանակի կառավարող ապարատների լիկվիդացման կապակցությամբ, պարտիայի անդամների աճի հետ միասին տեղի ունեցավ պարտիական կազմակերպությունների թվի կրճատում։ 1961 թվականին այն կազմում էր գրեթե 295 հազար և այդ ժամանակվանից անշեղ աճում է։ Աճում է նաև պարտիական սկզբնական կազմակերպությունների թվային կազմը։ Առ 1-ը հունվարի 1965 թվականի յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկության պարտկազմակերպությունում միջին թվով կային 78, շինարարական օբյեկտի պարտկազմակերպությունում՝ 42, սովխոզում՝ 78, կոլտնտեսությունում՝ 40, գիտական հիմնարկում՝ 86 կոմունիստներ։ Սակայն դրանք միջին թվեր են։ Իսկ պրակտիկայում զանազան արդյունաբերական ձեռնարկությունների պարտկազմակերպություններում կան 5-ից մինչև մի քանի հազար մարդ, ինչպես, օրինակ, Մոսկվայի Լիխաչևի անվան գործարանի պարտկազմակերպությունում կան մոտ 8 հազար կոմունիստներ։

Իհարկե, տասը և հազար կոմունիստ ընդգրկող կազմակերպությունների ներքին կառուցվածքը չի կարող միանման լինել։ Խոշոր ձեռնարկություններում

Այդ մասին վերջերս մի անգամ էլ ՍՄԿԿ Կենտկոմը հիշեցրեց իր՝ «Պարտիայի մեջ ընդունելության և երիտասարդ կոմունիստների դաստիարակման գործում Խարկովի մարզի պարտիական կազմակերպության աշխատանքներում եղած լուրջ թերությունների մասին» որոշման մեջ (տե՛ս «Партийная жизнь», 1965 թ., № 15)։ Նույնիսկ կոմունիստի կոչմանը անարժան մարդկանց պարտիայի մեջ ընդունման առանձին փաստերը վնաս են հասցնում պարտիային, կոլեկտիվի առաջ գցում պարտիական կազմակերպության հեղինակությունը։ Պարտիայի անդամի կոչման ու դերի բարձրացումը, պարտիական շարքերի անաղարտության, գաղափարական և կազմակերպական միասնության պաշտպանությունը, պարտիան պատահական մարդկանցից մաքրելը սկզբնական կազմակերպության կարևորագույն խնդիրն ու ֆունկցիան են։

Պարտիական կազմակերպությունը կոմունիստներին դաստիարակում է պարտիայի մեծ գործին նվիրվածության ոգով, կազմակերպում է մարքս-լենինյան ուսուցումը, որը կոչված է մշակելու կոմունիստական համոզվածություն, գաղափարական սկզբունքայնություն, պարտիական մարտական ոգի։ Նա պարտիայի տեսության մաքրության առաջին պաշտպանն է, առաջին մարտիկը՝ ընդդեմ մարքսիզմ-լենինիզմի ռևիզիոնիստական ամեն մի խեղաթյուրման, ընդդեմ նրա դոգմատիկ մեկնաբանման։

Պարտիական կազմակերպությունը պարտիայի այն օղակն է, ուր ուղղակի և անմիջական գործ է կատարվում աշխատանքում, ինչպես նաև ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության, ուսումնական հաստատության, զինվորական զորամասերի և այլ բնագավառների հասարակական-քաղաքական ու տնտեսական կյանքում կոմունիստի ավանգարդային դերը ապահովելու համար։

Սկզբնական պարտկազմակերպության շարքերում կոմունիստն ակտիվ կերպով մասնակցում է պարտիայի ամբողջ կյանքին։ Պարտիան կամավոր կազմակերպություն է։ Նա ուժեղ է իր անդամների համախմբվածությամբ, ակտիվությամբ և գիտակցականությամբ։ Միայն նա է արժանի պարտիայի անդամի կոչմանը, գրում է Վ. Ի. Լենինը, «ով ուշի-ուշով ուսումնասիրում, խորհում և ինքնուրույն կերպով լուծում է իր պարտիայի հարցերն ու բախտը» (Երկեր, հ. 19, էջ 181)։ Հենց սկզբնական կազմակերպությունն է, որ կոմունիստներին հնարավորություն է ընձեռում խորհել ու լուծել ամբողջ պարտիայի առաջ ծառացած պրոբլեմները, ապահովում է պարտիայի յուրաքանչյուր անդամի փաստացի մասնակցությունը պարտիայի գործերի կառավարմանը։ Դա ձեռք է բերվում նրանով, որ ամենից առաջ այստեղ է, որ կոմունիստն իր կարծիքն է հայտնում պարտիական քաղաքականության ու աշխատանքի ցանկացած հարցի վերաբերյալ, քննադատում է կուսակից իր յուրաքանչյուր ընկերոջը, առանց հաշվի առնելու, թե նա ինչ պաշտոն է վարում։ Հայտնի է, որ միևնույն սկզբնական պարտկազմակերպության մեջ են գտնվում գործարանի դիրեկտորը և բանվորները, կոլտնտեսության նախագահը և կոլտնտեսականները, ակադեմիկոսն ու լաբորանտը, մինիստրն ու հավաքարարը։ Նրանց միջև գոյություն ունի պաշտոնական որոշակի հարաբերություն՝ մեկը իրավունք ունի տալ հրաման ու կարգադրություն անել, մյուսը պարտավոր է դրանք կատարել։ Պարտիական կազմակերպությունում, ինչպես նաև պարտիայում ամբողջապես վերցրած, բոլոր կոմունիստների համար գոյություն ունեն հավասար իրավունքներ ու պարտականություններ, միասնական կարգապահություն։

«Պարտիայի անդամներին տարբերելով միայն ըստ նրանց գիտակցականության, նվիրվածության, կայունության, քաղաքական հասունության, ռևոլյուցիոն փորձառության, անձնազոհություն կատարելու պատրաստակամության աստիճանի,— արձանագրված է IX պարտկոնֆերանսի փաստաթղթերում,— պարտիան պայքարում է ամեն տեսակի փորձերի դեմ՝ տարբերություն դնելու պարտիայի անդամների միջև ըստ որևէ այլ հատկանիշի...» (ՍՄԿՊ-ն բանաձևերում..., I մաս, էջ 645)։

Դա առանձնապես հրատապ է հնչում այժմ, երբ պարտիան իր ծրագրում գրել է. «Որպես կոմունիստական հասարակարգ կառուցող ժողովրդի առաջա-



վոր ջոկատ, պարտիան պետք է առջևից ընթանա նաև իր ներպարտիական կյանքը կազմակերպելու գործում, ցույց տալով կոմունիստական հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևեր մշակելու օրինակ»։ Ծրագրային այդ պահանջը ենթադրում է ներպարտիական դեմոկրատիայի ավելի լայն զարգացում, յուրաքանչյուր պարտկազմակերպությունում իսկական ընկերական պայմանների ստեղծում, որը բացառում է լենինյան որևէ նորմի խախտում։ Այդ նորմերն, իհարկե, մեկընդմիշտ տրված չեն։ Նրանք ձևավորվում, փոփոխվում ու կատարելագործվում են պարտիայի զարգացման հետ միասին։ Սակայն նրանում գլխավորն ու էականը ներպարտիական դեմոկրատիան է՝ բոլորի համար միասնական կարգապահությունը, հաշվետու լինելը, ընտրովիությունն ու ղեկավար աշխատողների փոխելիությունը, ղեկավարման կոլեկտիվությունը, բոլոր կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության զարգացումը, քննարկման ազատությունն ու գործողության միասնականությունը, որոնք մշտապես հանդիսանում են պարտիայի և նրա յուրաքանչյուր կազմակերպության հաջող գործունեության անհրաժեշտ պայմանը։ Սկզբնական պարտկազմակերպությունից է սկսվում պարտիայի բոլոր ղեկավար օրգանների ընտրությունը, որին մասնակցում են բոլոր կոմունիստները։ «...պարտիայի բոլոր գործերը,— գրել է Վ. Ի. Լենինը,— վարում են, ուղղակի կամ ներկայացուցիչների միջոցով, պարտիայի բոլոր անդամները, հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության...» (Երկեր, հ. 11, էջ 546)։ Իհարկե, որոշումներում և ընդհանուր գործերում ու իր կազմակերպության գործերում պարտիայի յուրաքանչյուր անդամի մասնակցության աստիճանը տարբեր է։ Այդ առաջին հերթին կախված է կոմունիստների գիտելիքների մակարդակից և յուրաքանչյուր կազմակերպությունում այնպիսի պայմանների ստեղծումից, որոնք հնարավորություն կտան նրան իր ընդունակությունները առավել նպատակահարմար օգտագործելու պարտիական աշխատանքում։

Պարտիայի անդամների զգալի մասը մասնակցում է պարտիական գործերի ղեկավարմանը, որպես նրա ընտրովի ղեկավար օրգանի անդամ։ Գրեթե 328 հազար անդամներ ու անդամության թեկնածուներ ունեն միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների Կենտկոմները, պարտիայի երկրկոմներն ու մարզկոմները, քաղկոմները, շրջկոմները և համապատասխան պարտկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովները, սկզբնական պարտկազմակերպությունների կոմիտեներն ու բյուրոներն ունեն ավելի քան երկու միլիոն վեց հարյուր հազար անդամներ, քարտուղարներ և նրանց տեղակալներ, պարտկազմակերպիչներ, որոնք պարտիայի կողմից անմիջապես լիազորված են իրենց կազմակերպությունները ղեկավարելու։ Այդ ընտրովի բանակի միայն ոչ մեծ մասն է, որ զբաղվում է բացառապես պարտիական աշխատանքով։ Ընտրովի պարտօրգանների անդամների ճնշող մեծամասնությունն աշխատում է հասարակական սկզբունքներով, պարտիայի հանձնարարությունը կատարում է հիմնական աշխատանքից դուրս, ազատ ժամանակ։

Պարտիական կազմակերպությունում կոմունիստն անցնում է պարտիական աշխատանքի տարրական դպրոցը, կոլեկտիվ կերպով է հարցերը լուծում և պարտիայի առաջ անհատական պատասխանատվություն կրում իրեն հանձնարարված գործի համար։

Հենց սկզբնական կազմակերպությունից է սկսվում լիակատար հրապարակայնության, ընտրականության և ընդհանուր վերահսկողության «բնական ընտրանքը», որը, Վ. Ի. Լենինի խոսքերով՝ «...ապահովում է այն, որ ամեն մի գործիչ վերջի-վերջո «իր տեղն է գրավում», դիմում է իր ուժերի և ընդունակությունների համար ամենահարմար գործի, իր վրա է զգում իր սխալների բոլոր հետևանքները և բոլորի աչքի առջև ապացուցում է՝ սխալները գիտակցելու և նրանցից խուսափելու իր ընդունակությունը» (Երկեր, հ. 5, էջ 638)։

Սկզբնական պարտիական կազմակերպությունը խստորեն հետևում է յուրաքանչյուր կոմունիստի կողմից պարտիական անդամության պարտականությունների կատարմանը։ Միաժամանակ առաջին հերթին նրա միջոցով է իրա-

ղեկավարելու իր գործունեությունը: ՍՄԿՊ XXII համագումարի կողմից ընդունված Կանոնադրությունում ասված է. «Պարտիական կազմակերպությունները չեն փոխարինում սովետական, արհմիութենական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս հասարակական կազմակերպություններին, թույլ չեն տալիս պարտիական և այլ օրգանների ֆունկցիաների շփոթում, ավելորդ զուգահեռականություն՝ աշխատանքի մեջ»:

Պարտիական կազմակերպությունն ի՞նչ ձևով է ազդում աշխատավորության մյուս կազմակերպությունների վրա: Այդ կատարում է նրանցում եղած կոմունիստների, ղեկավար կադրերի ընտրության գործում նրանց օգնություն ցույց տալու, այդ կազմակերպության անդամների շրջանում կոմունիստների կատարած աշխատանքի միջոցով: Համոզումը և կոմունիստների անձնական օրինակը—ահա այն գլխավոր միջոցը, որով պարտիայի գիծն ու նրա դիրեկտիվներն անց են կացվում աշխատավորական բոլոր կազմակերպություններում ու ընկերություններում:

Կոմունիստները պարտիայի կապը մասսաների հետ ամրապնդում են նաև նրանով, որ նրանք հոգատարությամբ են վերաբերվում յուրաքանչյուր մարդու կարիքի ու պահանջի նկատմամբ: Պարտիական բոլոր կազմակերպությունների սրբազան պարտքն է մարդու նկատմամբ հոգատարությունը, նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանների անմիջական բարելավումը, նրանց նյութական բարեկեցության, կուլտուրայի ու կրթության մակարդակի բարձրացումը: «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»—պարտիայի ծրագրային սկզբունքը — պարտկազմակերպության ուղեցույցն է: Այդ վերաբերում է ոչ միայն արդյունաբերության զարգացմանը, բնակարանային շինարարությանը, ոչ միայն փորձանքի մեջ ընկած հարևանին օգնություն ցույց տալուն, այլև մարդկանց գիտակցականության բարձրացմանն ու դաստիարակմանը: ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտիայի յուրաքանչյուր անդամին պարտադրում է անձնական օրինակով, համոզելով հասնել ՍՄԿՊ Ծրագրում և Կանոնադրությունում շարադրված կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի խստիվ կատարմանը՝ կոլեկտիվի բոլոր ընկերների կողմից:

Սկզբնական պարտիական կազմակերպությունը պարտիայի առաջավոր կրակագիծն է բյուրոկրատիզմի, տեղայնության, պետական կարգապահության խախտման դրսևորման դեմ մղվող պայքարում: Յուրաքանչյուր ձեռնարկությունում, հիմնարկում աշխատող պարտիական կոլեկտիվ կոչված է պայքարն ամենից առաջ սկսելու պետությանը խաբելու ամեն տեսակ փորձերի, թափթփվածության, անտնտեսվարության և հափշտակումների դեմ: Եվ հիրավի, միթե կարող է կոլտնտեսության, ձեռնարկության, գիտահետազոտական ինստիտուտի որևէ ղեկավար «աչքակապությամբ» զբաղվել, իր կողմից գլխավորվող տնտեսության կամ գերատեսչության գործունեության արդյունքների մասին ուռցրած հաշվետվություն տալ, եթե պարտիական կազմակերպությունը գտնվում է սկզբունքային, պարտիական դիրքերում: Իհարկե, ոչ: Պարտիական կազմակերպությունը գործի կդնի քննադատության զենքը, օգտվելով իր իրավունքից, որ նա կարող է դիմել ցանկացած պետական կամ պարտիական հիմնարկի, ընդհուպ մինչև ՍՄԿՊ Կենտկոմ, և դեռ սաղմնային վիճակում կկանխի սովետական հասարակության շահերին հակասող ամեն մի գործողություն:

Պարտիական սկզբնական կազմակերպությունը շրջանային, քաղաքային, օկրուգային պարտիական կազմակերպության բաղկացուցիչ մասն է: Նա իր ներկայացուցիչների միջոցով անմիջականորեն մասնակցություն է ցույց տալիս շրջանային (քաղաքային, օկրուգային) պարտիական կոմիտեների ընտրություններին: Նա հաշվետու է պարտիական այդ ընտրովի օրգանների առջև: Սակայն նա պատասխանատվություն է կրում նաև կոմիտեի գործունեության համար և այդ պատճառով պարտավոր է օգնել նրան աշխատանքի բոլոր բնագավառներում: Այդ օգնությունն առաջին հերթին արտահայտվում է նրանում, որ կազմակերպում է պարտիական օրգանների դիրեկտիվների կատարման գործը, կոմիտեի ուշադրությունը հրավիրում կյանքի կողմից առաջ քաշված



հարցերին, ճշգրիտ ինֆորմացիա տալիս կադրերի ընտրության վիճակի մասին:

Պարտիական կազմակերպությունը պարտավոր է խստորեն վերահսկել թե աշխատողներն ինչպես են կատարում պարտիայի և կառավարության դիրեկտիվները: ՍՄԿՊ Կանոնադրությունը արտադրության հետ անմիջապես կապ ունեցող, արտադրական և առևտրի ձեռնարկությունների, սովխոզների, կոլտնտեսությունների, ինչպես նաև նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների, գիտահետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպություններին իրավունք է տվել վերահսկելու ադմինիստրացիայի գործերը: Այդ կազմակերպությունների ղեկավարության ներքո աշխատում են նաև պարտիական-պետական վերահսկողության աջակցող խմբեր:

—Մինիստրությունների և կենտրոնական ու տեղական սովետական այլ հիմնարկների, ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունները այդ իրավունքից չեն օգտվում: Արդյոք դա նշանակո՞ւմ է, թե ադմինիստրացիայի վրա վերահսկելու իրավունք չունեցող պարտիական կազմակերպությունները իրենց հիմնարկի կամ կազմակերպության գործունեության նկատմամբ կողմնակի դիտողի դերում են: Ո՛չ: Նրանք պարտավոր են ակտիվ կերպով ներգործելու և բարելավելու ապարատի աշխատանքը, աշխատակիցներին դաստիարակելու հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով, ամեն կերպ ամրապնդելու պետական կարգապահությունը: Կառավարման ապարատի կոմունիստների կարևորագույն պարտականությունն է՝ պայքար ծավալել բյուրոկրատիզմի և քաշքշուկների դեմ, ինչպես նաև աշխատանքի բարձր կուլտուրայի և բնակչության սպասարկումը ամեն կերպ բարելավելու համար:

ՍՄԿՊ Կանոնադրությունը մինիստրությունների ու գերատեսչությունների պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է ժամանակին տեղյակ պահել համապատասխան պարտիական օրգաններին՝ հիմնարկի և պաշտոնական անձանց, անկախ նրանից, թե ինչպիսի պոստեր են զբաղեցնում նրանք, աշխատանքներում տեղ գտած թերությունների մասին: Շատ բան նրանք կարող են անել պարտիական և պետական վերահսկողությանը աջակցող խմբերի ու պոստերի միջոցով:

Այսպիսով, պարտիայի գործունեության ինչպիսի բնագավառ էլ վերցնելու լինենք, նրանում սկզբնական պարտկազմակերպությունը վիթխարի դեր է կատարում: ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը քննարկելով և հավանություն տալով Կենտկոմի Նախագահության կողմից մշակված՝ ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառումներին, ընդգծեց, որ կյանքում այդ միջոցառումների կայուն ու հետևողական իրագործումը ամենից առաջ կախված է պարտիական կազմակերպությունների ու նրանց ղեկավարների ջանքերից, եռանդից, համառությունից, մասսաներին կազմակերպելու կարողությունից:

Ինչպես նշվեց պլենումում, հատուկ ուշադրություն պետք է դարձնել կոլտնտեսությունների, սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունների ամրապնդման ու նրանց դերի բարձրացման վրա: Նրանք գտնվում են պայքարի առաջավոր գծում, կյանքում անմիջականորեն անց են կացնում պարտիայի քաղաքականությունն ու դիրեկտիվները:

Դա վերաբերում է նաև պարտիայի մնացած բոլոր սկզբնական կազմակերպություններին:

Ահա թե ինչու ՍՄԿՊ Կանոնադրությունը սահմանում է՝ «Պարտիայի հիմքը հանդիսանում է սկզբնական կազմակերպությունը»:



ՍՄԿՊ սկզբնական կազմակերպության խնդիրները մեծ են ու պատասխանատու: Եվ նրանց գործունեության մեջ որքան ճիշտ է զուգակցվում, միաձուլվում քաղաքական և կազմակերպական աշխատանքը, այնքան նրանք ավելի

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սոցիալիստական համագործակցությունը տարբեր երկրների և ժողովուրդների միջև նոր հանրություն է: Սոցիալիստական երկրների հարաբերությունների սկզբունքներն առաջացան որպես սոցիալիզմի՝ մեկ երկրի շրջանակներից դուրս գալու և եղբայրական պետությունների սիստեմի գոյացման բնական արդյունք: Այդ սկզբունքների հիմնական բովանդակությունը՝ անկախ և իրավահավասար սոցիալիստական երկրների միասնությունն ու եղբայրական դաշինքի ամրապնդումը, արտացոլում է հասարակական կյանքի նոր կացութաձևի վարգացման արմատական պահանջմունքները:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումն ու վարգացումը, անշուշտ, երկարատև ու բարդ պրոցես է: Հակամարտության վերացման շնորհիվ ինքնին և ավտոմատ կերպով չէ, որ ազգերի միջև ստեղծվում է ընդհանրություն: Խոսելով կապիտալիստական ճնշումից ազատագրվող տարբեր ժողովուրդների միավորման կոնկրետ ուղիների մասին, Վ. Ի. Լենինը նշել է. «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա: Այդպիսի միությունը չի կարելի միանգամից իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և կգուշությամբ աշխատելով, որպեսզի գործը չփչանա, որպեսզի անվստահություն չառաջանա, որպեսզի վերացվի այն անվստահությունը, որը մնացել է կալվածատերերի և կապիտալիստների դարավոր ճնշումից, մասնավոր սեփականության և դրա բաժանման ու վերաբաժանման համար եղած դարավոր թշնամանքից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 368):

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյության երկու տասնամյակները համոզիչ կերպով հաստատում են լենինյան այս մտքի խորաթափանցությունն ու ճշմարտացիությունը: Սոցիալիզմի երկրների եղբայրական դաշինքը, համախմբվածությունը, միասնությունը ինքնահոսի ձևով, տարերայնորեն չեն ստեղծվում: Դրանց իրոք «հարկավոր է հասնել», դրանք պետք է դարբնել բուրժուական նացիոնալիզմի մնացուկների դեմ, իմպերիալիստական քաղաքագետների ճնշման և մեքենայությունների դեմ սոցիալիստական բոլոր ազգերի բարեկամության և համագործակցության լենինյան գաղափարների հաղթանակի համար մղվող ամենօրյա պայքարում: Այդ խնդրի լուծման բանալին, ժողովուրդների միջև եղբայրական հարաբերությունների ստեղծմանը խանգարող օբյեկտիվ դժվարությունների հաղթահարման բանալին կոմունիստական պարտիաների ճիշտ քաղաքականությունն է, որն իր հիմքում ունի համագործակցության այն ձևերի որոնումներն ու վարգացումը, որոնք առավել լավ են համապատասխանում ստեղծված պայմաններին:

Կարելի է ասել, որ սոցիալիստական համագործակցության պատմությունը, դա սոցիալիստական երկրների համագործակցության ձևերի ու մեթոդների անդուլ կատարելագործման պատմություն է: Այն երկրների համար, որտեղ իշխանության գլուխ են անցել ժողովրդական կանգվածները, սկզբնական շրջանում գլխավորը քաղաքական տեսակետից համախմբվելն էր: Արդեն այն տարիներին սոցիալիստական երկրների ժողովուրդների փոխհարաբերություններում երևան եկավ գլխավոր, վճռական միտումը՝ ջանքերի միավորումը ժողովրդական իշխանության ամրապնդման, քաղաքական-հասարակական կյանքի նոր ձևերի հաստատման համար, իմպերիալիստական մեքենայություններից համատեղ կերպով պաշտպանվելու համար:



Եղբայրական երկրների ջանքերի կոորդինացման պրոցեսը հանդիպեց մի շարք դժվարությունների: Դրանք կապված էին ժողովրդա-դեմոկրատական երիտասարդ պետությունների վարգացման տարբեր մակարդակի հետ, ավանդական ազգային նախապաշարմունքների գոյության հետ: Սոցիալիզմի ուղին թևակոխած ազգերի միջև անցյալում և՛ պատերազմներ են եղել, և՛ սահմաններն են վերափոխվել, բնակչությունը հաճախ վարակվել է շովինիստական ոգով:

Անհրաժեշտ էր, որ կոմունիստները հաշվի նստեին այս փաստերի հետ: Նացիոնալիզմի դրսևորումների, ազգայնական նախապաշարմունքների, էգոիզմի ու սահմանափակվածության դեմ մղվող պայքարը միայն այն ժամանակ կարող էր հաջող լինել, երբ այն մղվեր խելացիորեն: Ազատ, իրավահավասար պետությունների սիստեմի կազմակերպման և վարգացման փորձի բացակայությունը, դեմոկրատական տրադիցիաների բացակայությունը կարելի էր փոխարինել միայն համբերատար, զգույշ, խելացի գործունեությամբ: Միայն պրակտիկ կյանքում կարելի էր մշակել համագործակցության այնպիսի ձևեր, որոնք հնարավորություն տային ազգային շահերը համադրել ամբողջ սոցիալիստական համագործակցության ընդհանուր շահերի հետ:

Լենինի պատգամներին հավատարիմ, սովետական կոմունիստները ոչ ուժ էին խնայում, ոչ միջոցներ՝ սոցիալիստական երիտասարդ պետություններին օգնելու համար, որպեսզի նրանք հաստատապես ոտքի կանգնեն: Մեր երկիրը նրանց տնտեսական մեծ աջակցություն ցույց տվեց, օգնելով բարձրացնելու բնակչության կենսական մակարդակը, վերացնելու նոր հասարակարգի առաջացման հետ կապված դժվարությունները: Տարեցտարի ամրապնդվում էր ազատ ժողովուրդների համագործակցությունը:

Սովետական կառավարությունն սկսեց եղբայրական երկրների հետ կոնսուլտացիաներ անել այն կարևոր հարցերի շուրջ, որոնք համատեղ հետաքրքրություն են ներկայացնում: Եղբայրական պարտիաների և երկրների հարաբերություններում հաստատվեցին իրավահավասարության և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքները: ՍՄԿՊ Կենտկոմի նախաձեռնությամբ նորմալացվեցին հարաբերությունները սոցիալիստական Հարավսլավիայի հետ, վերացվեցին Հարավսլավիայի կոմունիստների միության ղեկավարների դեմ բարդված անհիմն մեղադրանքները: Սովետական կառավարությունը ԳԴՌ-ում, Հունգարիայում, Ռումինիայում, Բուլղարիայում և Չինաստանում վերացրեց բաժնետիրական խառն ընկերությունները, որոնց ակտիվների մի զգալի մասը կամ ամբողջ ակտիվները անվարձահատույց կերպով հանձնվեցին համապատասխան երկրներին: Մեր երկիրը հրաժարվեց Պորտ-Արտուրի և Դալնիի ռազմա-ծովային բազաների նկատմամբ ունեցած իր իրավունքներից: Այս ամենը նպաստեց իսկական ինտերնացիոնալիզմի հիման վրա սոցիալիստական երկրների համախմբմանը:

Հարկ է նշել, որ ինչպես սոցիալիստական երկրների ներսում, այնպես էլ նրանց հարաբերություններում անհատի պաշտամունքի հետևանքների հաղթահարումը բոլորին չէ, որ դուր եկավ: Սոցիալիստական որոշ երկրներում գտնըվեցին անհատի պաշտամունքի համոզված կողմնակիցներ: Նրանք սովորել էին միանձնյա իշխանությանը, չէին խորհրդակցում ժողովրդի հետ, չէին հանդուրժում իրենց հասցեին արվող քննադատական դիտողությունները: Այդ տեսակի ղեկավարներին սոցիալիստական դեմոկրատիան, ժողովրդական նախաձեռնության ծավալումը, ճիշտ քննադատությունը թվում են ոչ պետքական և նույնիսկ վնասակար: Ուստի նրանք ամեն բան արին անհատի պաշտամունքի գաղափարախոսությունն ու պրակտիկան պահպանելու և դրանք իրենց պահանջմունքներին հարմարեցնելու համար:

Եթե մենք ցանկանում ենք հասնել սոցիալիստական բոլոր երկրների իսկական, կայուն միասնության, պետք է սովորենք հասկանալ ու հարգել միմյանց: Մարքսիստ-լենինյանները միշտ հարգել և հարգում են ազգային սուվերենությունը, կանգնած են ազգային տնտեսության և մշակույթի լիակատար բարգավաճման, սոցիալիստական երկրների իրավահավասարության կողմը: Ճանաչելով յուրաքանչյուր երկրի, յուրաքանչյուր ազգի ինքնուրույն և անկախ վարգացման իրավունքը, կոմունիստները դրա մեջ տեսնում են ազգերի անշեղ մերձեցման հիմքը, նրանց եղբայրական համագործակցության ու անխախտ դաշինքի գրավականը: ՍՄԿՊ-ն հենց այդպիսի քաղաքականություն է հետևողականորեն կենսագործում: Սոցիալիստական երկրների միասնությունը կայուն կարող է լինել միայն որպես սուվերեն ու իրավահավասար պետությունների միասնություն:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը նշանակում է ազգային տնտեսության, պետականության, մշակույթի վարգացման ուղղությամբ յուրաքանչյուր երկրի ջանքերի միացումն այն ընդհանուր ջանքերին, որոնք ուղղված են համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդման նպատակին: Համագործակցությունը

և փոխօգնությունը տնտեսական ու քաղաքական անհրաժեշտություն են: Սոցիալիստական բոլոր երկրները՝ և՛ փոքր, և՛ մեծ, շահագրգռված են միմյանց հետ սերտ կապեր հաստատել, քանի որ այդպիսի կապերը նրանց անկախության ու ազգային սուվերենության ամրապնդման, նրանց արագ ու հաջող կարգացման երաշխիքն են և ստեղծում են ժողովրդի նյութական բարեկեցության անընդհատ աճ, ապահովում սոցիալ-տնտեսական և մշակութային կարգացման մակարդակների աստիճանական համահարթում: Առանց սոցիալիստական պետությունների դաշինքի, առանց նրանց փոխադարձ աջակցության անհնարին է լուծել սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բարդ խնդիրը, անհնարին է յուրաքանչյուր սոցիալիստական երկրի և ամբողջ սիստեմի հուսալի պաշտպանության կազմակերպումը: Որքանով սերտ են համախմբված սոցիալիզմի երկրները, այնքանով ավելի համաձայնեցված են նրանց գործողությունները, այնքանով ավելի ուժեղ է նրանց ազդեցությունը համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի ընթացքի վրա:

Երբ միջազգային կյանքի այս կամ այն ասպեկտներն ընկալվում են «սեփական» № 1 պրոբլեմի կիզակետի միջով (իսկ դա ինչ-որ չափով անխուսափելի է), ապա կարող է առաջանալ մոտեցումների ու կարծիքների տարբերություն, կոնկրետ շահերի ու խնդիրների տարբերություն: Քաղաքականության համաձայնեցումը և կոորդինացումը հենց կոչված է կանխելու իրադարձությունների նման կարգացումը, մշակելու միասնական վարքագիծ, գործողությունների այնպիսի ընդհանուր պլատֆորմ, որը յուրաքանչյուր սոցիալիստական երկրի շահերը կապում է սոցիալիստական ամբողջ սիստեմի շահերի հետ:

Թվում է, թե այս ամենը քաջ հայտնի է և չպետք է վեճեր առաջացնի առանձին սոցիալիստական երկրների կոմունիստների միջև: Սակայն քաղաքական անազնիվ ոտնձգությունները կարող են անվիճելի ճշմարտությունները վիճելի դարձնել, բարին ներկայացնել որպես չարիք: Հենց այդպես են վարվում դոգմատիկները և տարբեր երկրների կոմունիստների միասնության մյուս հակառակորդները:

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆՈՐ ՏԻՊ

Եղբայրական համագործակցությունն ու ընկերական փոխօգնությունը, ամրապնդվող միասնությունը, լիակատար իրավահավասարությունը, անկախության ու սուվերենության փոխադարձ հարգանքը սոցիալիստական համագործակցության երկրների միջև գոյություն ունեցող հարաբերությունների բնորոշ գծերն են: Նման բան չկա և չի էլ կարող լինել կապիտալիզմի լագերում, որին քայքայում են անտագոնիստական հակասություններն ու իրարամերժ շահերը:

Իմպերիալիստական ագրեսիվ շրջանները կատաղում են, տեսնելով սոցիալիստական երկրների իսկայական հաջողությունները տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքի բոլոր բնագավառներում: Իմպերիալիստներն ամեն կերպ ձգտում են սեպ խրել սոցիալիզմի հզոր լագերը կազմող երկրների ու ժողովուրդների բարեկամության միջև: Սակայն այդ փորձերը դատապարտված են ձախողման:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմում ստեղծվեց **երկրների տնտեսական և քաղաքական հարաբերությունների նոր տիպ:** Պետությունների այս նոր հարաբերությունների հիմքն այն է, որ սոցիալիստական երկրներն ունեն **տնտեսական միատիպ բազա:** Սոցիալիստական բոլոր երկրների տնտեսական բազան, որը դրված է արտադրական հարաբերությունների հիմքում, արտադրության գործիքների և միջոցների հանրային սոցիալիստական սեփականությունն է, հետևապես մարդու կողմից մարդու շահագործման բացակայությունը, շահագործող դասակարգերի վերացումը:

**Սոցիալիստական երկրներն ունեն նաև պետական միատիպ կառուցվածք:** Այդ բոլոր երկրներում տապալված է կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը և հաստատված է աշխատավորների իշխանություն: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրները ունեն քաղաքական ընդհանուր հիմք: Դա ժողովրդի իշխանությունն է բանվոր դասակարգի գլխավորությամբ:

Համաշխարհային սոցիալիստական լագերի մեջ մտնող երկրները ունեն **միասնական գաղափարախոսություն՝ մարքսիզմ-լենինիզմը:** Նրանցում ղեկավար դեր խաղում են աշխարհի ամենաառաջավոր պարտիաները՝ կոմունիստական և բանվորական պարտիաները:

Սոցիալիստական երկրները **ընդհանուր շահեր ունեն իմպերիալիստական լագերի ոտնձգություններից ռևոլյուցիոն նվաճումները և ազգային անկախությունը պաշտպանելու գործում:** Սոցիալիստական լագերի միացյալ ուժերը յուրաքանչյուր երկրի հուսալիորեն երաշխավորում են իմպերիալիստական գիշատիչների մեքենայություններից և ապահովում սոցիալիզմի ու կոմունիզմի լիակատար հաղթանակը ամբողջ սիստեմի շրջանակներում:

Ի վերջո, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրները **իրենց առջև ունեն մի փառահեղ նպատակ՝ կոմունիզմի կառուցումը,**



որը համապատասխանում է միջազգային պրոլետարիատի, աշխատավոր մարդկության շահերին:

Սրանք են այն հիմքերը, որոնց վրա խարսխված է սոցիալիստական երկրների մեծ համագործակցությունը: Հենց դրանք են որոշում պետությունների հարաբերությունների նոր տիպը, որը չկար անցյալում:

Սոցիալիստական երկրների հարաբերությունները բնորոշում են մի շարք գծեր, որոնց նմանը նույնպես չի եղել մինչ սոցիալիստական երկրների հարաբերություններում: Այդ գծերն են՝ երկրների լիակատար իրավահավասարությունը, անկախության ու սուվերենության փոխադարձ հարգանքը, եղբայրական փոխօգնությունը և համագործակցությունը:

Սոցիալիզմի երկրների կարգացման ընդհանուր օրինաչափությունները, ինչպես դա ընդգծված է կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 և 1960 թվականների Մոսկովյան խորհրդակցությունների Դեկլարացիայում ու Հայտարարության մեջ, հանդիսանում են՝ բանվոր դասակարգի կողմից իշխանության գրավումն ու ամրապնդումը, գյուղացիության հետ բանվոր դասակարգի դաշինքի ամրապնդումը, արտադրության միջոցների նկատմամբ կապիտալիստական և այլ մասնավոր սեփականության վերացումը, ապրանքային մանր տնտեսության վերափոխումը սոցիալիստական խոշոր արտադրության, ամբողջ տնտեսության կազմակերպումը պլանային հիմունքներով, տընտեսության կարգացումը նյութական շահագրգռվածության և տնտեսական հաշվարկի լենինյան սկզբունքներով, «յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ աշխատանքի» սոցիալիստական սկզբունքի պահպանումը, երկրների քաղաքական և տնտեսական մերձեցումը, սոցիալիստական նվաճումների համատեղ պաշտպանման համար ջանքերի միավորումը և այլն:

Սոցիալիստական երկրների բարեկամության հետագա ամրապնդմանը նպաստեցին նրանց պարտիական-պետական պատվիրակությունների փոխադարձ նոր այցելությունները, որոնք տեղի ունեցան ս/թ օգոստոս-սեպտեմբեր ամիսներին: ՍՄԿՊ կենտկոմի, Սովետական Միության Գերագույն սովետի նախագահության և ՍՍՌՄ Մինիստրների սովետի հրավերով մեր երկիրը ժամանեցին Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Ռումինիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկայի, Կուբայի Ռեսպուբլիկայի, Հարավսլավիայի Սոցիալիստական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակյան Սոցիալիստական Ռեսպուբլիկայի և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի պատվիրակությունները: Մեր երկրի պատվիրակությունները բարեկամական այցով վերջերս եղան Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում և Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկայում: Լեհաստանի միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Գոմուլկայի հրավերով սեպտեմբերի 11—12-ը Լեհաստանում էր գտնվում ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար Լ. Ի. Բրեժնևը:

Ինչպես ամենամեծ տոների օրերին, սեպտեմբերի 11-ին ուրախությամբ էին համակված Հայաստանի աշխատավորները: Այդ օրը Երևան ժամանեց ՉՍՍՌ-ի պարտիական-պետական պատվիրակությունը ՉԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ռեսպուբլիկայի պրեզիդենտ Անտոնին Նովոտնու գլխավորությամբ: Տասն օր անց Սովետական Հայաստան ժամանեց ԳԴՌ-ի պարտիական-կառավարական պատվիրակությունը ԳՍՄՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ԳԴՌ-ի պետական խորհրդի նախագահ Վալտեր Ուլբրիխտի գլխավորությամբ: ՉՍՍՌ-ի և ԳԴՌ-ի պատվիրակությունների ժամանումը Սովետական Հայաստան սոցիալիստական երկրների ժողովուրդների եղբայրական հարաբերությունների պատմության մեջ ոսկե էջերից մեկը կդառնա: Այդ օրերը լի էին անմոռանալի հուզիչ հանդիպումներով: Դրանք վերածվեցին անխախտ բարեկամության ու միասնության մեծ տոնի, ժողովուրդների եղբայրության հզոր ցույցի:

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, ինչպես և բոլոր մարքսիստական պարտիաները, բացառիկ մեծ նշանակություն են տալիս սոցիալիստական երկրների բարեկամական կապերի ամրապնդմանը: Եվ դա պատահական չէ: Սոցիալիստական լագերի երկրների դաշինքի ամրապնդումը մեծ դեր է խաղում կոմունիզմի կառուցման գործում. տեսնենք, թե ինչպես է դա ազդում տնտեսության կարգացման վրա, քանի որ կոմունիզմի կառուցումը ամենից առաջ նշանակում է հասարակության արտադրողական ուժերի կարգացում, նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծում:



1949 թվականի հունվարին Մոսկվայում տեղի ունեցավ Բուլղարիայի, Հունգարիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Սովետական Միության և Չեխոսլովակիայի ներկայացուցիչների խորհրդակցությունը, որտեղ քննարկվեցին նրանց միջև ավելի լայն տնտեսական համագործակցություն ստեղծելու հնարավորության և անհրաժեշտության հարցերը: Խորհրդակցությունը անհրաժեշտ ճանաչեց ստեղծել իր կազմակերպական օրգանը՝ Տնտեսական փոխօգնության խորհուրդը ((ՏՓՕԽ), որի նպատակը պետք է լինի տըն-

տեսական փորձի փոխանակումը, միմյանց տեխնիկական օգնություն ցույց տալը, փոխադարձ օգնությունը հումքով, պարենամթերքներով, մեքենաներով:

Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեության ավելի քան 16 տարիների ընթացքում այդ կազմակերպության մասնակից անդամները ստեղծեցին իրենց կոլեկտիվ համագործակցության ու փոխօգնության կայուն հիմքը: Նրանք ընդլայնեցին իրենց դիրքերը համաշխարհային արդյունաբերական արտադրության բնագավառում: Չնայած այն բանին, որ այդ երկրներում բնակվում է ամբողջ երկրագնդի բնակչության միայն 10 տոկոսից մի քիչ ավելին, Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները 1962 թվականին արտադրեցին համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտավորապես 30 տոկոսը, 1950 թվականին եղած 18 տոկոսի փոխարեն:

Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների համաշխարհային արտադրության մեջ նրանց բաժինը այդ նույն ժամանակամիջոցում ավելացել է հետևյալ կերպ՝ էլեկտրաէներգիայի արտադրության բնագավառում՝ 14,1-ից հասել է 19 տոկոսի, նավթահանույթի բնագավառում՝ 7,3 տոկոսից հասել է 17 տոկոսի, պողպատի ձուլման բնագավառում՝ 19 տոկոսից հասել է 32 տոկոսի, ցեմենտի արտադրության բնագավառում՝ 13 տոկոսից հասել է 23 տոկոսի:

Տնտեսական փոխօգնության խորհրդի բոլոր մասնակիցները հավասար են և միևնույն իրավունքներն ունեն անկախ նրանց տերիտորիաների տարածությունից, բնակչության թվից, տընտեսական զարգացման մակարդակից: Այնտեղ որոշումները ընդունվում են միայն շահագրգռված երկրների համաձայնության պայմաններում, կամավորության հիման վրա: Այս հանգամանքը լիովին մերկացնում է իմպերիալիստական քաղաքագետների կրպարտությունները, որոնք պնդում են, թե սոցիալիստական երկրների հարաբերություններում կա անիրավահավասարություն, տնտեսապես ավելի թույլ զարգացած երկըրները իբր ենթարկվում են առավել զարգացածներին և այլն:

Իրականում այդպիսի անիրավահավասարություն գոյություն ունի «Ընդհանուր շուկայում», որտեղ տվյալ համագործակցության անդամ պետությունների հարաբերությունները որոշվում են նրա իմպերիալիստական բնույթով: «Ընդհանուր շուկայի» ղեկավար օրգաններում տեղերը բաշխվում են հետևյալ կերպ՝ եթե ավագ պարտնյորները՝ ԳՖՌ-ն, Ֆրանսիան, Իտալիան խորհըրդում ունեն 4-ական ձայն, ապա Բելգիան և Հոլանդիան՝ 2-ական, իսկ Լյուքսեմբուրգը՝ ընդամենը մեկ ձայն: Մյուս ղեկավար օրգանում՝ Ասամբլեայում, Բելգիայի Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի պատվիրակների թիվը ամբողջությամբ վերցրած (34) պակաս է մասնակից մյուս երեք երկրների՝ ԳՖՌ-ի, Ֆրանսիայի և Իտալիայի պատվիրակների թվից՝ որոնցից յուրաքանչյուրն ունի 36 պատվիրակ: Ինչպես ասում են՝ մեկնաբանություններն այստեղ ավելորդ են:

Տնտեսական փոխօգնության խորհրդի երկըրները տնտեսության զարգացման մակարդակով անցյալում զգալիորեն տարբերվել են միմյանցից: Բայց սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցության օրինաչափություններից մեկը հենց այն է, որ անցյալում քիչ զարգացած երկրները, հենվելով համագործակցության և փոխադարձ օգնության վրա զարգանում են ավելի բարձր թափով և աստիճանաբար վերացնում են առաջավոր երկրներից իրենց ետ մնալը: Բայց սա ամենևին չի նշանակում բարձր զարգացած պետությունների ժողովրդական տընտեսության զարգացման թափի դանդաղեցում:

Աշխատանքի սոցիալիստական միջազգային բաժանումն իր բարձրագույն ձևերով՝ մասնագիտացմամբ և կոոպերացմամբ դարձել է սոցիալիստական երկրների արտադրողական ուժերի արագ աճի խնդրի լուծման կարևորագույն բանալին, նրանց տնտեսական ընդհանուր հզորության գլխավոր արագացուցիչը: Կյանքը ցույց է տալիս, որ արդի զարգացած արտադրությունը անհնարին է հաջողությամբ ընդլայնել միայն սեփական ուժերով: Միջազգային մասնագիտացումը ձեռնտու է մեծ և հատկապես փոքր երկըրներին: Տիրապետելով փոքր պոտենցիալի, բնական և մարդկային սահմանափակ ռեսուրսների, այդ երկրները զարգացնում են այն ճյուղերը, որոնք կարող են տնտեսական մեծ օգուտ տալ:

Մասնագիտացման տնտեսական արդյունավետության մասին խոսում են բազմաթիվ փաստեր: Մինչև վերջին ժամանակներս Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում արտադրվում էին 108 տիպի ավտոմատ հաստոցներ, իսկ ներկայումս մասնագիտացման շնորհիվ դրանց թիվը կրճատվել է և միաժամանակ 39 տիպի հաստոցների արտադրությունը ստացել է սերիական բնույթ: Դա ռեսպուբլիկայի համար ամեն տարի կապահովի 38 միլիոն մարկի տնտեսում ծանր մեքենաշինության մեջ և 27 միլիոն մարկի տընտեսում՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ: Լեհաստանը ներկայումս ազատվել է մոտ 500 տեսակ արդյունաբերական ապրանքների արտադրությունից, դրանք ներմուծում է սոցիալիստական մյուս երկրներից, որը երկրին հնարավորություն է տալիս տարեկան տնտեսել գրեթե 100 միլիոն զլոտի:

Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամները պայմանավորվել են, որ դոմնային սարքավորումների արտադրությունը կենտրոնացվում է ՍՍՌՄ-ում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում և ԳԴՌ-ում, նավթամշակման սարքավորումներինը՝ ՍՍՌՄ-ում և Ռումինիայում, եգիպտացորենահավաք մեքենաներինը՝ Հունգարիայում, Ռումինիայում և ՍՍՌՄ-ում, կարտոֆիլահավաք մեքենաներինը՝ Լեհաստանում և Չեխոսլովակիայում: Լեհաստանը կմատակարարի նավեր և երկաթուղային վագոններ, Բուլղարիան՝ ակումուլյատորներ և էլեկտրոկարներ:



Ընդլայնվում և ամրապնդվում է համագործակցության այնպիսի ձևը, ինչպիսին է օբյեկտների համատեղ շինարարությունը: Վոլգայի, Օդերի և Դանուբի միջև ընկած շինարարական վիթխարի հարթակում կառուցվեց աշխարհի ամենախոշոր՝ «Բարեկամություն» նավթամուղը: Եղբայրական 5 երկրներ՝ ՍՍՌՄ-ը, Լեհաստանը, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Չեխոսլովակիան և Հունգարիան իրենց ջանքերն են միացրել պողպատե այդ երակի կառուցման համար: Դա ձեռնտու է սոցիալիստական բոլոր երկրներին. այն կհանգեցնի նավթի փոխադրման խիստ էժանացմանը (6—7 անգամ) և հնարավորություն կտա Լեհաստանում, ԳԴՌ-ում, Չեխոսլովակիայում, Հունգարիայում ստեղծել արդյունաբերության նոր ճյուղ՝ նավթաքիմիան: Նավթամուղը արդեն 1965 թ. վերջերին կտա ավելի քան 300 միլիոն ռուբլու եկամուտ, որը լիովին կծածկի շինարարական բոլոր ծախսերը: «Բարեկամություն» նավթամուղի երկարությունը 5.500 կիլոմետր է և գերազանցում է ամերիկյան «Մեծ դյույմ» նավթամուղը (2190 *կմ*), ինչպես նաև տրանսարաբական (1720 *կմ*) և Մարսելից մինչև Կարլսրուէ տանող (782 *կմ*) նավթամուղերին միասին վերցըրած: Արդեն 1962 թ. սկզբներին ժամկետից շուտ շարք մտավ նավթամուղի սովետա-չեխոսլովակյան տեղամասը: Նույն թվի աշնանը նավթը հասավ Հունգարիա, իսկ 1963 թ. վերջին՝ Լեհաստան և Գերմանական Շվեդտ քաղաքը, որը նավթամուղի վերջնական կետն է:

Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող Սովետական Միությունը, Չեխոսլովակիան, Լեհաստանը, Ռումինիան, Բուլղարիան, Հունգարիան և ԳԴՌ-ն ստեղծել են միացյալ էներգետիկ սիստեմ և դրան տվել «Խաղաղություն» անունը: Էլեկտրակայանների միացումից բարձրանում է սպառողներին էլեկտրաէներգիա մատակարարելու գործի հուսալիությունը: Էներգիայի ավելցուկները, որ գիշերվա ժամերին կուտակվում են արևելյան շրջաններում, կարելի է փոխադրել արևմտյան շրջանները, որտեղ գիշերը դեռևս վրա չի հասել, միացված են հեռուստացույցներն ու ռադիոընդունիչները և կա լուսավորման մեծ բեռնվածություն: Էներգասիստեմի կառավարման համար Պրագայում ստեղծված է կենտրոնական դիսպետչերական վարչություն: «Խաղաղություն» էներգասիստեմը իսկայական նշանակություն ունի Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների ժողովրդական տնտեսության համար: 1965 թ. միայն Դոբրոտվոր-Մուկաչևո գծով արևմտյան Ուկրաինայից Հունգարիա կհասնի մոտ մեկ միլիարդ կիլովատ ժամ, Ռումինիայի գծերով՝ Բուլղարիա կհասնի 300 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա:

Եվրոպական տնտեսական համագործակցությունից Տնտեսական փոխօգնության խորհրդի սկզբունքային տարբերությունը երևում է նաև նրանց վերաբերմունքի բնույթից այն երկրների նկատմամբ, որոնք վերջերս են հասել պետական անկախության: Սոցիալիստական երկրները ըստ ամենայնի աջակցում են ազատագրված ժողովուրդների ազգային տնտեսության զարգացմանը և կյանքի բարելավմանը: Այդ օգնության կարևորագույն ձևերն են՝ երկարաժամկետ վարկերը, արդյունաբերական կարևորագույն օբյեկտների շինարարությանը ցույց տրվող տեխնիկական աջակցությունը, բանվորական, տեխնիկական-ինժեներական ազգային կադրերի պատրաստումը, երիտասարդ պետությունների արտահանման տրադիցիոն ապրանքների կայուն վաճառքի ապահովումը:

Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ պետություններին Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների կողմից տրամադրվող վարկերի ընդհանուր գումարը 1964 թ. վերջին գերազանցել է 3,5 միլիարդ ռուբլուց: Այդ թվում ՍՍՌՄ-ը տվել է ավելի քան 3 միլիարդ ռուբլու վարկ, Չեխոսլովակիան՝ գրեթե 300 միլիոն ռուբլու, Լեհաստանը՝ 160 միլիոն ռուբլու, Ռումինիան՝ 70 միլիոն ռուբլու վարկ:

## 1965 Թ. ՄԵԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏԱՐԻ

1965 թվականը նշանակալի տարի է սոցիալիստական շատ երկրների տնտեսական զարգացման գործում: Ընթացիկ տարում ավարտվում են Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների ժողովրդական տնտեսության հեռանկարային պլանները, որոնք ելաբնագիծ են նոր հնգամյակի (1966—1970) պլանների մշակման համար: Անցած տարվա և ընթացիկ տարվա տնտեսական արդյունքները վկայում են, որ եղբայրական երկրները հաջողությամբ կատարում են սոցիալիստական շինարարության նշված ծրագրերը: Սոցիալիզմի երկրի ժողովուրդները նոր հաջողությունների են հասել տնտեսական և կուլտուրական զարգացման և աշխատա-

վորների կենսամակարդակի բարձրացման գործում: Ինչպես անցյալ տարիներում, սոցիալիստական երկրների կարգացման տեմպերը շատ ավելի բարձր էին, քան կապիտալիզմի երկրների կարգացման տեմպերը: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի արդյունաբերական արտադրության աճը 1964 թվականին կազմել է 8,5 տոկոս, մինչդեռ նույն ժամանակում կապիտալիստական երկրներում այն չի գերազանցում 5—5,5 տոկոսից: Ընդ որում, կարևոր է ընդգծել, որ սոցիալիստական երկրների արտադրության աճը 1964 թվականին ավելի բարձր էր, քան վերջին մի քանի տարիների, մասնավորապես 1963 թվականի տեմպերը: Կուբայի արդյունաբերական արտադրանքի տարեկան աճը կազմեց 7 տոկոս, Չինաստանում, պետական խորհրդի պրեմիերի տվյալներով՝ ավելի քան 15 տոկոս:

Հատկանշական է, որ 1964 թվականին, ինչպես առաջներում, արդյունաբերական արտադրությունն ամենաարագ տեմպերով կարգացավ նախկինում հետամնաց երկրներում: Այսպես, վերջին տվյալներից երևում է, որ Բուլղարիայում, ՎԴՌ-ում, ԿԺԴՌ-ում, Հարավսլավիայում, Ռումինիայում, Չինաստանում արդյունաբերական արտադրության աճի տեմպերն ավելի բարձր են եղել, քան Չեխոսլովակիայում, ԳԴՌ-ում, ՍՍՌՄ-ում՝ սոցիալիստական համագործակցության արդյունաբերության տեսակետից ավելի բարձր կարգացած երկրներում: Տեմպերի այդ հարաբերակցության մեջ իր արտահայտումն է գտնում համաշխարհային սոցիալիստական համագործակցության կարևորագույն օրինաչափությունը՝ եղբայրական երկրների էկոնոմիկայի մակարդակի աստիճանական համահարթումը:

Իր վրա ուշադրություն է գրավում ևս մի բնորոշ գիծ: Անցյալ տարի սոցիալիստական շատ երկրներում նշանակալիորեն բարձրացան ժողովրդական սպառման առարկաների արտադրության աճի տեմպերը: ՏՓՕԽ-ի անդամ երկրների տնտեսական կարգացման կարևորագույն արդյունքն այն է, որ նրանք իրենց մոտ ստեղծել են հզոր սոցիալիստական ինդուստրիա, որը հուսալի հիմք է նոր հասարակարգի համար: Այն մասին, թե սոցիալիստական համագործակցությունն ինչպիսի հսկայական քայլ է կատարել իր կարգացման մեջ, կարելի է դատել արդյունաբերական արտադրանքի մի քանի կարևորագույն տեսակների արտադրության ծավալը բնութագրող տվյալներով: ՏՓՕԽ-ի անդամ երկրներում 1964 թվականին արտադրվել է 616 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 825 միլիոն տոննա ածուխ (քարածխի վերածած), 112 միլիոն տոննա պողպատ, 239 միլիոն տոննա նավթ:

Կյանքը ցույց է տալիս, որ արդի պայմաններում սոցիալիզմի երկրներն ունեն հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի և տեխնիկական առաջադիմության տեմպերի արագացման ևս մեկ կարևոր աղբյուր: Այդպիսի աղբյուր է հանդիսանում սոցիալիզմի երկրների համագործակցությունը և փոխադարձ օգնությունը՝ իրավահավասարության, կամավորության և փոխադարձ օգուտների հիման վրա: Համագործակցությունը դարձել է կարևորագույն օղակ սոցիալիստական երկրների արմատական տնտեսական այնպիսի պրոբլեմների լուծման մեջ, ինչպիսիք են նրանց ժողովրդական տնտեսության պահանջները՝ հումքի, վառելիքի կարևոր տեսակներով ապահովումը, տեխնիկական առաջադիմության տեմպերի արագացումը:

Եղբայրական երկրները բարեհաջող արդյունքներով եզրափակեցին անցած տարին գյուղատնտեսության բնագավառում: Սոցիալիստական գրեթե բոլոր պետությունների գյուղատնտեսության արտադրանքի ծավալը գերազանցեց 1963 թվականի ծավալը: ՍՍՌՄ-ում այդ գերազանցումը կազմեց 12 տոկոս, Բուլղարիայում՝ գրեթե 9 տոկոս, ԳԴՌ-ում՝ գյուղատնտեսության ապրանքային արտադրանքը մեծացավ 8 տոկոսով և ամենաբարձրն էր ռեսպուբլիկայի գոյության ամբողջ ժամանակում: Հունգարիայում պարենային հացահատիկի բերքը 1963 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան մեկ-երրորդով: Սակայն գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդհանուր մակարդակը եղբայրական երկրներում դեռևս ետ է մնում ժողովրդական տնտեսության և բնակչության հարաճուն պահանջներից: Դրա համար գյուղատնտեսության հետագա վերելքը մնում է որպես առաջնահերթ տնտեսական խնդիր:

Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության անշեղ աճը նշանակալիորեն բարձրացրեց ազգային եկամուտը՝ աշխատավոր մասսաների բարեկեցության բարելավման այդ գլխավոր և որոշիչ աղբյուրը: Անցյալ տարի ազգային եկամուտը Սովետական Միությունում աճեց ավելի քան 7 տոկոսով, Բուլղարիայում՝ մոտավորապես 6, Հունգարիայում՝ ավելի քան 4, ԳԴՌ-ում՝ գրեթե 5, Լեհաստանում՝ 5, Ռումինիայում՝ 10 և ԿԺԴՌ-ում՝ 10 տոկոսով:

Եղբայրական ժողովուրդների պայքարը էկոնոմիկայի կարգացման և աշխատավորների կենսամակարդակի բարձրացման համար միայն այդ երկրների ներքին գործը չէ: Դա միաժամանակ նրանց ինտերնացիոնալ պարտքի կատարումն է համայն աշխարհի աշխատավորների առաջ: Որքան ավելի լավ է սոցիալիստական պետությունների ժողովուրդների կյանքը, այնքան ավելի ձգողական են դառնում սոցիալիզմի և կոմունիզմի գաղափարները, այնքան ավելի արագ է շարժվելու կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ լիակատար հաղթանակ տանելու գործը:



## ՀԶՈՐ ՎԱՀԱՆ՝ ԱԳՐԵՍՈՐՆԵՐԻ ԴԵՄ

1965 թվականի մայիսի 14-ին սոցիալիստական համագործակցության ժողովուրդները նշեցին նշանակալից տարեթիվը՝ Եվրոպայի սոցիալիստական երկրների բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության Վարշավայի պայմանագրի կազմակերպության ստեղծման 10-րդ տարեդարձը: Անցած տասը տարիները հաստատեցին այդ պայմանագրի կարևոր դերը միջազգային լարվածության մեղմացմանը, ագրեսորների հանցավոր մտադրությունների վիժեցմանն ուղղված նրանց ջանքերի համախմբման գործում:

Վարշավայի պայմանագիրը հանդիսացավ հարկադրված պատասխան միջոցառում իմպերիալիստական պետությունների պատերազմական պատրաստությունների ուժեղացման կապակցությամբ: 1949 թվականի ապրիլին ստեղծելով հյուսիս ատլանտյան բլոկ (ՆԱՏՕ), արևմտյան տերությունները ԱՄՆ-ի գլխավորությամբ ուժեղացրին սպառազինությունների մրցավազքը և սկսեցին սոցիալիստական երկրներին եկերվող տերիտորիաները դարձնել իրենց ագրեսիվ պլանների իրականացման ռազմա-ստրատեգիական պլացդարմներ:

Վարշավայի պայմանագիրն իր բովանդակությամբ, նպատակներով ու բնույթով խիստ պաշտպանողական է, ուղղված է խաղաղության ու ամբողջ աշխարհի ժողովուրդների անվտանգության ապահովման նպատակին, հզոր պատնեշ է պատերազմի ուժերի ճանապարհին: Այդ պայմանագրի մասնակից պետությունները և մյուս սոցիալիստական երկրները վերջին տասը տարվա ընթացքում բազմիցս վճռականապես կասեցրել են խաղաղասեր ժողովուրդների դեմ ուղղված ագրեսիվ գործողությունները և կանխել նոր համաշխարհային պատերազմի ծագման վտանգը: Այդ է Վարշավայի պայմանագրի կազմակերպության արմատական, սկզբունքային տարբերությունը իմպերիալիստական երկրների ագրեսիվ բլոկներից:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները խաղաղության և իրենց ռազմական հզորության ամրապնդման համար մղվող պայքարը դիտում են որպես միասնական խնդիր:

Ներկայումս ամբողջ առաջադեմ մարդկությունը վճռականապես դատապարտում է ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան Վիետնամում, Լաոսում, Դոմինիկյան ռեսպուբլիկայում և այլուր: Դրա հետ միասին աշխարհի ժողովուրդներին ավելի ու ավելի մեծ անհանգստություն է պատճառում ԳՖՌ-ում միլիտարիզմի ու ռևանշիզմի աճը: Արևմտագերմանական բունդեսվերը դարձել է ՆԱՏՕ-ի ամենաուժեղ ցամաքային բանակը Եվրոպայում: Այժմ նրան է հատկացվում այդ ագրեսիվ ռազմական բլոկի գլխավոր հարվածային ուժի դերը: Բոննի ռևանշիստները համառորեն ձգտում են միջուկային զենք ունենալ:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի պատմական կարգացման վճռական ուժի վերածվելը հանդիսանում է վճռական գործոն, որը հնարավորություն է տալիս նոր ձևով, ժողովուրդների շահերին համապատասխան լուծել արդիականության կարևորագույն պրոբլեմները:

Հայտնի է, որ մեր ժամանակի հիմնական հարցը պատերազմի ու խաղաղության պրոբլեմն է: Երրորդ համաշխարհային պատերազմը, ինչպես այդ մասին հայտարարեց ՍՄԿԿ XX համագումարը, կարելի է կանխել: Հարցի այդպիսի լուծումը հնարավոր եղավ առաջին հերթին շնորհիվ համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացման ու ամրապնդման:

Սոցիալիզմի երկրների կողմից խաղաղության և խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականություն վարելը չի բխում իմպերիալիզմի ագրեսիվ բնույթի թերագնահատումից, մի բնույթ, որն անփոփոխ է մնում: Սակայն անդառնալիորեն անցել են այն ժամանակները, երբ պատերազմի հրձիգները ըստ իրենց հայեցողության կարող էին վճռել պատերազմը լինելու կամ չլինելու հարցը: Ի բախտավորություն գալիք սերունդների, մեր դարաշրջանն ստեղծել է ոչ միայն ոչնչացման ու բնաջնջման միջոցներ, այլև ռեալ ուժեր, որոնք ընդունակ են թույլ չտալու համաշխարհային նոր աղետ:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը՝ արդի դարաշրջանի շարժիչ ուժը, վճռական գործոնն է, որը որոշում է մարդկային հասարակության կարգացման բովանդակությունը և ուղղությունը: Սոցիալիզմի յուրաքանչյուր նվաճում արագացնում է ընդհանուր առաջադիմությունն ամբողջ երկրագնդի վրա:

Ս. ՊԱՊՅԱՆ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

*Ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունների մեջ հատուկ տեղ է գրավում Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանը, որը 65 և 80 մմ. տրամագծի իլեր ունեցող հորիզոնական-ներտաշ ունիվերսալ հաստոցներ թողարկող միակ մասնագիտացված ձեռնարկությունն է երկրում։ Գործարանի արտադրանքը ժողովրդա-տնտեսական բացառիկ կարևոր նշանակություն ունի, քանի որ մետաղամշակման արդյունաբերության բոլոր ձեռնարկություններն էլ օգտագործում են ներտաշ հաստոցներ։*

*Իր կազմակերպման առաջին իսկ շրջանում գործարանի առջև ծառացան մի շարք պրոբլեմներ, որոնց համար երիտասարդ ձեռնարկության կոլեկտիվը, դեռևս 1958 թվականից, հարկադրված եղավ լուծելու ոչ միայն արտադրական տեխնիկական բնույթի, այլև տնտեսական բնույթի մի շարք խնդիրներ։ Այդ խնդիրների հաջող լուծումը գործարանին հնարավորություն տվեց հասնելու իր այսօրվա ցուցանիշներին և իր պատվավոր տեղը գրավելու ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկությունների շարքում։*

*Ակնհայտ է, որ բանվորների աշխատանքի արտադրողականությունը, հետևապես նաև թողարկվող արտադրանքի ինքնարժեքն անմիջականորեն կախված են տեխնոլոգիական պրոցեսի հագեցվածության աստիճանից։ Այդ իսկ պատճառով գործարանի պարտիական կազմակերպությունն ու դիրեկցիան ժամանակին մանրամասն վերլուծության ենթարկեցին գործարանի տեխնոլոգիական մասի այն նախագիծը, որ կազմել էր «օրգստանկինպրոմ» ինստիտուտը։ Վերանայվեցին այդ նախագծի մի շարք դրույթները և ընդունվեցին ավելի առաջադիմական-տեխնոլոգիական որոշումներ, որոնք համապատասխանում են երկրի առաջավոր հաստոցաշինական գործարանների, մասնավորապես Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի ձեռք բերած փորձին։*

*Արտադրության շահութաբերությունը բարձրացնելու ասպարեզում կարևոր նշանակություն ունի նաև ձեռնարկության կոմպլեկտային գործարկումը. մինչդեռ Լուսավանի հաստոցաշինական գործարանը 1958 թվականից մինչև 1963 թվականը աշխատում էր առանց համապատասխան ջերմամշակման, հավաքման և նախապատրաստման արտադրամասերի։ Դեռ մինչև հիմա էլ շահագործման չեն հանձնվել նախապատրաստման արտադրամասը, ներկման բաժանմունքը, սակայն այդ հանգամանքը գործարանի կոլեկտիվին չխանգարեց ճիշտ կազմակերպելու աշխատանքը և իր գոյության արդեն չորրորդ տարում դառնալ ռեսպուբլիկայի շահութաբեր ձեռնարկություններից մեկը։*



*Գործարանի կոլեկտիվը 1959 թվականի հոկտեմբերին ավարտեց 2614 մոդելի հորիզոնական ներտաշ ունիվերսալ հաստոցի առաջին փորձնական նմուշը, որը պատրաստվել էր Օդեսայի շառավղային-գայլիկոնման հաստոցների գործարանի տեխնիկական դոկումենտացիայի համաձայն։ Այդ առաջին հաստոցի աշխատատարությունը կազմեց 16300 մարդ-ժամ, իսկ ինքնարժեքը՝ 17 հազար ռուբլի։ Գործարանի գլխավոր տեխնոլոգի և գլխավոր կոնստրուկտորի բաժինների աշխատողները կատարեցին մանրամասն վերլուծություն, որը հնարավորություն տվեց բացահայտելու այդ ասպարեզում եղած մի շարք թերություններ, որոնց վերացումը աշխատատարությունն իջեցրեց մինչև 500 մարդ/ժամ։*

*Այնուհետև գործարանի կոլեկտիվի առջև ծառացավ մի նոր խնդիր ևս։ Անհրաժեշտ էր 2614 հաստոցի բազայի վրա ստեղծել այնպիսի մի նոր հաստոց, որը 65 մմ. իլի փոխարեն ունենար 80 մմ. ուժեղացրած իլ, որն այդ հաստոցն ավելի կայուն կդարձնի մետաղահատման բոլոր ռեժիմների դեպքում։ Գործարանի կոնստրուկտորներին հաջողվեց իլի կոճղակի նոր կոնստրուկցիան մշակելիս իլի պարկուճի հենարանների վրա կիրառել ավելի ուժեղ առանցքակալներ, ավելի պարզեցնել հաստոցի ու մի շարք մեխանիզմների ղեկավարումը։ Կոնստրուկտորական այդ մի շարք փոփոխությունների իրականացումը հնարավորություն տվեց նոր հաստոցն ավելի հուսալի դարձնել շահագործման մեջ։ Այդ նոր հաստոցին տրվեց 2 Ա 614 համարը։*

*Դժվարին ու բարդ էր ձեռնարկության շահութաբեր աշխատանքն ապահովելու խնդիրը, մանավանդ, որ 1959—1962 թվականներին գործարանը չի ունեցել հավաքման, գործիքային ու ջերմամշակման արտադրամասեր, գալվանապատման ու նախապատրաստման բաժանմունքներ, տեխնոլոգիական սարքավորման կոմպլեքս։*

*Համապատասխան սարքավորում և ջերմամշակման արտադրամաս չունենալու պատճառով գործարանը միայն 1962 թվականին, այսինքն առաջին ներտաշ հաստոցի թողարկումից 3 տարի հետո, կարողացավ յուրացնել իլերի պատրաստումն ու գազային ազոտացումը։ Այն հանգամանքը, որ ժամանակին չէր ապահովվել ձեռնարկության կոմպլեկտային գործարկումը, մի շարք անարտադրողական ծախսերի տեղիք տրվեց։ Այսպես, պայմանավորվածություն ձեռք բերվեց Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի հետ այն մասին, որ այդ գործարանի համար աշխատանքային ժամեր չհանդիսացող երրորդ հերթափոխության ընթացքում պատրաստվեն իլեր։ Լենինգրադ ուղարկվեցին մեկ խառատ, մեկ ֆրեզորդ և մեկ հղկող։ Այդ պայմաններում մեկ իլի պատրաստումը գործարանին գրեթե 240 ռուբլի էր նստում, իսկ երբ մեզ մոտ գործարկվեց ջերմամշակման արտադրամասը և մենք յուրացրեցինք ազոտացման պրոցեսը, մեկ իլը արդեն 69 ռուբլի էր նստում։ Իլերի արտադրության յուրացումը գործարանին հնարավորություն տվեց 1964 թվականին 51 հազար ռուբլի տնտեսել։*

*Ներտաշ հաստոցների արտադրության ընդհանուր ծավալի 45 տոկոսը կազմում են հավաքման աշխատանքները, իսկ 55 տոկոսը՝ մեխանիկական մշակումը, որի 18—20 տոկոսն ընկնում է հաստոցների ձուլված կորպուսների մշակմանը։ Գործարանի կազմակերպման առաջին տարիներին հաստոցների կորպուսների ձուլուքները պահանջվող երկրաչափական չափերի հասցնելու համար մենք դիմում էինք քերանման։*

Հայտնի է, որ քերանումը ձեռքի խիստ տանջալի աշխատանք է։ Սակայն 1961 թվականի վերջերին գործարանը պատվիրեց և ստացավ 7 Ա 256 երկայնատաշ հաստոց։ Այդ հաստոցը մոնտաժելուց և յուրացնելուց հետո գործարանը գրեթե լրիվին հրաժարվեց քերանումից և անցավ կորպուսի դետալների ֆինիշային տաշմանը։ Ֆինիշային տաշումը հեշտ է յուրացնել, սակայն դա հատուկ սարքավորում է պահանջում և կիրառելի է բոլոր մեքենաշինական գործարաններում։ Բայց այդ մեթոդի հիմնական առավելությունն այն է, որ այն տնտեսական ավելի մեծ օգուտ է տալիս։ Եթե առաջներում քերանումով զբաղվում էին 35—40 բանվորներ, որոնք ամսական ստանում էին միջին հաշվով 110—120 ռուբլի աշխատավարձ, ապա ֆինիշային տաշում մտցնելուց հետո, այդ նույն աշխատանքը կատարում են արդեն երկու հաստոցագործ։ Տնտեսական օգուտը 50 հազար ռուբլուց ավելի է կազմում։ Բացի այդ, ազատված քերանողները կարող են օգտագործվել արտադրության նեղ տեղերում, իսկ դա Լուսավանի պայմաններում բացառիկ կարևոր նշանակություն ունի։

Մեքենայական և օժանդակ մշակման ժամանակը կրճատելու հնարավորությունները ուսումնասիրվեցին միջգործարանային վերլուծությունների միջոցով, հատկապես համեմատելով հագեցվածության աստիճանը Լենինգրադի տնտեսական շրջանի ձեռնարկությունների հետ։ Այսպես, Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի մեթոդով պողպատային և չուգունային մանր դետալների մեխանիկական մշակումը հնարավորություն տվեց ավելի քան երկու անգամ կրճատելու պահանջված մարդ-ժամերի քանակը։

Լուսավանի գործարանի կոլեկտիվի ուշադրության կենտրոնում էր նաև ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարձրացնելու պրոբլեմը։ Այդ պետք է կատարվեր առաջին հերթին տեխնոլոգիական սարքավորման օգտագործման գործակիցը բարձրացնելու միջոցով։

Ներտաշ հաստոցների արտադրության մեջ առանձնահատուկ բարդություն է ներկայացնում հաստոցի իլի կոճղակի մեխանիկական մշակումը։ Եթե 1959 թվականին ներտաշ հաստոցի վրա իլի կոճղակի մշակման աշխատատարությունը 142 նորմա-ժամ էր, ապա տեխնոլոգիական սարքավորման տեղակայումից հետո, 1961 թվականին, մշակման աշխատատարությունը հասավ 70 ժամի։ Մշակման մոդեռնացման և ավելի առաջադիմական ռեժիմների կիրառման շնորհիվ այդ մակարդակը 1964 թվականին իջավ մինչև 166,3 նորմա-ժամ, այսինքն՝ 1960 թվականի համեմատությամբ իջավ մոտ 9 անգամ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման շատ ավելի շոշափելի ռեզերվներ բացահայտվեցին հավաքման գործը մասնագիտացնելու միջոցով։ Արտադրության կազմակերպման առաջին ստադիայում հաստոցների հանգույցների հավաքումն ու մոնտաժը կատարում էր միայն մեկ բրիգադ։ Սակայն, արդեն 1961 թվականից գործարանը ձեռնամուխ եղավ հավաքման աշխատանքները մասնատելու պրակտիկային։ Հավաքման արտադրամասի կազմակերպումից հետո նրա մեջ առանձնացվեցին երկու ինքնուրույն տեղամասեր՝ հավաքման և մոնտաժի։ Ստացված արդյունքները գերազանցեցին բոլոր նախագծումները, քանի որ դրանից անմիջապես հետո հավաքման աշխատանքների արտադրողականությունը բարձրացավ գրեթե երկու անգամ։ Աշխատանքի կազմակերպման ավելի առաջադիմական ձևերի որոնումները հանգեցրին այն բանին, որ մեզ մոտ կազմակերպվեցին հանգուցային հավաքման նեղ-մասնա-



գիտացված ինքնուրույն բրիգադներ։ Այսուհետև գրեթե բոլոր մեխանիզմների հավաքումը կատարվում է մասնագիտացված կարգով։

Հավաքման աշխատանքների նեղ-մասնագիտացմանը մեզանում նախորդել է կոնստրուկտորական բավականին լուրջ մի միջոցառում, այն է՝ մի շարք հանգույցներ տեխնոլոգիական տեսակետից նախապատրաստվել էին մինչև ինքնուրույն մեխանիզմների վիճակը։ Մասնագիտացման օգուտները բնորոշող ակնառու օրինակ կարող է ծառայել հետնամասի կանգնակի հանգույցի կատարելագործումը։

Ներտաշ հաստոցների վրա մեծածավալ դետալներ մշակելիս շատ հաճախ օգտագործվում է հետնամասի կանգնակ կոչվող հարմարանքը։ Զանազան գործարաններ պատրաստում են զանազան տիպի և զանազան մեթոդներով գործող կանգնակներ։ Մեր գործարանում կանգնակը օգտագործվում է անհատական շարժաթոկի միջոցով։ Դրա համար էլեկտրաշարժիչներ մենք ստանում ենք Երևանի էլեկտրատեխնիկական գործարանից։ Անհատական շարժափոկ ունեցող կանգնակի կիրառումը հնարավորություն տվեց արտադրությունից հանել մի շարք անիվավոր հաղորդիչներ, որը նյութական օգուտից բացի, զգալի չափով բարձրացրեց արտադրողականությունը և արտադրանքի որակը։

Լուսավանի հաստոցաշինական գործարանը բավական մեծ օգուտ ստացավ հավաքման աշխատանքի նեղ մասնագիտացումից։ Այդ օգուտը ակնառու կերպով կարելի է ցուցադրել ստորև բերվող թվական տվյալներով։ 1959 թվականի համեմատությամբ հավաքման աշխատանքների աշխատատարությունը նեղ մասնագիտացման շնորհիվ կրճատվեց ավելի քան 3 անգամ և 1964 թվականին հասավ 1000 մարդ-ժամի, 1959 թվականի 3060 մարդ-ժամի դիմաց։ Հիմնական ֆոնդերի այն մասը, որը նախատեսված է հավաքման արտադրամասի շինարարության համար, դեռևս չեն գործադրվել և գործարանը մինչև օրս չունի իր հավաքման արտադրամասը, սակայն հավաքման աշխատանքները մասնագիտացնելու և մեխանիկական արտադրամասի տեխնիկական հագեցվածությունը ճիշտ օգտագործելու միջոցով գործարանը 1964 թվականին կարողացավ հավաքման հրապարակի յուրաքանչյուր քառակուսի մետրից 5 անգամ ավելացնել արտադրանքի ծավալը։

Երբ խոսք է լինում արտադրության շահութաբերությունը բարձրացնելու մասին, չպետք է անտեսել տնտեսական օգուտների այն մեծ հեռանկարները, որ արդյունաբերության առջև բացում է միջճյուղային մասնագիտացումը։

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության խորհրդի որոշմամբ հաստոցների կառավարման կայանների և հաստոցային նորմալների պատրաստումը համապատասխանորեն հանձնարարված է Երևանի էլեկտրաապարատների գործարանին և «Ստանկոնորմալ» գործարանին։ 1961 թվականից սկսած, էլեկտրաապարատների գործարանը այդպիսի կայաններ մատակարարում է 1187 ռուբլի արժեքով, մինչդեռ նույն տիպի կայանի կառուցումը հաստոցաշինական գործարանում նստում է 790 ռուբլի։ Էլեկտրաապարատների գործարանը միայն 1965 թվականի երկրորդ կեսին կկարողանա հասնել հաստոցաշինական գործարանի մակարդակին։ Մեր կարծիքով, գոյություն ունեցող մասնագիտացումը չի կարող ճիշտ տնտեսավարման լավ օրինակ ծառայել, քանի որ վերոհիշյալ տվյալներն ասում են, որ դեռ երկար ժամանակ կպահանջվի տնտեսատեխնիկական անհրաժեշտ մակարդակի հասնելու համար։ Այդ իսկ պատճառով էլ Լուսավանի հաստոցաշինական գործարանը 1961—1964 թվականներին

*կատարեց 167 հազար ռուբլու գերավճարումներ։ Այդ գումարը վճարվել է էլեկտրապարատների գործարանին, իսկ ավելի նպատակահարմար կլիներ միջճյուղային մասնագիտացման միջոցով սահմանել յուրաքանչյուր ձեռնարկության տեխնիկա-տնտեսական կոնկրետ հնարավորությունները։*

*Ռեսպուբլիկայի մեքենաշինության զարգացումը պլանային օրգաններից պահանջում է նոր միջոցառումների դիմել տիպավորման, ստանդարտացման, ունիֆիկացման և նորմալացման բնագավառում։ Հենց այդ նպատակով էլ ստեղծվել է «Ստանկոնորմալ» գործարանը, որը կոչված է հաստոցային նորմալներ մատակարարելու ռեսպուբլիկայի հաստոցաշինական գործարաններին։ Սակայն այնտեղ դեռևս կարգավորված չէ նորմալների որակյալ թողարկումը, իսկ դա տեղիք է տալիս անարտադրողական ծախսերի և թանկացնում է մեր թվարկած արտադրանքի ինքնարժեքը։*

*Լուսավանի հաստոցաշինական գործարանում շահութաբերության համար մղվող պայքարում կարևոր դեր ունի գլխավոր կոնստրուկտորի բաժանմունքը։ Մեր թողարկած 2614 և 2 Ա. 614 մոդելների հաստոցները անընդհատ մոդեռնացվում են, ստեղծվում են նոր, ավելի կատարելագործված ժամանակակից մոդելներ։ Գործարանի գլխավոր կոնստրուկտորի բաժնի պրակտիկայի մեջ գնալով ավելի լայնորեն է արմատավորվում նախագծված մեքենաների արտադրության տեխնոլոգիայի մշակումը։ Վերջին հաշվով դրանից է մեծապես կախված նյութական և աշխատանքային ռեսուրսների տնտեսումը, դետալների մշակման առաջադիմական մեթոդների կիրառման աստիճանը և, որպես այդ բոլորի հետևանք, ինքնարժեքի զգալի իջեցումը։*

*Հաստոցների ունիֆիկացմանը շատ դեպքերում խանգարում են հնացած պետական ստանդարտները։ Դժբախտաբար, քիչ չեն այն դեպքերը, երբ պետական ստանդարտներին համապատասխան արտադրած մեքենաները չեն բավարարում ձեռնարկությունների և գնորդների պահանջները։ Հորիզոնական-ներտաշ հաստոցների 7058—54 պետական ստանդարտի համաձայն նախատեսվում էր թողարկել երկու մոդելի ներտաշ հաստոց, որպես հիմք ունենալով 65 միլիմետրանոց իլ ունեցող 2614 հաստոցը, որի տեխնիկական հնարավորությունները ընդլայնված են հաստոցի վրա շառավղաձև սուպորտ տեղակայելու միջոցով։ 2 Ա. 614 երկրորդ մոդելը 2614 հաստոցի մոդիֆիկացումն է, ունի 80 միլիմետր տրամագծով իլ, սակայն չունի 2614 հաստոցի այն առավելությունները, որոնք պայմանավորված են շառավղաձև սուպորտի բացակայությամբ։ Սակայն պետական ստանդարտը թույլատրում է թերություններ ունեցող երկու տիպի հաստոցների թողարկումը։*

*Անհրաժեշտ է գտնել հաստոցի այնպիսի մի տարբերակ, որը օժտված լինի երկու մոդելների առավելություններով, ինչը որ նպատակահարմար կլինի սպառողների արտադրական կարիքներն առավելագույն չափով բավարարելու համար։ Ուստի հակառակ պետական ստանդարտի ցուցումներին, գործարանը կարողացավ յուրացնել 2 Լ 614 մոդելի հաստոցների սերիական արտադրությունը, մի մոդել, որն ունի 2614 և 2 Ա. 614 հաստոցների առավելությունները։ Տվյալ միջոցառումը տվեց տնտեսական մեծ արդյունքներ։ 80 մմ. տրամագծով իլ ունեցող 2 Լ 614 մոդելի հաստոցը հուսալի է շահագործման մեջ և կարող է կատարել այդ երկու տիպի հաստոցների աշխատանքը։ Եթե մինչև այժմ սպառողները հաստոցներ ընտրելիս նկատի էին ունենում հաստոցի տիպը, ելնելով մշակվող դետալների բնույթից ու մեծությունից, ապա 2 Լ 614 հաստոցի*



*արտադրությունը կարգավորելու հետ ընտրության պրոբլեմը վերանում է միջից։ Այս ամենը գալիս է ասելու, որ անհրաժեշտ է որքան կարելի է շուտ հաստատուն կարգ սահմանել պետական ստանդարտներում։*

*Մեր գործարանի կոլեկտիվն այն տեսակետին է, որ այդ ունիֆիկացումը տնտեսական ու տեխնիկական մեծ օգուտներ կտա։ Նախ, կվերանա բազմատիպությունը, որն իր հերթին նախադրյալներ կստեղծի արտադրության պլանավորումն ավելի կայուն դարձնելու և արմատավորելու կոմպլեկտային հանձնումները Նովոչերկասկի էլեկտրաքարշաշինարարների մեթոդով։ Երկրորդ, կբարելավվի արտադրանքի որակը, կընդլայնվեն տեխնոլոգիական հնարավորությունները։ Երրորդ, կստեղծվեն ու կընդլայնվեն հետագա ագրեգատավորման հնարավորությունները, որն իր հերթին կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը։*

*Տնտեսական լավագույն ցուցանիշների հասնելու համար գործարանը առանձնահատուկ ուշադրություն է դարձնում խնայողությանը։ Ներտաշ հաստոցների արտադրության մեջ ընդհանուր ծախսումների մոտավորապես 42 տոկոսը բաժին է ընկնում նյութերին, այն է՝ չուգունե և գունավոր մետաղների ձուլույթներին (բրոնզ և ալյումին), գլանվածքին, քիմիկատներին, կոմպլեկտավորման արտադրանքներին (էլեկտրաշարժիչներ, առանցքակալներ), կապոցվածքի փայտեղենին և այլն։ Այդ արժեքավոր նյութերի ճիշտ օգտագործումը բացառիկ կարևոր ժողովրդատնտեսական նշանակություն ունի։ Եվ ահա գործարանը կարողացավ էական տեղաշարժ կատարել այդ նյութերի գործադրման բնագավառում։ Այսպես, օրինակ, բիմետալիզացիայի պրոցեսի արմատավորման շնորհիվ բրոնզի ծախսումը գործարանում կրճատվեց 60 տոկոսով։ Այնուհետև, կարողացանք կրճատել ալյումինի գործադրումը։ Այդ բնագավառում ոչ կարևոր դեր կատարեց թանկարժեք ու դեֆիցիտային արտադրանքների փոխարինումն ավելի էժանագին ու պակաս դեֆիցիտային արտադրանքներով։ Եթե առաջներում հաստոցների վրա դրվում էր 220 ռուբլի արժողություն ունեցող ՄԻ—42 մոտորը, ապա ռացիոնալիզատորական առաջարկության հիման վրա այն փոխարինվեց Լենինգրադի «Էլեկտրոսիլա» միավորման արտադրած ՊՆՎՁ—45 շարժիչով, որի արժեքը 67 ռուբլի է։ Դա հնարավորություն տվեց 1964 թվականին խնայել 34 հազար ռուբլի։*

*Մենք մեր առաջնահերթ ու հիմնական խնդիրներից մեկն ենք համարում՝ արտադրության ստորին հրամանատարներին, վարպետներին, տեղամասերի և հերթափոխությունների պետերին սովորեցնել՝ մտածել այն մասին, թե ինչպես կարելի է ավելի խնայողաբար, ավելի արդյունավետ օգտագործել արտադրական կարողությունները, հումքը և նյութերը, ավելի ճիշտ կազմակերպել աշխատանքը, նրա նորմավորումը։*

*Այս հոդվածում հնարավոր չէ շոշափել գործարանի կոլեկտիվի լուծած բոլոր հարցերը, բայց ավելորդ չի լինի նշել, որ Լուսավանի հաստոցաշինական գործարանը ռեսպուբլիկայում առաջինն էր, որ յուրացրեց կարծրաձուլվածք գործիքի ալմաստային նախասրման պրոցեսը, կրճատելով ծախսումը գրեթե երկու անգամ։ 1964 թվականին գործարանը պլանով նախատեսված 134 հազար ռուբլու վնասի դիմաց ստացավ 100 հազար ռուբլու շահույթ և իր արժանավոր տեղը գրավեց շահութաբեր ձեռնարկությունների շարքում։*

*Ներկայումս ավարտվում են գործարանի հավաքման արտադրամասի շինարարությունը, նախատեսվում են նաև մի շարք նոր տեխնոլոգիական միջոց-*

տառումներ, որոնք հնարավորություն կտան արտադրանքի թողարկումը 1965 թ. ավելացնել 30—35 տոկոսով և բարձրացնել գործարանի շահութաբերությունը։

Կարևոր նշանակություն ունի նաև Լուսավանի ու մոտակա գյուղերի միջև տրանսպորտային կապերի հաստատումը։ Այսպես, գործարանը հաճախ հարկադրված է լինում մասնագետներին ձեռնարկություն փոխադրել շուրջ 20 կիլոմետր հեռու տեղավորված բնակավայրերից։

Ժամանակն է նաև, որ Լուսավանում ստեղծվեն հումքային ու վաճառահանման բազաներ, ինչը որ մեր հաստոցաշինական գործարանին հնարավորություն կտա արտադրական ծախքերը կրճատել 14 տոկոսով։

Լուսավանի հաստոցաշինական գործարանի արտադրության համար բնորոշ են բարձր աշխատատարությունը և մեծ նյութատարությունը։ Ահա թե ինչու տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշների համար մղվող պայքարում լուրջ նշանակություն է ձեռք բերում նախապատրաստման արտադրության հատակ կազմակերպումը։ Երևանի գործիքաշինական գործարանը, որը կոչված է մեքենաշինական ձեռնարկություններն ապահովելու անհրաժեշտ հարմարանքներով, իր ներկա դրությամբ ի վիճակի չէ կատարելու այդ խնդիրը։ Բացի այդ էլ մի շարք մասնագիտացված ձեռնարկություններ դեռևս չունեն նախաշինվածքի արտադրության անհրաժեշտ օղակներ։ Այդ իսկ պատճառով էլ գործարանը հարկադրված է լինում իր պատվերները հանձնել այլ և այլ ձեռնարկությունների, նույնիսկ տնտեսական շրջանի սահմաններից դուրս։

Արտադրությունը շահութաբեր դարձնելու համար հաճախ հարկ է լինում կոնստրուկտիվ վերափոխություններ կատարել արդեն թողարկված հաստոցների մեջ, իսկ երբեմն նաև ստեղծել նոր տիպի մեքենաներ ու սարքավորում։ Մեքենաշինական գործարաններում հիմնական ֆոնդերի բաժինը կազմում են ագրեգատային, ներտաշ և այլ տիպի ունիկալ հաստոցները, ուստի դրանց արտադրողականության բարձրացումը կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման հիմնական պայմանն է։

Հորիզոնական-ներտաշ հաստոցների արտադրողականությունը բարձրացնելու երկու ուղի գոյություն ունի՝ մեքենայական ժամանակի և ապա օժանդակ ժամանակի կրճատումը։ Մեքենայական ժամանակի կրճատումը ձեռք է բերվում հատման ավելի բարդ, ավելի լարում ռեժիմներ օգտագործելու միջոցով, ինչը որ պրակտիկայում հաճախ նպատակահարմար չի լինում։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, Լուսավանի հաստոցաշինական գործարանը 1963 թվականին ստեղծեց հորիզոնական-ներտաշ ունիվերսալ հաստոցների այնպիսի փորձնական նմուշներ, որոնք ունեն բարձր արտադրողականության կոորդինատների կիսաավտոմատիկ հաշվանք, 65 և 80 մմ տրամագծով իլեր։ Այդ հաստոցների օգտագործումը զգալի չափով կկրճատի մշակվող դետալի տեղակայումն ու վերջնական ստուգումը։

Նոր, տեխնիկապես ավելի առաջադիմական մեքենաներ ստեղծելու համար գործարանը պետք է ունենա իր հզոր փորձնական բազան, կահավորված անհրաժեշտ սարքավորումով և գործիքներով։ Դա հնարավորություն կտա խոր հետազոտել և ընտրել առավել արդյունավետ ու խնայողական վարիանտներ, լիովին յուրացնել տեխնոլոգիական պրոցեսի առանձին ստադիաները։

**Ս. ԱՎԱՆՅԱՆ**
Լուսավանի ներտաշ հաստոցների
գործարանի դիրեկտոր

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՍՆՆԴԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ԱՇԽԱՏՈՒԺԻ ԶԲԱՂՎԱԾՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

Հայկական ՍՍՌ սննդի արդյունաբերությունը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ամենահին և ամենազարգացած ճյուղերից մեկն է։ Ներկայումս ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ավելի քան 27 տոկոսը տալիս են սննդարդյունաբերության ձեռնարկությունները։ Այս ճյուղում ընդգրկված է ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ զբաղված ամբողջ աշխատուժի մոտ 11 տոկոսը, արդյունաբերական արտադրական ֆոնդերի՝ 10,5 տոկոսը։

Հայկական ՍՍՌ սննդի արդյունաբերությունը բաժանվում է մի շարք ենթաճյուղերի՝ գինեգործական, պահածոների, մսի, կաթի, յուղ-պանրի, գարեջրի, ոչ ոգելից խմիչքների, հացի, հրուշակեղենի, ալյուրի, շաքարի, ծխախոտի և այլն։ Սննդարդյունաբերության մեջ ինչպես համախառն արտադրանքի, այնպես էլ աշխատողների թվաքանակի ու հիմնական արտադրական ֆոնդերի տեսակարար կշռով՝ որոշիչը գինեգործության և պահածոների արդյունաբերությունն է։ Այդ ենթաճյուղերի համախառն արտադրանքը կազմում է սննդարդյունաբերության ամբողջ համախառն արտադրանքի 46,8 տոկոսը։

Գյուղատնտեսության հետագա զարգացումը, ինչպես նաև հիշյալ ենթաճյուղերի կողմից թողարկվող արտադրանքի իրացման հնարավորությունների ընդլայնումն ավելի կմեծացնեն այդ ենթաճյուղերի զարգացման հնարավորությունները։ Այսպես, օրինակ, խաղողի այգիների տարածությունները 1970 թ., 1960 թ. համեմատությամբ, կընդլայնվեն ավելի քան 1,7 անգամ, որի շնորհիվ 1970 թ. խաղողի համախառն բերքը, 1960 թ. համեմատությամբ, կավելանա 3 անգամ։ Բացի այս, կընդարձակվեն նաև խաղողի բարձրորակ տեսակների այգիները և մեկ հեկտարից ստացվող բերքատվությունը։ Վերջինս հիմնականում օգտագործվում է կոնյակի արդյունաբերության, ինչպես նաև թունդ դեսերտային գինիների արտադրության մեջ։ Դրա շնորհիվ 1970 թ., 1965 թ. համեմատությամբ, կոնյակի արտադրությունը կաճի 2,5 անգամ, շամպայն գինիներինը՝ 2 անգամ։

Գինու և կոնյակի արտադրության ընդլայնումը պահանջում է մեծացնել ոչ միայն եղած գործարանների արտադրական հզորությունները, այլև կառուցել նոր գործարաններ։ Նպատակահարմար է կառուցել մեծ և միջին չափի արտադրական կարողություններ ունեցող գինեգործական ձեռնարկություններ։ Ըստ պետական պլանային օրգանների նախագծումների, 1965—70 թթ. կմե-

ծացվեն Արտաշատի կոնյակի, Նոյեմբերյանի գինու գործարանները։ Երևանի կոնյակի գործարանում կկառուցվեն սպիրտի պահեստներ, շամպայն գինիների գործարանում՝ գինու պահեստներ և այլն։ Յոթնամյակի տարիներին սկսվել և առաջիկայում կավարտվեն Հոկտեմբերյանի Մյասնիկյանի անվան, Բուրաստանի, Արարատի գինու գործարանների (կոնյակի սպիրտի արտադրամասերով) Գառնիի, Այգևանի, Այգեշատի, Նալբանդյանի գինու բաժանմունքների շինարարությունը։ 1965—1970 թթ. ընթացքում գինու-կոնյակի արտադրության զարգացումը կպահանջի մեծ չափերի կապիտալ ներդրումներ։ Այն երկու անգամ ավելի կլինի, քան 1961—1965 թվականների սննդի արդյունաբերության կապիտալ ներդրումները։

Սննդարդյունաբերության ճյուղային կառուցվածքում որոշիչ դեր է պատկանում նաև պահածոների արդյունաբերությանը, որը լայն հեռանկար խոստացող ճյուղ է։ Ռեսպուբլիկայի պահածոների արդյունաբերությունը հիմնականում պտղա-բանջարային ուղղություն ունի։ Ինչպես գինեգործության, այնպես էլ պահածոների արդյունաբերության հետագա զարգացումը հիմնականում պայմանավորված է գյուղատնտեսության հետագա զարգացմամբ, պտղատու այգիների, ինչպես նաև բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակմամբ։

Պտղատու այգիների, ինչպես նաև բանջարա-բոստանային տարածությունների ընդլայնումը, հեկտարից ստացվող բերքատվության բարձրացումը հնարավորություն կտան 1970 թվականին մրգերի մշակությունը, 1965 թվականի համեմատությամբ, ավելացնելու 2,5, բանջարեղենի մշակությունը՝ 2,5, խաղողի հյութի արտադրությունը՝ 4, պտղատու-բանջարեղենի պահածոների արտադրությունն ավելի քան 2 անգամ։

Ինչպես գինեգործության, այնպես էլ պահածոների արտադրության ընդլայնմանը խթանում է այս ենթաճյուղերի թողարկած արտադրանքների իրացումը։ Այն սպառվում է ոչ միայն ռեսպուբլիկայի ներսում, այլև Միության մեջ և նրա սահմաններից դուրս։

Սակայն նույնը չի կարելի ասել սննդարդյունաբերության մյուս ճյուղերի՝ հացաթխման, հրուշակեղենի, գարեջրի, ոչ ոգելից խմիչքների, շաքարի, ձկան և այլ արտադրությունների մասին։ Այս ճյուղերի հետագա լայն զարգացումն այս կամ այն պատճառով սահմանափակվում է մի կողմից դրանց պահանջարկով, մյուս կողմից, հումքային բազայով։ Սննդարդյունաբերության բոլոր ճյուղերն էլ, կապված ռեսպուբլիկայի բնակչության աճի հետ, զարգացման որոշ հեռանկարներ ունեն։ Մի կողմից բնակչության աճը, իսկ մյուս կողմից սննդի արդյունաբերության արտադրանքով նրանց պահանջները բավարարելու անհրաժեշտությունը նորանոր խնդիրներ են դնում արտադրության այս ճյուղերի հետագա զարգացման համար։

Սննդարդյունաբերության հետագա զարգացումը հնարավորություն կտանդի արդյունաբերության այս ճյուղում ներգրավելու համապատասխանաբար լրացուցիչ աշխատուժ։ Այս տեսակետից անհրաժեշտ է նկատի առնել սննդարդյունաբերության որոշ աշխատատար ճյուղերի հետագա զարգացման անհրաժեշտությունը։ Բայց սննդի արդյունաբերությունը, համեմատած ռեսպուբլիկայի արդյունաբերության այլ ճյուղերի հետ, ավելի քիչ աշխատատար է, և ընդհակառակը՝ չափազանց շատ նյութատար։ Նյութական ծախսումների գումարը նրա համախառն արտադրանքի մեջ կազմում է 71 տոկոս։ Այսպես, եթե



ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության միջին աշխատատարությունն ընդունենք (մեկ մլն. ռուբլուն ընկնող աշխատողների թվաքանակը) 100 տոկոս, ապա սննդարդյունաբերության աշխատատարությունը կկազմի միայն 40,7 տոկոսը։ Անհրաժեշտ է նշել, որ ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության տարբեր ճյուղեր ունեն աշխատատարության տարբեր աստիճաններ։ Այդ երևում է հետևյալ աղյուսակից։

| Սննդարդյունաբերության ենթաճյուղերը | Աշխատատարությունը տոկոսներով | | Հիմնական ֆոնդերը տոկոսներով | |
|---|---|---|---|---|
| | ռեսպուբլիկայի արդյունաբերության միջին աշխատատարության նկատմամբ | սննդարդյունաբերության միջին աշխատատարության նկատմամբ | ռեսպուբլիկայի արդյունաբերության միջին ֆոնդատարության նկատմամբ | սննդարդյունաբերության միջին ֆոնդատարության նկատմամբ |
| Ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունը . | 100,0 | — | 100,0 | — |
| Ամբողջ սննդարդյունաբերությունը . . . . | 40,7 | 100,0 | 40,8 | 100,0 |
| Այդ թվում՝ | | | | |
| Ձկան . . . . . . . . | 150,4 | 369,5 | 155,4 | 380.9 |
| Մսի . . . . . . . . | 36,3 | 89,0 | 53,3 | 131,0 |
| Յուղ-պանրի . . . . . . | 50,4 | 123,8 | 63,4 | 165,4 |
| Շաքարի . . . . . | 70,1 | 176,2 | 74,9 | 183,5 |
| Ալյուր-կրուպա . . . . | 22,9 | 56.1 | 25,4 | 62,2 |
| Հացաթխման . . . . . . | 59,9 | 147,1 | 29,5 | 71,5 |
| Հրուշակեղեն . . . . . | 55,9 | 137,4 | 22,3 | 54,5 |
| Պահածոների . . . . . | 115,0 | 282,4 | 79,0 | 193,0 |
| Գինեգործական . . . . . | 13.4 | 33,0 | 28,7 | 70,3 |
| Գարեջրի . . . . . . . | 96,1 | 236.0 | 145.0 | 355,4 |
| Ոչ ոգելից խմիչքների . . | 119.7 | 294,1 | 52,8 | 129,4 |
| Ծխախոտի . . . . . | 63,0 | 155,0 | 55,2 | 135,4 |
| Սննդարդյունաբերության այլ ճյուղեր . . . . . | 147,3 | 362,0 | 79,7 | 195,4 |

Մեր ռեսպուբլիկան դասվում է չզբաղված աշխատանքային որոշակի ռեզերվներ ունեցող ռեսպուբլիկաների և տնտեսական շրջանների շարքին։ Այդ իսկ տեսակետից մեր տնտեսության մեջ աշխատունակ բնակչության զբաղվածության բարձրացումն ունի տնտեսական և քաղաքական կարևոր նշանակություն։ Ուսումնասիրելով սննդի արդյունաբերությունն այդ տեսանկյունից, թվում է, թե մենք պետք է զարգացնենք սննդարդյունաբերության միայն աշխատատար ճյուղերը։ Սակայն բանն իրականում այդպես չէ։ Սննդարդյունաբերության զարգացումը, ինչպես վերևում նշվեց, պայմանավորված է գյուղատնտեսական և հումքի այլ տեսակների առկայությամբ։ Այսպես, ձկնարդյունաբերությունը սննդարդյունաբերության ենթաճյուղերի մեջ ամենաաշխատատարն է։ Սակայն այս ճյուղը զարգացման լայն հեռանկար չունի, քանի որ ապահովված չէ հումքային բազայով։ Վերցնենք ռեսպուբլիկայի գարեջրի արդյունաբերությունը։ Այս արտադրությունը նույնպես աշխատատար է. սակայն նրա զարգացումը սահմանափակվում է ռեսպուբլիկայի բնակչության աճի և նրա պահանջների ավելացման հետ։ Ճիշտ է, բնակչության մեկ շնչին ընկնող գարեջրի արտադրությամբ մեր ռեսպուբլիկան ետ չի մնում ՍՍՌՄ համապա-

տասխան ցուցանիշներից, բայց բնա-կլիմայական պայմանների պատճառով մեզ մոտ գարեջրի սպառումն ավելի մեծ է։

Դրա համար էլ Հայկական ՍՍՌ Պետպլանը նախատեսում է մինչև 1970 թվականը մեր ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում կառուցել գարեջրի և ոչ ոգելից խմիչքների 4 ոչ մեծ գործարաններ։ Այդ գործարանների կառուցումով գարեջրի արտադրությունը 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, կավելանա 41 տոկոսով և դրան համապատասխան այստեղ զբաղվածությունը կաճի 33 տոկոսով։ Սակայն այս ճյուղի զարգացման հեռանկարները մեծ չեն։ Այն սահմանափակվում է այս ճյուղի թողարկած արտադրանքի իրացման դժվարություններով։

Հայկական ՍՍՌ սննդարդյունաբերության մեջ կան ճյուղեր, որոնք և՛ աշխատատար են, և՛ ունեն ինչպես հումքային բազա, այնպես էլ արտադրանքի իրացման լայն հնարավորություններ։ Ուստի այդպիսի ճյուղերի զարգացումը չի սահմանափակվում վերը նշված մոմենտներով։ Այդպիսի ճյուղերից է պահածոների արդյունաբերությունը։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի ընդունած հատուկ որոշման համաձայն, մեծ զարկ է տրվելու, առանձնապես, բանջարա-խորտիկային և պահածոների արտադրությանը։ Այդ որոշումը մեծ պարտավորություններ է դնում նաև մեր ռեսպուբլիկայի պահածոների արդյունաբերության վրա։ Ռեսպուբլիկայի պահածոների արդյունաբերության պտղաբանջարային ուղղությունը առանձնապես աշխատատար է և բանվորական մեծ ուժի պահանջ է ներկայացնում։ Մինչդեռ պետք է ասել, որ պահածոների արդյունաբերությունն իր սեզոնային բնույթի պատճառով դժվարությամբ է կարողանում բանվորական ուժ հավաքագրել։ Այսպես, 1964 թվականին Երևանի պահածոների գործարանին անհրաժեշտ էր (պլանով) 1700 բանվոր, մինչդեռ գործարանը կարողացել է հավաքագրել միայն 1300 բանվոր։

Սեզոնի ժամանակ բանվորական ուժի պակաս են զգում պահածոների համարյա բոլոր գործարանները։ Նման իրավիճակից դուրս գալու ելքը սառնարանային մեծ տնտեսությունների ստեղծումն է, պտղա-բանջարեղենի պահեստների կառուցումը, ձմռան ամիսներին ուրիշ արտադրանքների արտադրության կազմակերպումը և այլն։ Այս բոլորը հնարավորություն կտան երկարացնելու արտադրության տևողությունը (ցիկլը) և պայմաններ կստեղծեն լրիվ տարին բանվորներին աշխատանքով ապահովելու համար։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ սննդարդյունաբերության մեջ ընդհանրապես և պահածոների արդյունաբերության մեջ առանձնապես, արտադրանքի շատ տեսակներ այլևս չեն արտադրվում կամ դրանց թողարկումը հասցվել է մինիմումի միայն այն պատճառով, որ աշխատատար են։ Գործարանը, չունենալով համապատասխան թվով բանվորական ուժ, կրճատել է այդ արտադրանքների թողարկումը։ Այսպես, Երևանի պահածոների գործարանում արտադրանքի մի քանի տեսակների թողարկումը (պղպեղի լցոն, բադրիջանի լցոն, խորտիկային բոլոր տեսակի պահածոներ) կրճատվել է, դրանց փոխարեն գործարանն արտադրում է կտրտած պղպեղ, կտրտած բադրիջան, որոնք նշանակալից չափով քիչ աշխատատար են և իրենց որակով զիջում են վերոհիշյալ տեսակներին։

Արտադրական պլանները կազմելու ժամանակ գործարանները հաշվի չեն առնում բնակչության պահանջները և ելնում են միայն գործարանի շահերից



վերցնենք կոմպոտների արտադրությունը։ Առանց կորիզի դեղձի կոմպոտ արտադրելու համար պահանջվում է մոտավորապես երկու անգամ ավելի աշխատուժ, քան կորիզով դեղձի կոմպոտ արտադրելու համար։ Այսպես, 1000 տուփ (մեկ լիտր) կորիզով կոմպոտ արտադրելու համար պահանջվում է 3,683 մարդ-օր, իսկ 1000 տուփ (0,5 լիտր) առանց կորիզի դեղձի կոմպոտ արտադրելու համար պահանջվում է 6,040 մարդ-օր։ Այդ իսկ պատճառով առանց կորիզի դեղձի կոմպոտի արտադրանքը հանվել է արտադրությունից։ Այսպիսով, բանվորական ուժով ապահովված չլինելու պատճառով ձեռնարկությունները հաճախ խախտում են իրենց արտադրանքի ասորտիմենտի պլանները և մի արտադրանքի փոխարեն թողարկում են մի այլ արտադրանք, որն ավելի քիչ աշխատատար է։ Գործարաններում այսպիսի խախտումները վերացնելու և պարտիայի ու կառավարության կողմից մշակված որոշումները իրականացնելու համար, պահածոների արդյունաբերության սեզոնի երկարացման մասին պետք է մտահոգվեն ոչ միայն գործարանների ղեկավարները, այլև Ժողտնտխորհի սննդարդյունաբերության վարչության աշխատողները։

Ոչ աշխատատար, սակայն զարգացման մեծ հեռանկարներ ունեցող ճյուղերից է նաև գինու-կոնյակի արտադրությունը։ Այս արտադրության ծավալի վերը նշված մեծ աճը հնարավորություն կտա 1970 թվականին գինեգործության մեջ ներգրավել մոտավորապես 1,5 անգամ ավելի շատ աշխատողներ, քան եղել է 1965 թվականին։ Սակայն, ինչպես գինեգործության, այնպես էլ պահածոների արդյունաբերության և սննդարդյունաբերության մյուս ճյուղերի (գարեջրի, ոչ ոգելից խմիչքների, հանքային ջրերի) արտադրության զարգացման համար մեծ խոչընդոտ է հանդիսանում ռեսպուբլիկայում ապակե տարայի արտադրության վատ կազմակերպումը։ Այժմ այդ պատճառով մեծ չափով տուժում է հանքաջրերի արդյունաբերությունը։ Բավական է ասել, որ Ջերմուկի, Դիլիջանի, Հանքավանի, Սևանի, Արզնու հանքաղբյուրների հեռանկարային հնարավորությունները հաշվվում են մեկ վայրկյանում 1000 լիտր, բայց այժմ օգտագործվում է այդ պաշարների միայն 0,1 տոկոսը, որի պատճառը հիմնականում ռեսպուբլիկայում ապակե տարայի պակասն է։ Յոթնամյակում նախատեսվում է ինչպես ապակե տարայի նոր գործարանների կառուցումը, այնպես էլ եղած գործարանների ընդլայնումը, որը հնարավորություն կտա սննդարդյունաբերության մյուս ճյուղերի ընդլայնմանը, ինչպես նաև հենց իրեն՝ ապակե տարայի արդյունաբերության մեջ բանվորական մեծ ուժի ընդգրկմանը։

Խոսելով ապակե տարայի հարցի մասին, պետք է նշել, որ պակաս կարևոր նշանակություն չունի նաև ռեսպուբլիկայում թղթի և, ընդհանրապես, բոլոր տեսակի այլ տարաների արտադրության կազմակերպումը։ Ճիշտ է, ներկայումս թողարկվող արտադրանքի սկզբնական փաթեթավորման գործը որոշ չափով իրականացնում են արտադրող կազմակերպությունները, բայց դա դեռ բավարար վիճակում չէ։ Անհրաժեշտ է ընդլայնել մանր գործարանային փաթեթավորումով արդյունաբերական ապրանքների թողարկումը։ Վաճառքի համար թողարկվող ապրանքների փաթեթավորումը նպաստում է ոչ միայն ապրանքների որակի պահպանմանը, այլև բարելավում է առևտրի հիգիենիկ պայմանները, կրճատում առևտրի ծախսերը, բարձրացնում առևտրի կուլտուրան և, վերջապես, մեծացնում ապրանքաշրջանառությունը։ Բացի այդ, ժողովրդական տնտեսությունը հսկայական օգուտներ կստանա ապրանքների բնական կորուստների, չորացման, փչացման և այլ վնասների գոյություն ունեցող նոր-

մաների փոքրացման կամ վերացման հաշվին։ Այս հարցի հաջող լուծման համար նպատակահարմար է ժողտնտխորհի սիստեմում կազմակերպել կենտրոնացված տարայի արտադրություն։

Սննդարդյունաբերության կարևոր ճյուղերից է նաև հացաբուլկեղենի և հրուշակեղենի արդյունաբերությունը, որը տալիս է սննդարդյունաբերության ամբողջ համախառն արտադրանքի 17 տոկոսը։ Հացաբուլկեղենի և հրուշակեղենի արդյունաբերության հետագա զարգացումը մեծապես կապված է բնակչության աճի և նրա պահանջների առավել լրիվ բավարարման հետ։ Բնակչության մեկ շնչին ընկնող հացի սպառման զուգություն ունեցող նորման ունի նվազման տենդենց։ Դա բացատրվում է բնակչության նյութական բարեկեցության բարձրացումով, բազմատեսակ և ավելի սննդարար մթերքների օգտագործումով։ Հացի փոխարեն բնակչության պահանջարկը աճում է հրուշակեղենի ապրանքների ուղղությամբ։

Հրուշակեղենի արտադրությունն ուսումնասիրության հետաքրքրություն է ներկայացնում ոչ միայն աշխատատարության, այլև կանացի աշխատուժի կիրառման տեսակետից։ Ներկայումս ժողովրդական տնտեսության և, հատկապես, արդյունաբերության բնագավառում աշխատուժի պահանջի լրացման կարևոր աղբյուրը ազատ կանացի աշխատուժն է։ Ժողովրդական տնտեսության մեջ կանացի աշխատուժի ներգրավումը տնտեսական կարևոր նշանակություն ունի։ Բավական է ասել, որ սննդի արդյունաբերության մեջ կանայք կազմում են ամբողջ աշխատողների մոտ 50 տոկոսը։

Ներքոհիշյալ աղյուսակը ցույց է տալիս կանացի աշխատուժի տեսակարար կշիռը սննդարդյունաբերության ճյուղերում։

| | Կանացի աշխատուժի տեսակարար կշիռը ամբողջ աշխատողների թվաքանակում (տոկոսներով) | |
|---|---|---|
| | արդյունաբերական արտադրական անձնակազմ | բանվորներ |
| Սննդի արդյունաբերությունը ընդամենը՝ | 47,3 | 49,5 |
| Մսի | 40,7 | 41,7 |
| Յուղ-պանրի և կաթի | 33,1 | 30,9 |
| Շաքարի | 34,1 | 36,1 |
| Ալրաղաց | 43,3 | 48,5 |
| Հացաթխման | 52,1 | 55,0 |
| Հրուշակեղենի | 61,4 | 63,7 |
| Պահածոների արտադրություն | 53,7 | 52,4 |
| Ծխախոտի | 56,4 | 62,0 |
| Գինեգործական | 37,8 | 39,2 |

Ուստի սննդարդյունաբերության մեջ զբաղվածության բարձրացումը իրենով պայմանավորում է նաև կանացի աշխատուժի զբաղվածության բարձրացումը։

Այսպիսով, Հայկական ՍՍՌ սննդի արդյունաբերությունը ունի զարգացման մեծ հեռանկար, որը պայմանավորված է ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա աճով։ Սննդարդյունաբերության հետագա աճը, ինչպես նաև վերոհիշյալ միջոցառումները մեծ հնարավորություններ կստեղծեն այս ճյուղում լրացուցիչ բանվորական ուժ ներգրավելու համար։

Մ. ԻՍԿՈՒԴԱՐՅԱՆ

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԱՆՈՆԱՎՈՐԵԼ ԳՐՔԻ ԱՌԵՎՏՈՒՐԸ

Ռեսպուբլիկայում բավականին փորձ է կուտակվել գրքի առևտրի գործում։ Ընդլայնվել է գրավաճառ ցանցը, աճում է ապրանքաշրջանառությունը։ Եթե 1940 թվականին մեր ռեսպուբլիկայում գրքի ապրանքաշրջանառությունը կազմել է 841 հազար ռուբլի, ապա 1964 թվականին, միայն գրքի առևտրի վարչության գծով (չհաշված Հայկոոպի և Սոյուզպեչատի առևտուրը) այն կազմեց 3 միլիոն 899 հազար ռուբլի։ Ինչպես տեսնում ենք, գրքի առևտրի դրամական ցուցանիշները վատ չեն։ Հասկանալի է, որ ապրանքաշրջանառության այդպիսի վերելքը պետք է նպաստեր գրավաճառ ցանցի ընդարձակմանը։ 20-ական թվականների հատ ու կենտ գրախանութների փոխարեն այժմ մեր ռեսպուբլիկան ծածկված է գրախանութների, կրպակների և արտախանութային առևտրի լայն ցանցով։ Միայն գրքի առևտրի վարչության գծով ներկայումս գործում են 66 գրախանութ, 80 կրպակ և բազմաթիվ այլ կետեր։ Պլանավորված է առաջիկա հնգամյակում, ապրանքաշրջանառության աճին զուգընթաց, 95-ի հասցնել ժամանակակից և լավ կահավորված գրախանութների թիվը։

Գրավաճառ ցանցի ընդարձակումն, անտարակույս, լավ է։ Սակայն գրքի առևտրի գործում դեռևս կան լուրջ թերություններ, որոնք խանգարում են գրքի նկատմամբ աշխատավորների օր-ավուր աճող պահանջների բավարարմանը։

Գրքի առևտրի գործում եղած թերություններից ամենագլխավորը, թերևս, մասնագիտացված գրախանութների պակասն է։ Անհրաժեշտ է խնայել սովետական մարդու ժամանակը։ Այժմ գրքի հետ կապված յուրաքանչյուր քաղաքացի պետք է իմանա, թե Երևանում, Լենինականում, Կիրովականում և այլուր իր մասնագիտության գծով ո՛ր գիրքը, ո՛ր գրախանութում, ավելին՝ գրախանութի որ բաժնում է վաճառվում։

Գրքի առևտրի վարչության գծով ներկայումս Երևան քաղաքում գործում են մոտ տասը մասնագիտացված գրախանութ։ Օրինակ, № 25 գրախանութում վաճառվում են հասարակական-քաղաքական գրքեր, № 16-ում՝ տեխնիկական, № 26-ում՝ բուկինիստական, № 40-ում՝ իջեցված գներով գրականություն, № 29-ում՝ ակադեմիական հրատարակությունները և այլն։ Սակայն պետք է խոստովանել, որ վերոհիշյալ գրախանութների մասնագիտացումը կրում է ձևական բնույթ։

Գրքի առևտրի վարչության աշխատողներն, ընդառաջելով գրախանութների վարիչների ցանկությանը, ամսական պլանների կատարման պատրվակով, վաճառքի համար մասնագիտացված գրախանութներին են բաց թողնում ոչ պրոֆիլային գրքեր։ Ճիշտ է, դրա միջոցով մասնագիտացված գրախանութը գերակատարում է տվյալ ամսվա պլանը, աշխատողները հավելյալ վարձատրություն են ստանում, բայց տուժում է գրքի առևտուրը։ Նախ՝ մենք չենք կարողանում սովորեցնել հաճախորդին, թե տեխնիկական գրքեր ձեռք բերելու համար ո՛ր գրախանութին պետք է դիմել և երկրորդ՝ համեմատաբար փոքր տպա-

քանակ ունեցող գրքերը ցրվում են ամբողջ ցանցով մեկ։ Այնպիսի վիճակ է ստեղծվել, որ գրախանութում ստացված 5—10 օրինակ գիրքը երկու-երեք շաբաթվա ընթացքում չվաճառվելու դեպքում ընկնում է չիրացված գրքերի կույտի մեջ և կորչում թե՛ գրախանութի և թե հաճախորդի համար. վերջինս գրախանութից-գրախանութ է անցնում ապարդյուն փնտրելով հենց այդ գիրքը։

Գրքի առևտրի վարչության աշխատողները ձգտում են վերջ տալ նման երևույթներին, աշխատում են ամեն կերպ ամրապնդել մասնագիտացված գրախանութների պրոֆիլը, շահագործման հանձնել որոշակի ասորտիմենտով նորանոր գրախանութներ, սակայն այդ գործին մեծապես խանգարում է ճշգրիտ պլանավորման բացակայությունը։

Գրախանութների տարեկան և եռամսյակային պլանները կազմելիս մեզ մոտ ամենևին հաշվի չի առնվում, թե ինչպիսի թեմատիկայով գրքեր է վաճառելու տվյալ գրախանութը։ Այստեղից էլ սկսվում է վազքը մեծ պահանջարկ ներկայացնող գրքերի հետևից։ Բոլորովին անտեսվում են այն գրքերը, որոնք, իրոք, կարիք ունեն լայն պրոպագանդման, որոնց վաճառքի համար պահանջվում է համբերատար ու քրտնաջան բացատրական աշխատանք։ Պետք է ամեն կերպ խրախուսել և արտոնյալ վիճակի մեջ դնել այն մասնագիտացված գրախանութները, որոնք զբաղված են հասարակական-քաղաքական, տեխնիկական ու գյուղատնտեսական գրքերի վաճառքով։ Նման դեպքում հնարավոր կլինի խուսափել պահեստներում և գրախանութներում հազարավոր գրքերի անտեղի կուտակումներից, որոնք անասելի դժվարացնում են հաշվառման ու վերահսկողության գործը, տեղիք են տալիս չարաշահումների, մանր ու մեծ վատնումների։

Իսկական մասնագիտացված գրախանութներ ունենալու և դրանց թիվն ավելացնելու դեպքում բոլորն էլ կիմանան որտեղից գնել իրենց պետք եղած գրքերը։ Ավելի հեշտ կլինի ազգաբնակչության ռեալ պահանջարկի որոշումը և, վերջապես, հնարավոր կլինի ասորտիմենտի ճշգրիտ որոշման և տեղերում չվաճառվող գրքերի վերաբաշխման միջոցով կանխել ավելորդ գրքերի մեծ կուտակումները։

Գրքի առևտրի ճիշտ կազմակերպմանը մեծ չափով վնասում է նաև հրատարակչությունների ոչ ռիթմիկ և, երբեմն, նույնիսկ անօգտակար գրքերի տպագրությունը։

Ռեսպուբլիկայի հրատարակչական կազմակերպությունները, համարյա առանց բացառության, հաճախակի փոփոխում են իրենց հրատարակչական պլանները։ Տարեկան թեմատիկ պլանում նշված մի գրքի փոխարեն լույս են ընծայում մի այլ գիրք, որի վերաբերյալ գրքի առևտրի վարչությունում պատվերներ չկան։ Այդտեղից էլ սկսվում է բյուրոկրատական գրագրությունների քաշքշուկը։

Ավելի քան վատ է, երբ հրատարակչությունը թերակատարում է տարեկան պլանը։ Բազմաթիվ գրասերներ սպասում են, որ թեմատիկ պլանում ըստ եռամսյակների նշված գրքերը ուր որ է լույս կտեսնեն, սակայն անցնում է տարին, հաջորդ տարվա կեսը՝ գիրքն այդպես էլ լույս աշխարհ չի գալիս։ «Հայաստան» հրատարակչության 1964 թվականի թեմատիկ պլանում նշված շատ գրքեր լույս տեսան միայն 1965 թվականին։ Անցել է 1965 թվականի կեսը, սակայն «Հայաստան» հրատարակչությունը 1964 թվականից պարտք մնացած մոտ 29 անուն գիրք չի տվել գրավաճառ ցանցին։ Նույնն է վիճակը նաև «Միտք», «Գիտություն» և «Լույս» հրատարակչություններում։

Գրքի առևտրի վարչությունը վերջին մեկ-երկու տարվա ընթացքում հասել է այն բանին, որ կանխվել է առանց պատվերների գրքերի հրատարակումը։ Հետևողական աշխատանք է կատարվում գրքերի տպաքանակը ճիշտ որոշելու բնագավառում, սակայն մենք դեռևս չենք կարողացել որոշակի ազդեցություն գործել՝ գրքերը նշված ժամկետին հրատարակելու ուղղությամբ։ Կան դեռևս գրքեր, որոնց հրատարակումը ձգձգվում է տարիներ շարունակ և լույս են տեսնում այն ժամանակ, երբ դրանց բովանդակությունն արդեն հնացած է, չեն վաճառվում և այդպիսով մեծ վնաս է կրում պետությունը։ Ահա մի բնորոշ



օրինակ։ «Հայաստան» հրատարակչությունը, դեռևս 1961 թվականին, պլանավորել էր լույս ընծայել Վ. Մնացականյանի «Շենքերի ներքին գունազարդումը» ալբոմը։ Գրքի առևտրի վարչությունն իր ժամանակին հավաքել էր դրա համար մեծ թվով պատվերներ, նույնիսկ ռեսպուբլիկայից դուրս գտնվող գրավաճառ կազմակերպություններից։ Ալբոմը լույս տեսավ միայն 1964 թվականի վերջերին, այն էլ եռապատիկ թանկ։ Գրավաճառ կազմակերպությունները, նկատի ունենալով իրենց պատվերի վաղեմիությունը, ալբոմը չվերցրին վաճառքի։ «Հայաստան» հրատարակչությունն ստիպված իջեցրեց գինը և վերադաս մարմինների միջնորդությամբ այն պարտադրվեց «Հայգրքին»։ Այդ քաշքշուկի հետևանքը եղավ այն, որ ալբոմն անշարժ մնաց գրքի առևտրի վարչության պահեստներում ու գրախանութներում, չվաճառվեց։ 1960—61 թվականին շենքերի ներքին գունազարդումը կատարվում էր ալբոմում նշված ձևով, իսկ 1964—65 թվականներին բոլորովին փոխվել է գունազարդումը։

Այս կարևոր հանգամանքն է, որ հաշվի չի առել հրատարակչությունը, և 30 հազար տպաքանակ ունեցող այդ ալբոմը բեռ է դարձել գրավաճառ ցանցի ուսերին։ Եթե հրատարակչությունները փոքր-ինչ ավելի մտահոգվեն գրքերի նպատակահարմար հրատարակմամբ, հաշվի առնեն ժամանակի ոգին ու մարդկանց իրական պահանջները, ապա գրքի առևտրի գործը բավականին կլավանա։

ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1964 թվականի հունիսի՝ «Հրատարակչական գործի բարելավման և գրքի առևտրում եղած թերությունները վերացնելու միջոցառումների մասին» որոշումը իրավունք է վերապահել գրքի առևտրի կազմակերպություններին՝ կատարելու ցանցում եղած գրքերի գների իջեցում և դուրսգրում՝ տարեկան ապրանքաշրջանառության 2 տոկոսի չափով։ Դա զգալի չափով խթանում է գրքի առևտրի աշխատանքները։ Գրքի առևտրի վարչության պահեստներում ու գրախանութներում տարիներ շարունակ մնացել են բովանդակությամբ հնացած և ապրանքային տեսքը կորցրած հազարավոր գրքեր։ 1964 թվականին և ընթացիկ տարում, չնայած որոշ սխալների, մեզ հաջողվեց ազատվել չվաճառվող գրքերի որոշ մասից և իջեցնել մի խումբ գրքերի գինը, բեռնաթափել պահեստներն ու գրախանութները։

Ներկայումս անց է կացվում գրավաճառ ցանցում եղած գրքերի հաշվառում։ Մենք մինչև այսօր էլ, ինչպես հարկն է չգիտենք, թե ինչպիսի՞ գրքեր կան տարբեր գրախանութներում և դրանցից քանի՞ օրինակ է վաճառվել։

Սրանք դժվարությունների հետ կապված հարցեր են և էական դեր են խաղում գրքի առևտրի գործում։ Գրավաճառ ցանցում մնացած, մինչև մեկական օրինակ գրքերի անվանական հաշվառումը հնարավորություն կտա կատարելու գրքերի վերաբաշխում, այն հաշվով, որ դրանք տեղափոխվեն այն վայրերը, ուր կա դրանց պահանջը։ Այդ նպատակով գրքի առևտրի վարչությունում ստեղծվել է ասորտիմենտի բաժին, որն ամփոփում է անվանական հաշվառման արդյունքները, հանրագումարի բերում յուրաքանչյուր անուն գրքի մնացորդը։ Շուտով քարտերի ձևով կստեղծվի տեղեկատու-մատենագիտական ապարատ, որը հնարավորություն կընձեռի հետևելու գրավաճառ ցանցում եղած յուրաքանչյուր գրքի շարժմանն ու վաճառքին։

Գրավաճառ ցանցի աշխատողներին օգնելու, գրքերն ըստ բովանդակության դասավորելու աշխատանքները դյուրացնելու նպատակով, որոշված է գրքերի վրա նշանակել գրավաճառային ինդեքս, մշակված է գիտական սխեմա, ըստ որի գրքերը արաբական թվանշաններով բաժանվում են գիտության բնագավառների ու ճյուղերի համապատասխան։ Գրավաճառ ինդեքսների կիրառումը գիտական հիմքերի վրա կդնի գրքի առևտուրը։

Մնում է, որ մեր հրատարակչությունները կենսագործեն այդ լավ նախաձեռնությունը, նոր լույս տեսնող յուրաքանչյուր գրքի վրա նշանակեն գրավաճառ ինդեքս այն ձևով, ինչպես, ասենք, «Հայաստան» հրատարակչությունն այդ անում է գրադարանների համար։

Ռ. ՌՈՒԲԻՆՅԱՆ

---

# Նոր մտքի երկունքը

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԴՊՐՈՑԻ ՄԱՍԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագիրը հրավիրել է իր ընթերցողներին արտահայտվել մանկավարժական հարցերի շուրջ: Այդպիսի ստեղծագործական քննարկումներն ու բանավեճերը, որքան էլ տարբեր ձևով ըմբռնվեն, այնուամենայնիվ, վերջում բերվում են մի ընդհանուր հայտարարի և դրանից շահում է գործը: Այս համարում հրապարակում ենք ստացված կարծիքներից երկուսը:

Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Երևանի № 93 դպրոցի ուսուցիչ, ավագ ջոկատավար

*Ի՞նչ է պետք, որպեսզի ուսուցիչը և աշակերտները իրար ավելի մոտ կանգնած լինեն, իսկ դպրոցն աշակերտի համար միշտ մնա հարազատ ու անմոռանալի: Շա՛տ բան: Այս խնդրի կարևոր մոմենտներից մեկն էլ աշակերտների տարիքային առանձնահատկությունների հաշվառումն է: Բարձր դասարանցիների հետ աշխատելու մեթոդները, նրանց նկատմամբ ուսուցիչների վերաբերմունքը շատ դեպքերում նույնն են, ինչ միջին ու կրտսեր տարիքի աշակերտների նկատմամբ, որը սխալ է:*

*Ուսուցիչը և աշակերտները հանդիպում են ամեն օր: Երբ ուշադրությամբ նայում ես բարձր դասարանցիներին, զգում ես, որ նրանց համար արդեն փոքր են այն նստարանները, որոնց վրա երեկ պարապում էին: Ուսուցչի և բարձր դասարանցիների մերձեցմանը երբեմն խանգարում է այն, որ մենք՝ ուսուցիչներս, շատ հաճախ մոռանում ենք նրանց մեջ տեսնել հասուն մարդուն և չենք կարողանում նրանց նպատակամղել լավ, մարդկային գործեր կատարելու, հարկ եղած դեպքում վստահել, որը նրանց ավելի է ազնվացնում:*

*Մեր դպրոցի պիոներական ջոկատներից մեկը վերցրել էր մանկապարտեզի սաների շեֆությունը: Այդ ջոկատի տղաներից ոմանք կարծում էին, թե մանկապարտեզում գործ անելը միայն աղջիկներին է վերաբերում: Մի օր մանկապարտեզում պատահական տեսա, որ այնտեղ ջարդված աթոռներ կան: Այդ մասին ակնարկեցի տղաներին: Եվ ի՞նչ: Մեկ շաբաթվա ընթացքում տղաները վերանորոգել էին մանկապարտեզի քսանհինգ աթոռները: Այդ կատարել էին դպրոցի արհեստանոցում և իրենք էլ հանձնել էին մանկապարտեզի վարիչին:*

*Ահա մի այլ դեպք: Ութերորդ դասարանում սովորում էր Արամ անունով մի տղա: Նրանից դժգոհում էին թե՛ ուսուցիչները և թե՛ ընկերների մի մասը: Ջոկատի խորհրդի նիստում, որին մասնակցում էր և դասղեկը, որոշվեց դասարանական ժողովում ավագի համար տալ նրա թեկնածությունը: Այդպես էլ արվեց: Ընկերներից շատերը, ինչպես նաև ուսուցիչների մեծ մասը, որոնք հետո իմացան այդ մասին, շատ զարմացան. չէ որ ավագի համար դասարանում կային ավելի լավ թեկնածուներ:*



*Անցավ առաջին շաբաթը, ապա՝ երկրորդը. անցան օրեր, և օրերի հետ փոխվեց նաև Արամը: Վստահությունը տվեց իր արդյունքը: Այնտեղ, որտեղ պետք է քիչ ասել, հաճախ մենք շատ ենք խոսում, իսկ այնտեղ, որտեղ պետք է անպայման խոսել, մենք երբեմն լռում ենք: Բոլոր դեպքերում մենք պետք է հաշվի առնենք աշակերտների անհատական մղումներն ու վստահենք նրանց: Արդյո՞ք ճշմարտություն չէ, երբ թվանշանի ետևում ուսուցիչը երբեմն չի նկատում դեռահասի ձգտումները, նրա ներքնաշխարհը: Բոլոր դեպքերում վստահել պետք է: Հավատալ աշակերտին, հարգել նրա արժանապատվությունը:*

*Ուսուցիչը միշտ պետք է զգա, որ ինքը հասարակության լիազորված անձն է: Նրա տեսադաշտից ոչ մի աշակերտ դուրս չպետք է մնա: Նա նման է այն հետախույզին, որը պետք է իր սաների մեջ որոնի, գտնի ու զարգացնի այն լավն ու թաքնվածը, որն առավելագույն օգուտ կբերի հասարակությանը: Ուսուցչի համար չկա ավելի մեծ վարձատրություն, քան այդ տեսնելը:*

Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ
Մարտունու շրջանի Վարդենիկի միջնակարգ դպրոցի ուսուցիչ

*Ինչ խոսք, աշխատանքային դաստիարակությունը դպրոցական ուսուցման անկյունաքարն է: Սակայն դպրոցի վերակառուցման ընթացքում թույլ տրվեցին որոշ ավելորդաբանություններ, որոնք զգալի հարված հասցրին ուսուցման գործին: Ծրագրերում տեղ գտան աշխատանքային ուսուցման պրիմիտիվ, պարզունակ թեմաներ՝ սկսած առաջին դասարաններից: Ուսման պլաններում կրճատվեցին ռեալ գիտելիքների ժամերը և դրանց փոխարեն աշակերտներին հանձնարարվեց կատարել այնպիսի աշխատանքներ, որոնք զուրկ են գիտական հիմունքներից և որևէ նախնական հմտություն չեն պահանջում:*

*Բարձր դասարաններում քիչ արդյունք են տալիս «տնարարություն» առարկան և երկարատև արտադրական պրակտիկաները: Գյուղական դպրոցների ծրագրերը կազմելիս պետք է նկատի ունենալ, որ որոշ հասակի երեխաներ միշտ էլ ծնողների հետ կատարում են իրենց ուժերին համապատասխան ֆիզիկական աշխատանք և մանուկ հասակից հոգեբանորեն ու գործնականապես նախապատրաստվում են արտադրողական աշխատանքին: Միջնակարգ դպրոցի որոշ դասարաններում նախատեսված են նաև ֆակուլտատիվ պարապմունքի ժամեր: Մեր կարծիքով, այս ևս ավելորդ է և խիստ ծանրաբեռնում է աշակերտներին: Արտադրական հիմունքների և աշխատանքի ուսուցման ժամերին նախատեսված է 25-ից ավելի աշակերտ ունեցող դասարանը բաժանել երկու խմբի. ամեն մի խմբում դասարանների մանրատման պատճառով պետք է պարապեն 2—3 տարբեր մասնագիտության ուսուցիչներ, մինչդեռ շատ դպրոցներում չկան բավականաչափ որակյալ կադրեր, որի պատճառով էլ այդ գործը հանձնվում է պատահական մարդկանց: Առարկաների այսպիսի բաշխումը և ծրագրերի ծանրաբեռնումը բացասաբար են անդրադառնում դպրոցի վրա, գցում են ուսման որակը, խախտում դպրոցի ներդաշնակ աշխատանքը:*

*Պատմության, գրականության դասագրքերը, էլ չենք խոսում մյուսների մասին, խճողված են ընդհանուր դատողություններով, երկարաբանությամբ, բացակայում են նյութի կոնկրետությունն ու հակիրճությունը, գիտական ցայտունությունը: Այսպիսի թերությունները շատ վնասակար են և ճիշտ չեն կողմնորոշում ուսուցչին ու աշակերտին: Թերահավատ չենք դասագրքեր կազմող մեր մտավորականների ուժերի նկատմամբ, բայց նրանցից շատերը երկար տարիներ կտրվել են դպրոցական կյանքից և անհրաժեշտ է պրակտիկ մանկավարժների մասնակցությունը դասագրքեր կազմելու գործին:*

*Ուսուցումն ու դաստիարակությունը ուսուցչի և աշակերտի հոգեկան կապերի անհրաժեշտություն են պահանջում, մտավոր և հուզական աշխարհների ներթափանցում, ստեղծագործական փոխադարձ ազդեցություն ու լիցք, առանց որոնց հնարավոր չէ առաջ գնալ անգամ մի կողմի ակտիվության պայմաններում: Ամեն մի աշակերտ ունի իր՝ մեզ համար դեռ չբացահայտված հոգեկան ուրույն աշխարհը: Մանկավարժությունը լոկ դաստավություն չէ, այն պետք է կազմակերպվի գիտական հոգեբանության հիմունքներով: Ուսուցիչը պետք է կարողանա արթնացնել աշակերտների ներքին ուժերը, ճանաչել նրանց և վրա-*

նա սկզբից ևեթ տարվում է սոցիալական ու ազգային պայքարի գաղափարներով, համակվում ազատատենչ ձգտումներով։ Նրա մտավոր աճման ու զարգացման, գրական-հասարակական հայացքների մշակման ու ձևավորման գործում կարևոր նշանակություն են ունեցել գիմնազիայում ուսանելու տարիները (1879—1886 թթ.), երբ գրասեր պատանին մոտիկից ծանոթացավ մեր նոր գրականության ականավոր վարպետների ստեղծագործություններին և ոգեշնչվեց բոցաշունչ ռևոլյուցիոներ-դեմոկրատ Մ. Նալբանդյանի գործունեությամբ։ Նրա վրա առանձնապես ուժեղ տպավորություն է թողել պայծառանուն հայ վաթսունականի «Ազատություն» երգը, որ Հակոբյանի ասելով «առաջին անգամ գիտակցորեն խանդավառեց իմ հոգին, մեջս ներշնչեց ազատության գաղափարը ու ինձ համար այնուհետև դարձավ պաշտելի»։

Նույնքան հարազատ ու սրտամոտ է եղել պատանի Հակոբյանին նաև ռուս առաջավոր կուլտուրան ու գրականությունը, որի լավագույն ներկայացուցիչները (Պուշկին, Լերմոնտով, Նեկրասով և այլն) նրան ներշնչել են ազատասիրական ու հայրենասիրական զգացմունքներ, տոգորել ըմբոստ տրամադրությամբ, որպիսիք և արձագանք են գտել նրա աշակերտական տարիներին գրած ոտանավորներում։

«Տարեգրության» ուշադիր և բարեխիղճ ընթերցողը չի կարող չնկատել, որ Հակոբյանի ինքնազարգացման և ուսումնառության պրոցեսը ընթացել է կենսական փաստերի ճանաչողության խորացմանը զուգընթաց։ Ընթերցասեր պատանին ուսումնասիրել է կյանքը, բուռն հետաքրքրություն ցուցաբերել դեպի իր ժամանակի հասարակական-քաղաքական երևույթները և այս ու այն չափով արձագանքել ցարիզմի ռեակցիոն քաղաքականության դեմ ծավալված պայքարին։ Հակոբյանի վաղ շրջանի հակացարական տրամադրությունների բնորոշ արտահայտություններից է նրա գրած այն նշանավոր թռուցիկ-ճառը, որից հեղինակի մեմուարներում պահպանվել է հետևյալ հայտնի երկտողը.

*Հաճո՞ է մեջքներից տանել այն գա՞նը,*
*Որի վրա նստած է հյուսիսի ագռավը...*

Ալեքսանդր 3-րդի դեմ ուղղված այդ ակնարկի պատճառով էլ Հակոբյանը հեռացվում է գիմնազիայից և զրկվում սիստեմատիկ կրթություն ստանալու հնարավորությունից։ Այնուհետև սկըսվում է բանաստեղծի չարքաշ, աշխատանքային կյանքը, որի ընթացքում սնվում է նրա ստեղծագործական միտքը և կոփվում կամքը։ Այդ իմաստով առանձնապես նշանակալից էին Բաքվում անցկացրած տարիները (1887—1893 թթ.), երբ նա մոտիկից ծանոթացավ բանվոր դասակարգի կյանքին ու պայքարին, շփվեց պրոլետարական մասսաների հետ և վերապրեց նրանց տանջալից առօրյան։ Այստեղ է, որ երիտասարդ Հակոբյանը ստացավ իր առաջին քաղաքական մկրտությունը։ Հենց այդ ժամանակից էլ նա սերտ կապ ստեղծեց բանվորական խմբակների հետ, մասնակցեց նրանց ժողովներին և ծավալեց ինտենսիվ պրոպագանդիստական գործունեություն։

Թերթելով «Տարեգրությունը» մենք պարզ տեսնում ենք, թե ինչպես հետզհետե փոխվում է Հ. Հակոբյանի գործունեության միջավայրը և ինչպես ընդլայնվում են նրա կյանքի ու մտքի հորիզոնները. գավառական Գանձակից Բաքու, ապա և Թիֆլիս,— ահա այն կոնկրետ միջավայրը, ուր ապրել և ստեղծագործել է Հակոբյանը։ Նա ոչ միայն ենթարկվել է փոփոխվող հանգամանքների ազդեցությանը, այլև ինքն իսկ ազդել է շրջապատի վրա, միջամտել ընթացիկ անցքերին, դրսևորելով իր քաղաքացիական ակտիվությունը։ Նրան խորթ էր պասսիվ ու հայեցողական վերաբերմունքը շրջապատի նկատմամբ. կյանքը Հակոբյանի համար եղել է պայքար, ուստի և իր գիտակցական կյանքի առաջին իսկ քայլերից նա հանդես է եկել որպես ժողովրդի ցասման զավակ, որպես աշխատավորության հույզերի ու տրամադրությունների արտահայտիչ։

Այդ է վկայում նաև Հակոբյանի բանաստեղծությունների անդրանիկ ժողովածուն (1899 թ.), որն իր թարմ շնչով բուռն հետաքրքրություն առաջ բերեց ժամանակի գրական շրջաններում։ Ինչպես կարելի է հետևցնել գրախոսվող աշխատության մեջ բերված փաստերից, փոքրածավալ այդ գրքույկի շուրջը շատ չանցած ստեղծվեց բարեկամների ու թշնամիների սահմանազատված մթնոլորտ, որը հետագայում ավելի ու ավելի սրվեց՝ դրսևորելով հասարակական տարբեր խմբակցությունների վերաբերմունքը դեպի նոր ծնվող ու նորօրակ գրականության այդ առաջին թոթովանքը։ Մինչդեռ հայ դեմոկրատական մտքի ներկայացուցիչները ջերմորեն ողջունեցին նորընծա բանաստեղծի մուտքը, դրան հակառակ կղերա-պահպանողական ու բուրժուա-նացիոնալիստական հոսանքները թշնամանքով ընդունեցին մեր պրոլետարական պոեզիայի երկունքը։ Պայքարը Հակոբյանի համար և նրա դեմ ուժեղացավ հատկապես այն ժամանակից ի վեր, երբ բանաստեղծը մտավ բոլշևիկյան պարտիայի շարքերը (1904 թ.) և իր ամբողջ եռանդն ու տաղանդը նվիրաբերեց աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման մեծ գործին։

Հաղթահարելով նյութական ու բարոյական բազմապիսի դժվարություններ, Հակոբյանը ճնշման ու հալածանքի ծանր պայմաններում ծավալեց պարտիական-կազմակերպական և ագի-



տացիոն-պրոպագանդիստական բեղուն գործունեություն, որի ընթացքում հնարավորություն ունեցավ մոտիկից ծանոթանալու և ապա անձնական-բարեկամական կապեր հաստատելու մի շարք ականավոր բոլշևիկների, այդ թվում՝ Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի հետ, որոնք հսկայական դեր խաղացին նրա գաղափարական դաստիարակության գործում։ Հենց դրանց միջավայրում ու անմիջական գործակցությամբ է, որ Հակոբյանը կոփվեց որպես պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ, լենինյան գվարդիայի անձնվեր մարտիկ։ Ռևոլյուցիոն աշխատանքը է՛լ ավելի հարստացրեց բանաստեղծի կենսափորձը, ընդլայնեց նրա տեսադաշտը և մարտական շեշտ հաղորդեց նրա գրչին։ Այդ տեսակետից առանձնապես ուշագրավ են «Տարեգրության» այն էջերը, ուր բացահայտված է մեր բանաստեղծի եռանդուն մասնակցությունը հայ բոլշևիկյան մամուլին («Պրոլետարիատի կռիվ», «Կայծ», «Նոր խոսք» և այլն)։ Այստեղ է, որ առաջին անգամ տպագրվեցին Հակոբյանի այնպիսի մարտաշունչ բանաստեղծություններ, ինչպիսիք են՝ «Թեև բանվոր է, բայց թագավոր է», «Հեղափոխություն», «Մայիսմեկյան երգ», «Ամբոխն իմ աշխարհը», «Մեռան չկռբան» և այլն։ Դրանք արդյունք էին ռուսական առաջին ռևոլյուցիայի արթնացրած համաժողովրդական ոգևորության, որի խանդավառ մթնոլորտում էլ ծնունդ առան Հակոբյանի «Աշխատանքի երգեր» (1906 թ.) և «Հեղափոխական երգեր» (1907 թ.) ժողովածուները, որոնք հրավառեցին հայ ռևոլյուցիոն պրոլետարական պոեզիայի արևածագը։

Ղեկավարվելով գրականության պարտիականության լենինյան սկզբունքով, Հակոբյանը գեղարվեստական խոսքն ի սպաս դրեց ոչ թե ճարպակալումից տառապող «վերին տասը հազարին», այլ աշխատավոր լայն մասսաներին։ Նա հանդես եկավ որպես պրոլետարիատի հետ բացահայտորեն կապված արվեստագետ և հարազատորեն արտահայտեց նրա շահերն ու ձգտումները։

Ոչ միայն ռևոլյուցիոն վերելքի ժամանակաշրջանում, այլև դրան հաջորդող ռեակցիայի տարիներին, Հակոբյանը բարձր պահեց տրիբուն-բանաստեղծի կոչումը։ Նա անվհատ հոգով շարունակեց երգել ռևոլյուցիայի գալիք հաղթանակը և ոգեշնչող խոսք ասել նույնիսկ լքված հոգիներին։ Այդ երևում է նրա ինչպես չափածո և արձակ երկերից, այնպես էլ նամակներից, որոնցից մի քանիսը առաջին անգամ գիտական շրջանառության մեջ են դրվում այս գրքով։ Մեր խոսքը վերաբերում է Հակոբյանի՝ գլխավորապես 1908—1913 թթ. գրած այն նամակներին, որոնք պահվում են ՍՄԿՊ ԿԿ-ին կից Կենտրոնական պարտարխիվում և, դժբախտաբար, ժամանակին տեղ չեն գտել նրա երկերի համապատասխան հատորում։ Դրանց զգալի մասը օգտագործված է սույն «Տարեգրության» մեջ և նոր լույս է սփռում Հակոբյանի ռևոլյուցիոն գործունեության առանձին կողմերի վրա։ Հակիրճ մեջբերումներից իսկ դժվար չէ եզրակացնել, թե որքան անդրդվելի էր բանաստեղծը իր մարտական դիրքում և ինչքան լավատես պրոլետարիատի հաղթանակի նկատմամբ. «Ճիշտ է, ռեակցիա է,— գրել է նա 1909 թ. փետրվարին Մ. Ցխակայային,— բայց հողը դեռ ոտքերիս տակ է. ոչ ոք չի կարող ինձ հանել դիրքիցս, երբեք։ Թեկուզ ատրուշանը ջարդվում է, բայց կրակը դեռ հուրհուրում է...»։

Միայն մարտնչող ժողովրդի հետ կապված արվեստագետը կարող էր լինել այդքան պայծառատես ու անհողդողդ։ Հենց այդպիսին էր Հակոբյանը, որը ինչպես միշտ, այնպես էլ այդ և հետագա տարիներին հավատարիմ մնաց ռևոլյուցիայի դրոշին և հաստատակամորեն շարունակեց իր ուղին։ Հատկապես առաջին համաշխարհային պատերազմի շրջանում աշխուժացած բուրժուա-հայրենասիրական մոլուցքին նա հակադրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմը և հետևողականորեն պայքարեց լենինյան գաղափարների անշեղ կենսագործման համար։ Այդ առնչությամբ բավական է հիշել նրա մասնակցությունը «Պայքար» շաբաթաթերթին, որի էջերում հրապարակած իր երկերով նա ամրապնդեց մասսաների հավատը և նրանց ոգեշնչեց ռևոլյուցիոն սխրանքների։

Լինելով «Պայքարի» գրական բաժնի ղեկավարը՝ Հակոբյանը այս շրջանում իր շուրջը համախմբեց պատերազմի հետևանքով ընդհատված պրոլետարական գրական ալմանախների աշխատակիցներին (Մ. Արազի, Ա. Վարդանյան, Հ. Կամարի, Սուսան և ուրիշներ) և նրանց ստեղծագործական ջանքերով ամրապնդեց պրոլետարիատի պարտիական գործի գրական ճակատը։ Դրանում համոզվելու համար բավական է թեկուզ աչքի անցկացնել «Տարեգրության» համապատասխան էջերը, որոնք միաժամանակ նոր տվյալներ են հաղորդում բանաստեղծի այդ շրջանի կյանքն ու գործունեությունը ուսումնասիրողին։

Գրախոսվող աշխատության մեջ անհամեմատ ավելի լայնորեն է ներկայացված Հակոբյանի կյանքի հետհոկտեմբերյան շրջանը, որը թեև ընդգրկում է երկու տասնամյակ, բայց զբաղեցնում է գրքի կեսից ավելին։ Ակնհայտ է, որ կազմողները սիրով ուսումնասիրել ու հավաքել են այն ամենը, ինչ կապված է բանաստեղծի կյանքի սովետական փուլի հետ։ Նրանք հրապարակել են մի շարք թարմ փաստեր ու տվյալներ, որոնք առավելագույն ուժով դրսևորում են Հակոբյանի գրական-հասարակական գործու-

հնության լայն մասշտաբները, նրա սերտ կապը կյանքի հետ, ինչպես և ժողովրդի հանդեպ ունեցած պատասխանատվության բարձր գիտակցությունը։

Սովետական շրջանում է՛լ ավելի ընդլայնվեց Հակոբյանի քաղաքական ու պատմական տեսադաշտը. նա անձնական-բարեկամական սերտ հարաբերությունների մեջ էր մեր երկրամասի պարտիական ու սովետական այնպիսի ականավոր գործիչների հետ, ինչպիսիք էին՝ Ա. Մյասնիկյանը, Մ. Օրախելաշվիլին, Մ. Ցխակայան, Հ. Նազարեթյանը, Շ. Էլիավան, Ա. Մռավյանը և ուրիշներ։ Նրա լավագույն բարեկամներից էին ՌՍՖՍՌ առողջապահության ժողկոմ Ն. Սեմաշկոն, լուսավորության ժողկոմ և արվեստաբան-գրականագետ Ա. Լունաչարսկին, ռուս բանաստեղծ Դ. Բեդնին, ուկրաինական պոետ Պ. Տիչինան, վրաց բանաստեղծ Գ. Տաբիձեն, ադրբեջանական գրող Ս. Օրդուբադին և շատ ուրիշներ։ Ավելին, Հակոբյանը չսահմանափակվեց միայն մեր մեծ հայրենիքի գրական-հասարակական գործիչների միջավայրով. նա նամակագրական կապեր ուներ նաև ռևոլյուցիոն գրողների միջազգային բյուրոյի անդամ, հունգարացի գրող Բելա Իլեշի, ֆրանսիական մեծ արվեստագետ Ռ. Ռոլլանի և այլոց հետ։ Այս հանգամանքը ևս վկայում է Հակոբյանի քաղաքացիական ու ստեղծագործական լայն դիապազոնը, որ նույնպես համոզիչ կերպով դրսևորվել է «Տարեգրության» մեջ։

Գրախոսվող աշխատությունն ընդհանուր առմամբ թողնում է հաճելի տպավորություն և անպայման արժեքավոր ներդրում է սովետահայ գրականագիտության մեջ։ Բայց այն զերծ չէ առանձին թերություններից, որոնցից կարևոր ենք համարում նշել մի երկուսը։

Նախ՝ նկատելի է, որ կազմողները շատ են տարվել բանաստեղծի առօրյա կյանքի իրադարձությունների արձանագրմամբ, որի հետևանքով երբեմն անուշադիր են եղել ավելի կարևոր հանգամանքների նկատմամբ։ Կան բաներ, որոնք հիշատակման իսկ արժանի չէին և ընդհակառակը, առանձին դեպքերի մասին կարելի էր ավելի ընդարձակ խոսել։

Երկրորդ՝ այս կամ այն ստեղծագործության հրատարակության փաստը նշելիս ոչ միշտ է հիշատակվում համապատասխան աղբյուրը։ Օրինակ, գրքի 97-րդ էջում կարդում ենք. 1911 թ. հունվարին «Հ. Հակոբյանի թարգմանությամբ լույս է տեսնում Ա. Գենցի «Դյութող հնչյուններ» դրամատիկական չափածո էտյուդը՝ մեկ գործողությամբ»։ Որտե՞ղ և ինչպե՞ս է հրատարակվել, քանի՞ էջից է կազմված, ոչինչ ստույգապես հայտնի չէ։ Որքան գիտենք, այդ մասին առաջին անգամ հաղորդել է «Листок копейка» թերթը (1911 թ., № 27), որից և ըստ երևույթին օգտվել են կազմողները, առանց, սակայն, ճշգրտելու փաստը։

Երրորդ՝ «Տարեգրության» մեջ օգտագործված ռուսերեն նյութերը մերթ թարգմանված են, մերթ՝ ոչ։ Օրինակ, հայերեն թարգմանությամբ են տրրված Հակոբյանին հղված նամակներն ու ողջույնի հեռագրերը, բայց չեն թարգմանված համապատասխան օրգաններից նրա ստացած մանդատները (էջ 135, 136, 138) կամ Ա. Լունաչարսկու գրած հայտնի առաջաբանից բերված քաղվածքը (էջ 213)։ Ո՞րն է եղել կազմողների համար առաջնորդող սկզբունք, դժվար է ասել։

Իր թերություններով հանդերձ, այս գիրքը մեծ և շնորհակալ գործ է։ Այն ընթերցողի առջև վերակենդանացնում է ռևոլյուցիայի անմահ երգչի կյանքի և գործունեության գլխավոր դրվագները և միաժամանակ ամուր կռվաններ ստեղծում նրա գիտական կենսագրությունը շարադրելու համար, որ վաղուց արդեն հասունացած խնդիր է։

ԳՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ս. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 05253 Պատվեր 2309 Տիրաժ 9000 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 28/IX 1965 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԱՆԱՆԻԿՅԱՆ Կ.—Գիտական կոմունիզմի առաջացումը և զարգացումը։ Ե., «Միտք» հրատ., 1965, 270 էջ։

Հեղինակը հետազոտում է գիտական կոմունիզմի առաջացման, տնտեսական ու հասարակական-քաղաքական պայմանները և գաղափարական նախադրյալները, վեր է հանում Մարքսի, Էնգելսի և Լենինի դերը որպես այդ ուսմունքը ստեղծողների. բացահայտում է ՍՄԿՊ նոր ծրագրի հսկայական նշանակությունը գիտական կոմունիզմի տեսության հետագա զարգացման գործում։

ԹՈՒՐՇՅԱՆ Հ.—Սարդարապատի ճակատամարտը։ Ե., «Հայաստան» հրատ., 1965, 371 էջ։

Բազմազան նյութերի հիման վրա հեղինակը հանգամանորեն շարադրել է հայ ժողովրդի 1918 թ. հերոսական ինքնապաշտպանության և թշնամուն ջախջախելու պատմությունը։

ԿՈԿԻՆՈՍ ՊԵՏՐՈՍ—Հունահայ գաղութի պատմությունից (1918—1927)։ Ե., ԳԱ հրատ., 1965, 264 էջ։

Այս աշխատության մեջ հեղինակը շարադրում է սփյուռքահայ խոշոր հատվածներից մեկի՝ հունահայ աշխատավորության տնտեսական, քաղաքական և հասարակական կյանքի պատմությունը, հայ և հույն բանվորների համատեղ հեղափոխական պայքարի, հայ աշխատավորությանը հեղափոխական պայքարի մեջ ներգրավելու՝ Հունաստանի կոմունիստական կուսակցության բազմակողմանի գործունեության մասին։

ՋԱՆԻԲԵԿՅԱՆ Գ. —Բարեկամների մասին։ Ե., «Հայաստան» հրատ. 1965, 275 էջ։

Այս գրքում հեղինակը հուշեր է պատմում հայ բեմի վարպետներ Արուս Ոսկանյանի, Վաղարշ Վաղարշյանի, Հրաչյա Ներսիսյանի, Արմեն Արմենյանի, Միքայել Մանվելյանի, Ռուզաննա Վարդանյանի, Գուրգեն Գաբրիելյանի, Ավետ Ավետիսյանի և ուրիշների, ինչպես նաև թատրոնի առօրյայի մասին։

Բանվոր-դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը (1-ին ինտերնացիոնալի 100-ամյակի առթիվ)։ Մ., Քաղհրատ. 1965, 416 էջ։

Ակադեմիկ Ա. Արզումանյանի և այլոց խմբագրությամբ հրապարակված այս ժողովածուում հեղինակները ցույց են տալիս պրոլետարիատի դասակարգային պայքարի կապը համաշխարհային-պատմական տեղաշարժերի հետ, ժամանակակից ռևոլյուցիոն գլխավոր ուժի՝ սոցիալիստական երկրների աշխատավորության հետզհետե աճող ազդեցությունը զարգացած կապիտալիստական պետությունների բանվոր դասակարգի և իմպերիալիզմի դեմ ազգային ու սոցիալական ազատագրության համար պայքարող Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ռևոլյուցիոն ուժերի վրա։ Գրքում մեծ տեղ է հատկացված սոցիալիստական սիստեմի միջազգային նշանակություն ունեցող նվաճումների և ազգային-ազատագրական հակաիմպերիալիստական պայքարի վերլուծությանը։

ԳԻՆԸ 25 Կ. 77783

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

ՍՈՒՅՆ ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՄԵԿԻՑ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ ԱՄԵՆՈՒՐԵՔ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

### ԱՄՍԱԳՐԻ 1966 Թ. ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է «ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԻՆՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԸՆԴՈՒՆՄԱՆ ԿԵՏԵՐՈՒՄ, ԿԱՊԻ ՀԱՆԳՈՒՅՑՆԵՐՈՒՄ ԵՎ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԻՍԿ ՀԻՄՆԱՐԿ-ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՏԱՐԱԾՈՂՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ։*

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է ԱՆՍԱՀՄԱՆԱՓԱԿ ՄԻՆՉԵՎ Ս/Թ ՆՈՅԵՄԲԵՐԻ 24-Ը, ՈՐԻՑ ՀԵՏՈ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎԵԼՈՒ Է 1966 Թ. ՓԵՏՐՎԱՐ ԵՎ ՀԵՏԱԳԱ ԱՄԻՍՆԵՐԻ ՀԱՄԱՐ։*

**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**